# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

ԵՂԻՇԷ Վ. ԴՈՒՐԵԱՆ



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

Ի ՎԱՂ ԺԱՄԱՆԱԿԱՑ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐՆ

*Ի ՊԷՏՍ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ*



معارف نظارت جليله‌سنك في ١٢ ايلول سنه ٣٠١ تاريخلي و ٥٩٩ نمرولي
رخصتنامه‌سيله طبع اولنمشدر










Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Գ. ՊԱՂՏԱՏԼԵԱՆ

(Առամեան)

1885

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հայկական մատենագրութիւնն անուրանալի է թէ յունականին շնորհիւ ծնունդ առաւ ի սկիզբն հինգերորդ դարու: Այս իրողութեան իբրեւ ապացոյց բաւական է ի մէջ բերել յընդերկար ժամանակաց հետէ ո եւ է գրական շարժման մը բացակայութիւնն առ մեզ յառաջ քան զհինգերորդ դարն: Նոյն բանն կը մտածուի նաեւ Լատին մատենագրութեան մասին՝ որ գոյութիւն իսկ պիտի չունենար ըստ ոմանց, եթէ յերրորդ դարու նախ քան զքրիստոնէական թուականն չփութար յոյն մատենագրութենէն առնուլ առատ սնունդ մը, վասնզի յայտ է թէ այդ շրջանէն առաջ Լատին մատենագրութեան հինգ դարերուն մէջ անհնար է հանդիպիլ գրական կարեւոր գրուածի մը կամ արժանաւոր քերթողի մը անուան:

Հոս հարցում մը բնական է մեզ ընել, թէ ինչո՞ւ ուրեմն եթէ Հռովմէական եւ Հայկական մատենագրութիւնք միակ աղբիւրի մը՝ այն է յունականին դիմելով սկիզբն ու զարգացում առին, հայկականն ա՛յնքան անշուք եւ աննշան իմն կը զգենուք Լատինականին բաղդատմամբ, զի աներկեւան է մեզ համար թէ ո՛չ Սենեկայի նման իմաստասէր, ո՛չ Վիրգիլեայ եւ Լուկրետիոսի նման բանաստեղծներ, ո՛չ Կիկերոնի նման ճարտարախօս եւ ո՛չ Սալուստիոսի կամ Տակիտոսի նման պատմագիրներ ունեցանք: — Պատճառն մեր առաջիկայ դասագրքին Ներածութեան (3) հատուածոյն մէջ ցոյց տուած ենք համառօտիւ, բայց հոս ի դէպ է մի այլ ակնարկ ընել:

Պէտք է գիտնալ որ հայկական մատենագրութիւնն երբ յունականին դիմեց, սա այն ատեն կորուսած էր իւր նախկին փայլն, եւ մօտ էին նուաղելու Ակադեմիոյ եւ Լիկէոնի վերջին արձագանգներն. զի քրիստոնէական կրօնի ախոյեան վարդապետք՝ Բարսեղ, Ոսկեբերան, Նիւսացի եւ այլք բազումք մատենագրական ծանրութեան կեդրոնն կ'ճգնէին դնել կրօնական ուսմանց մէջ, եւ Ս. գրոց վարդապետութիւնն տակաւ առ տակաւ կը գրաւէր ամէն բեմերն՝ ատեաններն ու Արահներն. արտաքին հեղինակաց ընթերցումն եւ ուսումն երկրորդական զբաղում մ'եղաւ այնուհետեւ: Կրօնական ջերմ նա-

խանձն իրենց պատուանդանէն սկսած էր վար առնուլ մեհեաններու արձաններն՝ որք գեղեցկին մարմնաւորութիւններն էին, եւ այդու բանաստեղծին գրիչն պիտի կապտուէր դիցական երփնազոյն ճաճանչներէն. Քրիստոնէական պարկեշտութիւնն այլ եւս պիտի լռեցնէր սրտերու հեշտածայն քնարն, ու ոչ եւս Պինդար մը պիտի կարենար երգել *հին զինին* եւ Անակրէոն մը իւր *տարփանք*ներն նուագել, եւ Հռոմին յայտնեալ ճշմարտութեանց առջեւ ո՛չ եւս պիտի կարենար երգիծաբանել Լուկիանոս եւ Կելսոս քննադատել, եւ վերջապէս Պրոկղոս նոր-պղատոնական փիլիսոփայութեան հին վերարկուաւն ծածկուած՝ Աթէնքի իմաստութեան վերջին բոցն պիտի փայլեցնէր, մինչեւ Յուստինիանոս Ա. հրամայեց փակել 529 ին՝ փիլիսոփայութեան բոլոր դպրոցներն :

Փութանք ուրեմն յաւելուլ թէ Հռովմայեցիք շատ իսկ յառաջ քան զմեզ՝ ամէն ինչ անխիղճ եւ անաշխատ փոխ առին յունական Պանդէոնէն եւ Մատենագրութենէն, եւ իրենց ուսուցչաց հաւասար զարգացման արագ. — թողունք իրենց քաղաքական վիճակի դիրքն ու դիւրութիւններն. Իսկ մեր թարգմանչաց դարուն մէջ հին ու արտաքին մատենագրութեան փոխան՝ ինչպէս ըսինք՝ եկեղեցական ուսումն ու ճարտարխօսութիւնն գրեթէ արտաքսիչ տեսակն էր մատենագրութեան, եւ եթէ այնպէս իսկ չլինէր՝ հայկական եկեղեցւոյ իրական պէտքն արդէն այդ վերջնով միայն հնար էր գոհացնել, եւ հետեւաբար այդ ճիւղն առաւել մշակուեցաւ առ մեզ մինչեւ իսկ աստի կէս դար յառաջ. Այս ուղղութեան ներքեւ բոլորովին եկեղեցական եղաւ մեր մատենագրութիւնն, եւ գրեթէ կրնամք ըսել որ աւելի *հայրաբանութիւն* (patrologie) մը քան թէ *մատենագրութիւն* (littérature) մը յօրինելու նիւթ կը մատակարարէ մեզ մեր նախնեաց գործոց մեծագոյն եւ կարեւորագոյն մասը : Սակայն եւ այնպէս եթէ մէկ կողմանէ քրիստոնէական կրօնի ներշնչմամբ յղացուած մատենագրութեան այդ նոր սեռն՝ իւր իսկ բնութենէն դատելով՝ անկարող կը գտնեմք ընդարձակ ասպարէզ մը բանալու հանճարի եւ մտաց զանազան արտադրութեանց, միւս կողմանէ պէտք չէ մոռնալ որ կրօնական այդ վեհագոյն ազդեցութեան կը պարտիմք միմիայն ինչ որ ի ձեռին ունիմք այսօր ի նախնեաց, եւ գուցէ առանց այդ շարժման անհնար պիտի լինէր մեզ մատենագրական պատմութեան մէջ այնքան կանուխ գրաւել տեղ մը :

Չենք վարանիր խոստովանիլ թէ մեր մատենագրութիւնն եթէ նոյն լինէր յունականին նման՝ մեր դասագրքին մէջ ամփոփուած մատե-

նագրաց մեծագոյն մասին յիշատակութիւնն անգամ զանց պիտի ը-նէինք, մանաւանդ սա տեսակէտով որ ոչ միայն մատենագրի մը ար-ժանիքն ցոյց տալու հանգամանքէն զուրկ են, այլ եւ չեն կրնար ի-րաւամբք ներս մտնել այն շրջանակէն զոր մատենագրութիւնն գծած է իբրեւ նուիրական սահման մը։ Եւրոպական մատենագրութեանց բազմաթիւ դասագրքերէ կամ պատմութիւններէ մեր ստացած գաղա-փարն կը թոյլատրէ մեզ իբրեւ մատենագիր չճանչել իրաւագէտները՝ աշխարհագիրները՝ բժիշկները՝ չափագէտները կամ գիտունները, բայց որովհետեւ յունական մատենագրութեան դասագրոց մէջ իսկ գրեթէ կարեւոր տեղ մը կը ցուցուի այդ դասակարգի անձանց՝ զոնէ ի պատ-մութեան Հին եւ Միջին մատենագրութեան, մեք եւս չխղճեցինք մեր դասագրքին մէջ մատենագրաց ի կարգ դնել զանոնք, անշուշտ եթէ այդ ճիւղերու մէջ փայլած են իրենց գրուածներովն, եւ մինչեւ իսկ մեր օրերուն նկատմամբ փութացինք զնոյն առնել։

Եթէ խստապահանջ ընտրութեամբ դասաւորենք մեր մատենագիր-ները, պատմագրական եւ կրօնական ճոխ մատենադարանի մը մէջ հազիւ պիտի հանդիպինք քանի մը փիլիսոփայական՝ բանաստեղ-ծական եւ այլ գործոց ցանկերու, բայց ցաւալին այն է որ մեր մա-տենագրութեան այդ ճոխ համարուած մասերէն մին՝ կուզեմ ըսել պատմագրականն՝ որ ազգին պատմական կենաց դարաւոր շղթայն կը կազմէ, դէպքերու իբր պարզ շարայարութիւն մը կը ներկայանայ մեզ՝ միշտ բազմապատիկ ոստումներով եւ ընդհատմամբք, եւ զարմա-նալի զանցառութեամբ պատմագրաց մերոց՝ ազգային ականաւոր անձանց բազմաց կենսագրական տարրն իսկ որ պատմութեան կար-կառուն քանդակներէն մին պէտք է լինի, ամենէն աւելի հարթ ու աղօտ կերպարան մը կ'ընծայէ, այնպէս որ՝ զօրօրինակ՝ կրնայ ոք Եղիշէի մը գոյութիւնն տարակուսանաց տակ դնել առ ի չգոյէ վա-ւերական եւ ստոյգ աղբերաց։ Այս ողբալի թերին առաւելապէս ակն-յայտնի կ'երեւի մեր մատենագրաց կենսագրականին նկատմամբ, վասն զի ցամաք ու կցկտուր յիշատակութիւններ չեն կարող կենդանութեան շունչ մը փչել մեծ անձնաւորութեանց, ու միայն աւանդական համբաւն իբրեւ փայլուն շրջանակ կը ծառայէ նոցա եղծեալ եւ զունաթափ պատկերին։ Այդ աղետաւոր թերութիւններէն յայտ է թէ չէր կրնար զերծ մնալ մեր իսկ դասագիրքն, որոյ համառօտութեանն հակառակ՝ զանց չըրինք սակայն ո եւ է կարեւոր տեղեկութիւն տալ ուսանողաց, առաջնորդ ունենալով մեզ Վենետկոյ միաբաններէն Հ. Գարեգին Վ., Զարպհանէլեանի երկհատոր *Պատմութիւն Հայերէն*

*դպրութեանց* գործն՝ որ միակ եւ ամբողջ գրուածն է իւր տեսակին մէջ (*) :

Կարեւոր կը համարիմ դիտել տալ նաեւ՝ թէ դասագրքիս համառօտութիւնն եւ հետեւաբար դիւրամատչելի գինն ո՛չ միայն դժուարութիւններէ պիտի զերծուցանէ զուսանողս, այլ եւ կը յուսամ թէ պիտի կարենայ բառնալ այն գանգատներն որ յարմար դասագրքի մը պակասութենէն տեղի կ'ունենային, եւ պատճառ դարձած էին այս կարեւոր ուսման աւանդութիւնն գրեթէ յետին կարգի մը մէջ դնելու:

Կը համարձակիմ ուրեմն յանձնարարել զառաջիկայս՝ Հայ լեզուի եւ մատենագրութեան դասախօս Մեծ. պատօնակցացս, խնդրելով միանգամայն որ ներողամիտ գտնուին գործոյս թերութեանց որք կրնան սպրդած լինել :

ԵՂԻՇԷ Վ. ԴՈՒՐԵԱՆ

12 Նոյեմբեր 1885.
Պարտիզակ

(*) Թէպէտեւ երեւցած են ուրիշ երկու գրուածներ Հայ մատենագրութեան վերայ, բայց երկուքն ալ թերի մնացած են. առաջնոյն հեղինակն է Հ. Յովսէփ Վ. Գաթըրճեան, *Պատմութիւն մատենագրութեան Հայոց*, մասն Ա. (անգիր ժամանակ) Վիէննա 1851. Իսկ երկրորդին՝ Ստեփան Պալասանեան, *Պատմութիւն գրականութեան Հայոց*, Հատոր Ա. (բանաւոր գրականութիւն) Թիֆլիս 1865: Ասոնցմէ շատ տարիներ յառաջ իբր ամբողջ գործ հրատարակուած է Վենետկոյ Մխիթարեանց ուխտին առաջնորդ Սուքիաս Արքեպիսկոպոս Սոմալեանի Ազգային դպրութեանց պատմութեան Իտալական թարգմանութիւնն միայն. Quadro della letteratura Armena. 1827.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

---

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

1. **Հայ մատենագրութեան առարկան.** — *Հայ մատենագրութեան պատմութիւնն՝ որ մեր նախնեաց գրական վաստակոց եւ կենաց վրայ կը խօսի, իւր պատկառելի հնութեամբն արժանի է ուսման եւ ուշադրութեան առարկայ լինել անձնիւր հայ անհատի։*

2. **Իւր սկիզբն ու զարգացումը.** — *Փրկչական թուականէն թէեւ դարեր յառաջ սկզբնաւորեալ կը գտնեմք հայ մատենագրութիւնն, բայց երկայն ժամանակաց միջոցի մէջ չէ ստացած ի հնումն այն փայլն՝ զոր ունեցան մեզ դրացի եղող ազգեր՝ Արաբացիք եւ Պարսիկք մանաւանդ ի բանաստեղծականին, եւ ոչ առաւ այն քայլն՝ որով Յոյնք եւ Հռովմայեցիք ճոխ ու անհամեմատ մատենագրութեան տէր եղան։*

3. **Իւր աղքատութեան պատճառները.** — *Մեր մատենագրութեան աղքատութեան պատճառք բազմադիմի կարեն լինել, բայց իբրեւ կարեւորագոյն պատճառներ բաւական է յառաջ բերել այն պարզ եւ տարրական քաղաքակրթութիւնն՝ յորում ստիպուած էր Ազգն զուրկ մնալ մտաւորական յառաջադիմութեան բարձրագոյն պայմաններէն, այն անընդհատ պատերազմաց ու յարձակմունքը՝ որ իւր գոյութեան սպառնային, եւ ասոնց հետեւանքն եղող անսիրելութիւն մի եւ անփութութիւն ի դպրութիւնս, որով անշուք վիճակի մէջ մնաց գիտութեանց եւ արուեստից զարգացումն ի Հայս. Թողունք որ մատենադարանաց աւերումներն թէ՛ յազգայնոց ոմանց եւ թէ՛ յօտարաց կրնան ի մէջ բերուիլ նաեւ իբրեւ զօրաւորագոյն պատճառ։*

4. **Իւր բաժանումը.** — *Հայ մատենագրութեան պատմութիւնն կրնանք բաժնել երեք գլխաւոր մասերու, ո՛չ այնչափ ցոյց տալու*

համար ազգային երկասիրութեանց մէջ մտաւոր՝ բարոյական եւ ընկերական յառաջադիմութեան մը զգալի փոփոխութեանց ժամանակակէտներ, այլ առաւել ընդհանուր պատմութեան շրջաններուն վերածելով. եւ ըստ այսմ մեր ամբողջ մատենագրութիւնն կը կոչենք Հին, Միջին եւ Նոր։ Հնոյն կը վերաբերի անգիր ժամանակաց մատենագրութիւնն՝ երբ Ազգը դեռ մասնաւոր գիր չունէր. Միջնադարեան մատենագրութիւնն կ'սկսի Մեսրոպայ գի-տէն (Ե. դար) եւ կը յանգի մինչեւ ի Թովմա Մեծոփեցի (ԺԵ. դար). իսկ Նոր մատենագրութիւնն սկիզբն կ'առնու Տպագրութեան առ Հայս մուտ գտնելէն յետոյ (ԺԶ. դար) եւ կը հասնի մինչեւ մեր օրերն։

## ԳԻՐ

5. Գրոյն օգուտը. — *Տարակոյս չկայ թէ անհրաժեշտ են գըրոյն օգուտք ի դպրութեան. զի մարդոյս խորհուրդներն՝ որք կենդանի բարբառով կը հաղորդուին այլում, յետնոց եւս աւանդելու եւ այսպէս անջնջելի խօսից եւ գաղափարաց կայունն տալու համար անխուսելի պայման մ'է գիրն, որ ազգի մը մատենագրութեան եւ թէ՛ անոր պատմութեան կեանքն ու սնունդն է։*

6. Օտար գրերու գործածութիւնն առ մեզ. — *Մեր պատմութիւնն մեզ կաւանդէ թէ Ազգն իւր կազմակերպութիւնն՝ քաղաքական դիրքն ու կարգաւորեալ լեզուն ունենալէն շատ յետոյ հնարեց իւր ազգային դրերն, եւ մինչեւ ի գիւտ Գրոցն հաւանական է թէ մեր նախնիք գործածեցին Յունաց եւ Ասորւոց եւ մերթ* զենտական *կամ* բակտրեան *գրերն, վասնզի անմարթ է անգիր քաղաքականութիւն մը ենթադրել, եւ ի կիր արկին նաեւ* սեպաձեւ *կամ* բեւեռաձեւ *կոչուած գրերն՝ որոց գործածութիւնն երկար ժամանակ չտեւեց սակայն։*

7. Հայկական նշանագրոց գիւտը. — *Այս օտարոտի եւ անյարմար գրոց գործածութենէն զերծանելու եւ ազգային հեղինակութեան մը արդիւնք յերեւան բերելու նպատակաւ Մեսրոպ վարդապետ՝ զորմէ ի տեղւոջն առանձին պիտի խօսինք, Վռամշապհոյ օրերն խնդրեց Սահակ կաթողիկոսէն ժողով մի գումարել ի Վաղարշապատ այդ գեղեցիկ ձեռնարկին յաջողակ ելք մի տալու համար։ Ժողովին ներկայ էր ինքն իսկ թագաւորն Վռամշապուհ որ պատմեց Հաբէլ անուամբ քահանայէ մը լսածն թէ՝ Դա-*

*նիէլ՝ ասորի Եպիսկոպոսին քով որ ի Միջագետս՝ կը գտնուէին հայկական նշանագիրներ։ Անմիջապէս Վահրիճ անուն իշխանն ղրկուեցաւ յանձնարարականաւ մը ի Միջագետս, եւ նա ընկերակցութեամբ Հաբէլ քահանայի երթալով առ Դանիէլ՝ այդ տառից հեգն ի միասին ուսան եւ դարձան ի Հայս. բայց փորձն զգացուց թէ անբաւական էին այն տառերն մեր լեզուի հնչման ծառայելու։ Մեսրոպ ուղեց անձամբ երթալ ի Միջագետս առ Դանիէլ, յետոյ յԵդեսիա՝ առ Պղատոն, ի Փիւնիկէ՝ առ Եպիփանոս՝ որ սակայն իւր հոն հասնելէն քիչ յառաջ վախճանած էր, եւ վերջապէս ի Սամոսատ՝ առ Հռուփանոս, լրումն տալու համար իւր առաջադրեալ ըղձիցն ու գործոյն։ Կը թուի թէ այդ երեք հանճարեղ անձանց խորհրդակցութիւնք ոչ նուազ նպաստեցին Մեսրոպայ, եւ ուր ուրեմն յաջողեցաւ Երանելին հասնիլ իւր նուիրական նպատակին՝ եւ Հայկական գրերն իւր ճարտարագիծ մատանց տակ իրենց նախկին ձեւակերպութիւնն առին։*

**8. Հայկական նշանագրաց ձեւերն եւ փոփոխութիւնք. —** *Մեսրոպայ հնարած այդ գրերն* Երկաթագիր *ըսուածներն էին. այդ անունն կը կրեն հաւանաբար երկաթ գրչի կամ երկաթի ոքսիդէ (ժանգ) պատրաստուած թանաքի կիրառութեան պատճառաւ. այդ երկաթագրերն հինգ վեց դար տեւեցին (406 էն մինչեւ Ժ. դար). իսկ իններորդ դարու մէջ արդէն սկսած էին այդ գրոյն զատ ձեւ մի տալ գրչութիւնն դիւրացնելու համար, բուն* Երկաթագիրն *իբրեւ գլխագիր գործածելով։* Միջին Երկաթագիր *ըսուածն է այդ, որ տեւեց մինչեւ ԺԲ. դար. յետոյ այդ ձեւն ալ փոխուելով՝ յաջորդեց* Բոլոր-գիրն՝ *որ տակաւ առ տակաւ կատարագործուելով եւ կանոնաւորուելով այժմեան տպագրութեան մէջ գործածուած սովորական գիրն եղաւ։* Բոլոր-գրոյն *աւելի դիւրացած կերպն է* Նոտրագիր *կամ (*Նոտր *գիրն) եւ մանաւանդ այժմեան հասարակ գրութեանց մէջ գործածուածն։*

## ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒ

**9. Կարծիք զհայերէն լեզուէ. —** *Լեզուաբանական գիտութիւնն դեռ չծաղկած՝ Հայերէնն այն աստուածապարգեւ լեզուն համարուած էր առ մեզ՝ զոր իբր թէ առաջին անգամ խօսեցան Նախածնողք ի Դրախտին։ Բայց լոկ ազգային ոգւով ներշնչեալ՝ եւ*

*ոչ թէ ապացուցական հիման վրայ հաստատուած այդ կարծիքն ուշադրութիւն գրաւելու արժէք մը չունի։*

**10. Հայերէնի ազգակցութիւնն ընդ արիական լեզուս.** — *Լեզուագէտք երկար ժամանակ Հայերէն լեզուի վրայ վարկպարագի ծանօթութիւն մը միայն առած լինելով՝ լեզուաց այս կամ այն դասուն մէջ դրին զայն, սակայն խոր եւ ներհուն հետազօտութիւն մը ազդակից ընդունեց մեր լեզուն հնդեւրոպական (*) լեզուաց, եւ իբր ապացուցեալ իրողութիւն մը կ'ընդունուի այսօր թէ օտար եւ թէ ազգային նշանաւոր լեզուագէտներէ։ Ըստ այսմ, Հայերէն լեզուն թէպէտեւ ունի աղերս Զենտի եւ Սանսկրիտի հետ, սակայն չթուիր ածանցիկ լինել անոնցմէ եւ անկախ բնութիւն մ'ունի։*

**11. Հայերէնի վիճակն յառաջ քան զմատենագրութիւն. — Գրաբար եւ աշխարհաբար.** — *Գրաւոր մնացորդաց պակասութեան պատճառաւ չենք կրնար գիտնալ թէ հնագոյն դարերու մէջ ի՛նչ փոփոխութիւններ կրեց լեզուն մինչեւ հասաւ իւր կատարեալ կազմակերպութեանն ի Ե. դարու։ Սակայն ինչպէս այն ամէն լեզուաց մէջ որոց ծագումն վաղնջական է. նոյնպէս եւ մերոյն մէջ կը զանազանուի հին լեզուն որ է Գրաբարն եւ նոր լեզուն՝ Աշխարհաբարն։ Պէտք է տալ աշխարհաբարի մը գոյութիւն եւ նոյն իսկ նախնականութիւն տալ գրաբարի վրայ, եւ աշխարհաբարն գրաբարին ուղղակի ապականումն համարելու ենթադրութիւնն ըստ մեզ ապացուցութենէ զուրկ է բոլորովին։ Աշխարհաբարն որ մեզ մօտ տասն քսան տարիներու մէջ մանաւանդ՝ մատենագրական ասպարէզն դրաւեց բոլորովին, իւր կանոնաւոր շարադրութիւնն ու ներդաշնակութիւնն պիտի առնայ հետզհետէ գրաբարի կանոնաց եւ ձեւոց, եւ եւրոպական լեզուաց ճշգրիտ եւ կենդանի բացատրութեանց փոխառութեամբ։*

**12. Գրաբար լեզուի կարեւորութիւնն ու հանգամանքներն.** — *Մեր գրաբար լեզուն պահած է Հայ մատենագրութեան բազմադարեան գանձն, եւ վասն այսորիկ արժան է ուսանիլ զայն եւ գիտնալ թէ ինչ ազդեցութեան տակ մերթ զարգուն եւ մերթ նկուն վիճակ մ'ունեցաւ այն։ Գրաբարն՝* Արարատեան *կամ* Ոստանիկ *կոչուած մատենագրական լեզուն՝ որ յետ գիւտի գրոցն մեր*

---

*(*) Մեր օրերուն ընդհանրապէս ընդունուած լեզուաբանական կարծեօք՝ լեզուներն կը բաժնուին երեք ընտանեաց.* Հնդեւրոպական *կամ* արիական, Սեմական *և* Դուրանեան *։*

*թարգմանչաց ձեռամբ հիանալի զարգացում մ'առաւ, ունի յատուկ տիպ, յստակ բացատրութիւն, հարստութիւն, ընտիր ճաշակի գեղեցկութիւն եւ զարդ։ Կը թուէ իւր մէջ չորս հազարէ աւելի արմատ բառեր եւ կ'ընծայէ քերականական հետաքրքրաշարժ ձեւեր։*

13. Գրաբարի փոփոխութիւնք յայլեւայլ դարս. — *Հինգերորդ դարէն յետոյ որ մեր մատենագրութեան* Ոսկեդարն *եղաւ, վեցերորդ դարն գրեթէ անմատենագրութեան դար մ'է. Եօթներորդ դարէն կ'սկսի Հայ մատենագրութեան Արծաթի դարն որ կը վերջանայ ԺԲ. դարուն հետ։ Պղնձի է ԺԳ. դարն յորում սակայն երեւեցան մատենագիրք ոմանք՝ որք Հայ լեզուի նախահարց կարգէն կրնան համարուիլ։ Կը յաջորդէ ԺԴ. դարն* Երկաթի *յորում Հայկական բարբառոյն ապականութիւնն սկսաւ. յետ այնորիկ երեւեցան* խեցի *եւ աւելի եւս վատթարագոյն դարեր, մանաւանդ ԺԷ. դարն՝ որոյ կիսուն լատինական անհեթեթ եւ անճոռնի ոճերով եւ բառերով ի սպառ խառնակեցաւ լեզուն։ Այս օտարամուտ եւ անշնորհ ազդեցութիւններէն զերծուցանել զգրաբարն եւ իւր նախկին փառքն ու հրապոյրն տալ նմա, արդարեւ գործ էր դժուարին, զոր սակայն բարեբաստ յաջողուածով ի գլուխ հանեցին Մխիթարեան հարք՝ հետզհետէ ի լոյս հանելով ինքնագիր եւ թարգմանածոյ ընտիր երկասիրութիւններ եւ նախնեաց մատենագրութիւններ։ Այս շարժման հաղորդ եղան նաեւ ոմանք յազգային դպրատանց։*

---

# ՀԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## (ԱՆԳԻՐ ԺԱՄԱՆԱԿ)

14. **Հայկական հին մատենագրութեան արտադրութիւնք**. — *Հայկական հին մատենագրութիւնն իւր ծագմանէն սկսեալ կը տեւէ մինչեւ Ե. դար, ինչպէս վերագոյն կարդացինք. բայց հազիւ կը հանդիպինք ուշադրութեան արժանի եղող եւ իսկապէս ազգայնութեան կնիք կրող քանի մը երգերու՝ որ Գողթան բանաստեղծից քնարին արդիւնք են, եւ քանի մը երկերու որ Դ. դարուն մէջ երեւեցան։*

15. **Գողթան երգիչք եւ գողթան երգեր**. — *Ինչպէս ամէն ազգաց՝ նոյնպէս եւ առ Հայս մատենագրութեան առաջին լեզուն եղած է բանաստեղծութիւնն։ Յունաստան նախապէս ունեցաւ իւր* հագներգուներն, *Սկանտինաւեանք իրենց* սքաղդներն *եւ հին Գաղլիացիք իրենց* բարդերն. *այսպէս եւ Հայք ունեցան իրենց* երգիչներն *կամ* վիպասաններն *յորս նշանաւոր եղան ի վաղ ժամանակաց Գողթն գինեւէտ գաւառին բանաստեղծք։ Դոցա երգերն այլեւայլ ժամանակաց դէպքեր եւ անցքեր յիշատակելով, այլեւայլ ժամանակ յօրինուած են, եւ որովհետեւ պարզապէս պատմական երգեր են, մեր նախնեաց լեզուաւ* վէպք, վիպասանութիւն, վիպագործութիւն *կ'ըսուին, սակայն ընդհանուր անուամբ կը կոչուին նաեւ ԳՈՂԹԱՆ ԵՐԳԵՐ։*

16. **Այդ երգոց մէջ ժամանակաւ հնագոյնն**. — *Այդ երգոց մէջ ժամանակաւ հնագոյնն է Վահագնի յիշատակին ընծայուած հետեւեալ պատառիկն,*

*«Երկնէր երկին եւ երկիր,*
*Երկնէր եւ ծիրանի ծով,*
*Երկն ի ծովուն ունէր զկարմրիկ եղէգնիկն.*
*Ընդ եղեգան փող՝ ծուխ ելանէր,*
*Ընդ եղեգան փող՝ բոց ելանէր,*
*Եւ ի բոցոյն պատանեկիկ վազէր,*
*Նա հուր հեր ունէր,*
*Ապա թէ բոց ունէր մօրուս,*
*Եւ աչկունքն էին արեգակունք։»*

17. **Ազգային երգողաց լռութիւնն. — Բանաստեղծութիւնն Արտաշիսի ժամանակ.** — Վահագնէն յետոյ՝ հինգ վեց հարիւր տարիներու մէջ ժամանակին չէ հասուցած մեզ ուրիշ հատուկտոր երգ մը ո՛ եւ է դիւցազնի մը փառաց նուիրեալ մինչեւ յաւուրս Բ. Արտաշիսի (Քրիստոսէ 126 տարի վերջ). բայց միթէ ընդերկար ժամանակս կարելի՞ է բացարձակ լռութեան եւ անգործութեան դատապարտուած համարիլ երգողաց քնարն ու հանճարն. անհնարին կը թուի այդ, եւ պէտք է ընդունիլ այն կարծիքն թէ՝ ինչ որ Խորենացին երգ վիպասանաց կը կոչէր՝ ամբողջ բանաստեղծութեան գիրք մ'էր այն, Պարսից Շահ-Նամէ վիպասանական գրքին նման, եւ յորում ազգային քերթողք Հայոց թագաւորաց պատմութիւնն կ'ընէին բանաստեղծական ոճով։

Սակայն հարկ է խոստովանիլ միանգամայն թէ [Արտաշէս Բ. ի խաղաղասէր իշխանութեան ժամանակ բանաստեղծութիւնն նոր աշխոյժ եւ թռիչ մ'առաւ. Նոյն իսկ թագաւորին որդւոց մին՝ արքունի հազարապետն Վրոյր՝ նշանաւոր բանաստեղծ մ'էր, եւ թերեւս հայկական վիպասանութեան հեղինակներէն մին լինելով՝ ինքն երգած լինի նաեւ հետեւեալն.

«Հեծաւ արի արքայն Արտաշէս ի Սեաւըն գեղեցիկ,
Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Եւ անցեալ՝ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց,
Եւ շատ ցաւեցոյց ըզ մէջք փափուկ օրիորդին,
Արագ հասուցեալ ի բանակն իւր։»

18. **Գողթան երգերու տաղաչափութեան արուեստն.** — Այս եւ ասոնց նման ուրիշ գողթան երգերն որ քուեչեաց երգք ալ կը կոչուին, չունին յունական՝ լատինական կամ արաբական քերթուածոց չափն ու կանոնը, այլ միայն հաւանական կը թուի անոնց յորջորջմանէն մակաբերել թէ՝ նախնիք այս քերթուածոց մէջ ի կիր կ'առնուին եբրայական բանաստեղծութեանց նմանութիւնն բերող մասնաւոր տաղաչափական արուեստ մի՝ որ սակայն դեռ բացայայտ եւ որոշ չէ մեզ համար։

18. **Մեհենական պատմութիւնք.** — Գողթան երգերէն զատ իրաւամբ մեր ազգային հին մատենագրութեան գանձն պիտի կազմէին մեր մեհենական պատմութիւններն ու նախաքրիստոնէական գրուածներն, որոց կորստեան հաւանական պատճառ կը համարին

ոմանք տգէտ դարերու մոլեռանդութիւնն ։ Խորենացին կը յիշատակէ այդ մեհենական պատմութեանց շարադրողներէն մին Անի կամ Հանի ամրոցին քուրմն Ողիւպ կամ Ոլիմպիոս, որ Արտաշէս Բ. ի ժամանակ ծաղկած էր ։

20. Բացումն դպրոցաց ի Դ. դարու. — Հին մատենագրութեան երկարժամանակեայ ընդհատմանց մէջէն արագ ոստմամբ կը հասնի եւ կ'ներկայանայ մեզ Դ. դարն՝ յորում Աւետարանի քարոզութեան միջոցաւ Հայոց մէջ բերուած կրօնական յեղափոխութիւնն իւր խորին ազդեցութիւնն ունեցաւ նաեւ երկրին քաղաքական եւ ուսումնական վիճակին նկատմամբ ։ Լուսաւորչի առաջնորդութեամբ Տրդատ ի հաւատս Քրիստոնէութեան դառնալէ յետոյ՝ երկու տեսակ դպրոցներ բացաւ, թագաւորական դպրոց մի, ուր կը կրթուէին արքայազուն եւ իշխանատոհմ մանուկներ, եւ հասարակաց դպրոցներ՝ աշխարհին այլեւայլ կողմերն՝ ինչպէս կը վկայէ Ագաթանգեղոս ։ Այս դարու մէջ սովորութիւն ըրին Հայք Աթէնք, Կեսարիա, Բիւզանդիոն, Եդեսիա եւ Աղեքսանդրիա երթալ, եւ հոն ոչ միայն կրօնական՝ այլեւ արտաքին ուսմանց պարապիլ ։

---

# Դ. ԴԱՐ

## ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

Դ. դարու մատենագրաց մէջ առաջին կ'հանդիպանայ մեզ ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ որ ինչպէս մեր հաւատոյն նոյնպէս եւ մեր մատենագրութեան առաջնորդ եւ հայր եղաւ ։ Ծնաւ նա յամին 247, եւ իւր հօր Անակայ արքայասպան եղեռնագործութեան պատճառաւ՝ երբ իւր ընտանիքն սրէ անցուեցան, իւր քրիստոնեայ դայեկին անձնուիրութեան շնորհիւ զերծաւ այդ կոտորածէն, եւ ի Կեսարիա Կապադովկիոյ՝ կրօնական համեստ կրթութիւն մը առնլով՝ դարձաւ ի Հայս, ու առաքելական պաշտամամբն նշանաւոր հանդիսացաւ առ մեզ, կաթողիկոսական աթոռին վրայ աւարժանապէս բազմելով գրեթէ քառորդ դար մը ։ Լուսաւորչի հանրածանօթ երկասիրութիւնն է Յաճախապատում կոչուած մատեանն որ 23 ճառեր կ'պարունակէ կրօնական բարձր նիւթոց վրայ համառօտ եւ պարզ ոճով յօրինուած ։ Հաւանականաբար Հայերէն լեզուաւ շարադրեց

զանոնք Լուսաւորիչ, քանի որ Հայոց համար կը գրէր, Հայերէն գրոյն պակասն ըլլով փոխառութեամբ յունական տառից։ Իրեն կ'ընծայուին նաեւ քանի մը մանր երկասիրութիւններ ալ, ինչպէս են, երեսուն թուով եկեղեցական կանոններ. «Իսկ մեր փառաւորեսցուքն» Հանգանակին իբրեւ կնիք. Աստուած մեծ, հզօր եւ փառաւորեալ քարոզն՝ զոր կ'աւանդուի թէ՝ Հռիփսիմեանց եւ Գայիանեանց մարմինները ամփոփելու ատեն երգած է. Նմանապէս Օրհնեալ է մարդասիրութիւն քո, Տէր իմ, եւ Աղաչեմ զքեզ սկզբնաւորութեամբ երկու աղօթքներ։

## ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

Լուսաւորչի քարոզութեանց ականջալուր եւ նորա գործոց ականատես պատմիչ մ'է Ագաթանգեղոս՝ որ հրամանաւ Տրդատայ դրեց մանրամասնաբար այն դէպքերն ու սքանչելիքներ՝ որ պատահեցան յաշխարհին Հայոց, մանաւանդ քրիստոնէութեան արագ արագ ծաւալումն, որ ուր ուրեմն ընկճեց ընդ իւր եւ խստասիրտ թագաւորն ու սնապաշտ ռամիկը։ Ագաթանգեղեայ Պատմութիւն լի է այնպիսի իրողութեամբք որ յայտնապէս նախախնամութեան գործոյն վկայ կը հանդիսանան, բայց պատմագրին գրիչն կը թուի ունենալ հրաշալւոյն ոսկեզօծումն՝ որ առաւելազանց հիացման մը անխուսելի հետեւանքն է, եթէ արդարեւ յետոյ ձեռքեր չյաւելլին ինչ ինչ ի բուն պատմութեանն Ագաթանգեղեայ,

Խնդիր է թէ Ագաթանգեղոս ի՞նչ լեզուաւ գրեց արդեօք իւր պատմութիւնն (1)։ Ինքն Հռովմայեցի լինելով՝ դժուարին թուեցաւ ոմանց ընդունիլ թէ այնպիսի ընտիր հայկաբանութեամբ յաջողած լինի շարադրել այդ գրուածն, եւ հաւանական կը համարին բնագրին յունարէն լեզուաւ յօրինուած լինելն, քանի որ Ագաթանգեղոս լաւ Յունարէն ալ գիտէր. իսկ այլք կ'առարկեն որ, եթէ Ագաթանգեղոս Հռովմայեցի լինելով՝ փոխանակ լատիներէնի Յունարէն լեզուաւ գրեց, չէ՞ր կարող նաեւ քաջ Հայերէն ուսած լինել այն որ երկար տարիներ Հայոց արքունեաց մէջ կեցաւ, եւ հետեւաբար Հայոց լեզուաւ յօրինել իւր գրուածը։

Վերջնոց առարկութիւնն խնդիրը լուսաբանելու չափ զօրաւոր չենք գտներ։ Վասնզի երբ Տրդատ զԱգաթանգեղոս իբրեւ արքունի քարտուղար իւր հետ բերաւ Հռովմէն՝ տարակոյս չկայ թէ

(1) Ագաթանգեղոսի թէ՛ հայերէն եւ թէ՛ յունարէն բնագիրներն կան։

Հայերէն չէր գիտեր նա․ արդ ի՞նչ լեզուաւ պիտի վարէր արքունեաց մէջ իւր ստանձնած պաշտօնը, եթէ ոչ յունարէն կամ լատին լեզուաւ, եւ ժամանակի մը մէջ հայերէն խօսիլ ուսանելէն յետոյ, երբ պէտք եղաւ պատմագրութեան ձեռնարկել, երկու ճոխ եւ տիեզերական լեզուներն՝ զորս քաջ գիտէր՝ փոխանակել Հայերէնի հետ՝ որ մատենագրական լեզուի մը կարեւոր հանգամանքներէն զուրկ էր դեռ, հեռի էր ի միտաց եւ ի ձեռնհասութենէ հռովմայեցւոյ մը։

Կ՚մնայ միայն ի նկատ առնուլ Ագաթանգեղեայ պատմութեան Հայերէն եւ Յունարէն օրինակաց միջեւ գտնուած տարբերութիւններն (1), որք թէ եւ Յունարէնին ի Հայերէնէ թարգմանութիւն մը լինելն ապացուցանելու երեւոյթն ունին, այսու հանդերձ հաւանական է ընդունիլ թէ՝ ուրեք ուրեք արեւելեան դիցաբանութեան մասին պատմագրին ցոյց տուած անհմտութիւնն արդիւնք մի լինի կարեւորութիւն չընծայելուն այնմ՝ Հռովմայեցւոյ մը ընտելական հպարտութեամբ, եւ կամ իւր իսկ կրօնական համոզմանցն յանդգաստից միտման արգասիքն իսկ այն քանի մը աշխարհագրական եւ այլ բառերն որ Հայերէն լեզուաւ գրուածեն ի Յունարէն բնագրին՝ հայ ժողովրդեան բնիկ հնչմամբն պահելու նպատակն չե՞ն չօշափեր արդեօք։ Այս հաւանականութեանց հետ նաեւ սխալներու կամ զինչպիտութեան եւս կրնանք տեղ մի տալ։ Ագաթանգեղոսի կ՚ընծայուի նաեւ Դաշանց թուղթ մը, որ բոլորովին անհարազատ գրուած մ՚է, ինչպէս կը տեսնուի օտար եւ խառնակ լեզուէն, պատմական սխալներէն, եւ մանաւանդ այդպիսի թղթոյ մը գոյութիւն տալու ձախող ներշնչումէն։

## ԲԻՒԶԱՆԴ ՓԱՒՍՏՈՍ

Չորրորդ դարուն մէջ գլխաւոր մատենագրաց մին է նաեւ ԲԻՒԶԱՆԴ՝ որ գրած է Հայոց պատմութիւն մը։ Իւր անձին եւ երկասիրութեան նկատմամբ զանազան կարծիքներ յառաջ բերուած են գլխաւորաբար սա հարցման տակ՝ թէ ո՞վ եւ ի՞նչ ազգէ է Բիւզանդ, եւ թէ ի՞նչ լեզուաւ պատմագրեց։ Բիւզանդայ կենաց մասին՝ իւր պատմութեան մէջ ըրած ցիրուցան յիշատակութիւններէն առնլով՝ թէեւ կատարեալ տեղեկութիւն մը չենք կարող ձեռք բերել, բայց, եթէ այդ յիշատակութիւններն մէկ անձի

(1) Հ. Գարեգին Զարբհանէլեան, Պատմ. Հայ դպրութեան հտ. Ա. 116—118

վրայ միայն ամփոփենք, պիտի ճանչենք զինք, աստիճանաւ Եպիսկոպոս, Թելակալ (հոգաբարձու) ի տան Ներսիսի Պարթեւի, տեսուչ աղքատանոցաց, ժամանակագիր Յունաց եւ ազգաւ Հոռոմ։

Եւ արդարեւ Յոյն էր Բիւզանդ, զի այդ մասին կը մատնէ զինքն իւր նախատալից լեզուն՝ որով ի միջի այլ գրպարտութեանց՝ ի վաղնջուց հետէ ի Հայս եղած քրիստոնէութիւնն ի հարկէ իմն եւ մարդկային կրօն եւ մոլորութիւն կը համարի (Դպր. Գ. գլխ. ԺԳ)։ Գալով երկրորդ խնդրոյն թէ ի՛նչ լեզուաւ պատմագրեց Բիւզանդ, Յունարէ՞ն թէ Հայերէն (1). ոմանք Հայերէնին մէջ յունական ոճ տեսնելով հանդերձ չեն ուզեր որ թարգմանութիւն մը եղած լինի այն, այլ Փաւստոսի օտարազգի լինելուն հետեւանք կը համարին, եւ կը պնդեն թէ Հայերէն շարագրած է նա իւր Բիւզանդարանն թերեւս Ս. Ներսիսի երախտիքէն՝ կամ իւր պաշտօնակից եպիսկոպոսաց խնդրանքէն թելադրեալ։ Սակայն այս բացատրութիւն բան մը չկրնար հաստատել. զի ի՞նչ պէտք է ապացուցանեն Պրոկոպիոս յոյն պատմագրին գրուածոց այն հատուածներն՝ որ պատմութիւն Հայոց անուամբ գրքէ մ'առնուած լինելով՝ համանման են Փաւստոսի գրուածներուն. եթէ այսր ի պատասխանի յառաջ բերուի թէ՝ թերեւս Բիւզանդ իւր Հայերէն գրած պատմութիւնն Յունաց ծանօթացնելու համար յունարէն ալ շարագրեց, այն ատեն ի՞նչպէս պէտք է հասկնալ Փարպեցւոյն այն տողերն՝ յորս գովելով Բիւզանդայ անձն ու ուսումն, անոր պատմութեան մէջ գտնուած անտեղի եւ անհաճոյ հատուածներն կուզէ յանդուգն եւ անհրահանգ գրչի մը լիրբ ձեռնարկութիւնն սեպել, ըսելով թէ «քանզի են ոմանք ի Յոյնս» որ այդ խաբէութիւններն ի գործ կը դնեն։ Արդ հաւանաբար Յոյներն Յունարէն գրուածի մը մէջ կրնային այդ յաւելուածներն (interpolation) մուծանել. ինչո՞ւ ուրեմն Փարպեցին՝ որ գրեթէ 70 ամաց միջոցաւ հեռու է Բիւզանդէն, փոխանակ պարզ կարծիք մը յայտնելու չպիտի փութար խայտառակել այդ ստութիւններն, եթէ իւր մօտ ունենար Հայերէն բնագիրն՝ որ տարակոյս չկայ թէ Յունարէն բնագրին բախտակից լինելու վտանգէն զերծ պիտի մնար։

Կրնանք ուրեմն ըսել թէ Բիւզանդայ պատմութիւնն ըստ ամենայն հաւանականութեան յունարէն գրուած եւ ապա թարգմանուած է ի Հայ լեզու։

Բիւզանդարանին նիւթն 29 տարուան պատմութիւն մ'է. Խոս-

---

(1) Բիւզանդայ գրոց թէ՝ հայերէն եւ թէ յունարէն բնագիրներն կան։

ռով Բ. ի իշխանութենէն սկսեալ կը հասնի մինչեւ Խոսրով Գ.ի թագաւորութիւնն եւ Ասպուրակէսի կաթողիկոսութիւնն. պատմական սխալներէ ազատ չէ։

Պէտք է գիտնալ նաեւ որ Բիւզանդայ այդ պատմութիւնն թէպէտեւ Գ. Դպրութենէ կ'սկսի, բայց ըստ կարծեաց գրագիտաց, կամ որպէս յայտ է ի յառաջաբանէ հեղինակին, իբրեւ Հայոց պատմութիւն ամբողջ գրուածն է Բիւզանդայ։

## ՆԵՐՍԷՍ ՊԱՐԹԵՒ

Ի մանկութենէ կրօնական եւ իմաստասիրական ուսմանց մէջ կրթուելով ի Կեսարիա, անուանի եղաւ իւր հանճարովն, եւ յետ դառնալոյ ի Հայս՝ զինուորական աստիճանէ բարձրացաւ յաթոռ կաթողիկոսութեան։

Ներսէսի յիշատակաց արժանի գործոց նկատմամբ թողունք որ Եկեղեցական պատմութիւնն խօսի, իսկ իւր մատենագրական կեանաց մասին ցաւալի է խոստովանիլ թէ չունիմք ո եւ է օրինաւոր տեղեկութիւն մը եւ այսչափ ինչ գիտենք միայն, որ հին աւանդութիւն մը իրեն կ'ընծայէ քանի մը Աղօթքներ եւ Հանգստեան շարականներ։

## ՊՐՈՅԵՐԵՍԻՈՍ ՀԱՅԿԱԶՆ

Նշանաւոր հռետոր հայկազն ծնեալ ի 276 եւ մեռեալ իբր 363 թուականին։ Իւր ուսումն ըրաւ յԱնտիոք առ ոտս Ուլպիանոսի հռետորին, եւ ուստի յԱթէնս՝ ուր մեծ համբաւ ստացաւ։ Իւր նշանաւոր աշակերտներն եղան Ս. Բարսեղ եւ Ս. Գրիգոր Նազիանզացի։ Երբ Յուլիանոս կայսրն հրատարակեց այն վճիռն՝ որ քրիստոնէական կրօնի ծառայողներն կ'արգելոյր դասախօսութենէ, Պրոյերեսիոս մասնաւորապէս բացառութիւն մը ընդունեց, բայց ինքն ուզեց իւր եղբայրակցաց բաղդին հետեւիլ, եւ իսկոյն թողուց իւր բեմն։ Ի Հռովմ բնակութիւն հաստատած ատեն՝ կանգնեցին նմա ի պատիւ պղնձէ անդրի մը՝ որ այս արձանագրութիւնն կը կրէր. «Դշխոյն քաղաքաց՝ թագաւորի բանին։»

Պրոյերեսիոսի՝ կամ որ նոյն է Պարոյրի կենաց վրայ ընդարձակ տեղեկութիւն կուտայ մեզ Եւնաբիոս յոյն պատմագիրն՝ որ ժամանակակից է Պարոյրի։ Հոն իւր կենսագրութիւնն հառաչանօք

պարտի ոք ընթեռնուլ, զգալով թէ ինչ մեծ կորուստ ըրած է մատենագրութիւնն այդպիսի հանճարի մը արգասիք եղող եւ ոչ իսկ գրաւոր փոքրիկ հատուած մ'ունենալով այսօր ի ձեռին, թէեւ անտարակոյս յունարէն լեզուաւ շարագրուած (1)։

Չորրորդ դարու մատենագրաց մէջ մութանք յիշատակել նաեւ զԱՐՏԻԹԷՈՍ որ Հայ քրմի մը որդի էր, եւ Լուսաւորչի ձեռամբ քրիստոնեայ եւ ապա եպիսկոպոս ալ եղաւ։ Լուսաւորչի վարուց պատմութիւնն գրեց նամակի ձեւով, եւ յոյժ հաւանականաբար հայերէն լեզուաւ, բայց այդ գրուածն կորսուած է։

---

(*) Նոյն դժբախտութեան հանդիպած են նաեւ Ա. Արտաւազդայ Թատերական քերթուածներն՝ զորս յունարէն լեզուաւ յօրինեց ի բանտին, ըստ վկայութեան Պլուտարքեայ (Քրիստոսէ 33 տարիներ յառաջ)։

# ՄԻՋԻՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## Ե—ԺԵ. ԴԱՐ

*Հայկական դպրութեան ամենէն աւելի նշանաւոր եւ բեղնաւոր դարն եղաւ Հինգերորդը՝ ինչպէս արդէն ըսինք։ Այս Ոսկեդարուն մէջ զարգացաւ Գրաբարն. գրոց գիւտն եղաւ իձեռն Մեսրոպայ։ Հեղինակութիւնք եւ թարգմանութիւնք աստուածաբանական եւ պատմական գործոց՝ ճարտար գրիչներու արդասիք՝ յաճախեցին հետզհետէ, ցոյց տալով ստուգիւ թէ Հայ հանճարն ընդունակ էր ամէն տեսակ զարգացմանց։ Աստուածաշունչի հրաշալի թարգմանութիւնն գրեթէ նախադուռն եղաւ այս ցանկալի դարուն մըտաւորական բարձր շինուածոյն։*

*Կարելի՞ էր ինքնօգնութեամբ ձեռք բերել այն հսկայ յառաջադիմութիւնն,— անշուշտ ո՛չ. եւ Հայ ազգն ինքնին հարկադրեալ էր ուրիշ ազգաց նման իւր յառաջադիմութեան տարերքն ընդունիլ ուսումնական գաղթականութեամբ, զոր անհատաբար արդէն նախընթաց Դ. դարուն մէջ հաստատեցին ոմանք։ Բայց այս կամ այն անձին ուսումնասիրութիւնն եւ անհատական յառաջադիմութիւնն չէր կրնար Ազգին բազմակարօտ պէտքն լնուլ, ուստի այս դարու մէջ Սահակ կաթողիկոս եւ Մեսրոպ Վարդապետ ընդհանուր ազգին լուսաւորութեան ծառայեցնելու նպատակաւ՝ պահանջելի բարեմասնութեամբք օժտեալ պատանիներ ընտրելով յատկապէս, ղրկեցին հո՛ն ուր դպրութիւնք կը ծաղկէին դեռ, եւ երբ դարձան նոքա իրենց գրական արշաւանքէն՝ բացուեցան դպրոցք, բազմացան աշակերտք եւ դպրութիւնք արագ քայլ մ՚առին։*

*Յետագայ դարերու մէջ թէպէտ ուսմամբ եւ հանճարով գերազանց մատենագիրներ ունեցանք, բայց ոչ երբէք հայերէն լեզուն կարաց հաւասար փայլմամբ եւ առոգութեամբ երեւիլ՝ որքան ի Ե. դարու։ Լեզուին անակնկալ զարգացումն կարծել տուաւ ոմանց թէ Թարգմանիչք՝ որ այս դարու գրականութեան մշակողներն եղան՝ թերեւս հնարեցին նոր լեզու մը յունական լեզուի անմիջական ազդեցութեան տակ։ Այս կարծիքն հարկ չէ պնդել՝ թէ որչափ անտեղի է. սակայն պէտք է խոստովանիլ թէ առանց Ե.*

*դարու մատենագրական շարժման Գրաբարին ապաժաման ալիտի մնար իւր վեհ ճակատագրին։*

*Ոսկեդարու դրական շարժման երկու բեւեռներն հանդիսացան Սահակ եւ Մեսրոպ։*

## ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՒ

*Մեծին Ներսէսի որդին էր Ս․ Սահակ, որ ի Կ․ Պոլիս եւ ի Կեսարիա ուսմանց պարապեցաւ։ Կ'ըսուի թէ յունարէնն իբրեւ մայրենի լեզու գիտէր, եւ ըստ վկայութեան Փարպեցւոյն քան զՅունաց վարդապետս իսկ գերազանց էր․ հմուտ էր նաեւ պարսկերէնի՝ իբրեւ տիրող լեզուին ի Հայս։ Սահակայ գրաւոր երկասիրութեանց մէջ բարձր տեղ մը կը բռնէ Աստուածաշունչի թարգմանութիւնն որ թերեւս իւր ոսկի գրչին նախընծայ արդիւնքն եղաւ, եւ որ ապա բաղդատական սրբագրութեամբն թարգմանիչ աշակերտաց, հայկական եկեղեցւոյն հրաշակերտներէն մին հանդիսացաւ արժանապէս։ Սահակայ ինքնագիր գրուածոց մէջ նշանաւոր է նաեւ Կանոնական թուղթն՝ վեց գլուխ բաժնուած՝ զոր գրեց ի Վաղարշապատ գումարուած ժողովէն վերջ, գեղեցիկ եւ ընտիր շարադրութեամբ։ Ունի նաեւ քանի մը թուղթեր առ Ատտիկոս եւ Պրոկղ Հայրապետս Կ․ Պոլսոյ եւ առ Փոքրն Թէոդոս ուղղեալ։*

*Եկեղեցական կարգաց վայելչութեան հաւասարապէս հետամուտ լինելով՝ թէ իբր կաթողիկոս եւ թէ իբր բանաստեղծ չդադրեցաւ երբէք գործելէ զարժանաւորն ըստ իւր պաշտաման եւ բարձր կարողութեան։ Իրեն կ'ընծայուին Մաշտոցին մէջ Քահանայօրհնէքն, Քահանայաթաղն, Աշխարհաթաղն, նաեւ գիշերային ժամերգութեան չորս քարոզներն․ Աւագ-շաբթու մէջ երգուած շարականներն (բաց ի քանի մը օրհնութիւններէ) զորս իմաստից յարմարութեամբ վսեմ եղանակաւ յօրինած է, կը ներկայացնեն զինքն իբրեւ հոգեշունչ բանաստեղծ մը եւ ճարտար երաժիշտ։*

*Ս․ Սահակ իւր բազմաշխատ եւ բազմարդիւն կեանքն կնքեց յ7 Սեպտեմբերի 439 տարւոյն գրեթէ 86 տարեկան, եւ թաղեցաւ յԱշտիշատ։*

## Ս. ՄԵՍՐՈՊ

*Հայ դպրութեան զարգացման նախապատճառն եղող այս մեծ անձնաւորութիւնն* ՄԵՍՐՈՊ *կամ* ՄԱՇՏՈՑ *Տարօն գաւառին Հացե-*

կաց գիւղէն էր՝ Վարդան անուամբ մէկու մը զաւակ։ Մանկութեան հասակէն վարժ էր հելլէն դպրութեան, եւ ապա արքունական դիւանին պաշտօնեայ կարգեցաւ ի Վաղարշապատ։ Զինուորական աստիճանէն բարձրացաւ ի կրօնականն՝ հաւանութեամբ նախարարաց եւ ազգին։ Ոչ միայն իւր իսկ ազգին՝ ինչպէս տեսանք՝ այլ եւ օգտակար եղաւ Վրաց եւ Աղուանից, նոցա լեզուի նշանագրերն ստեղծելով։ Վրաց մէջ Ջաղա անուամբ հմուտ թարգմանիչ մը թողուց աշակերտներ յանձնելով նմա․ յԱղուանս ղրկեց իւր աշակերտներէն զԴանան եւ զԵնովք, եւ ապա զՅովնաթան թողուց Աղուանից Երեմիա եպիսկոպոսին քով՝ որ Աստուածաշունչի թարգմանութեան ձեռնարկած էր։

Մեսրոպ իւր բանասիրական աշխատութեանց մէջ՝ կատարեալ գործեց նաեւ իւր պաշտօնն առաքելութեամբ, Աւետարան քարոզելով ի Գողթն, ի Սիւնիս եւ յայլ գաւառս։ Դարձեալ ինքն եղաւ Ազգային-Եկեղեցական ծիսարանին կարգադրիչ, թարգմանութեամբ կամ յօրինմամբ աղօթից ճոխացունելով զայն, որ եւ իւր մականուամբ կոչուեցաւ Մաշտոց։ Աւանդութիւնն իրեն կ'ընծայէ նաեւ Մեծ պահոց շարականները, եւ քանի մը համառօտ աղօթքներ։ Սրբոյն Սահակայ մահուանէն վեց ամիս յետոյ վախճանեցաւ Մեսրոպ եւ Օշական գիւղին մէջ ամփոփուեցաւ։

---

## ԹԱՐԳՄԱՆԻՉՔ

Թարգմանութիւնն՝ ո եւ է օտար լեզուաւ յօրինուած հեղինակութիւն մը փոխել է յայլ լեզու, նպատակ ունենալով ծանօթ առնել զայն նոցա՝ որք չ'են կարող բնագիրն հասկնալ։ Բայց պարզ գործողութիւն մը չ'է այս․ կատարեալ հմտութիւն եւ արուեստ կը պահանջուի յաջողելու համար յայդ։ Պէտք է թարգմանեալ գործն ներկայացնել իւր նոր ձեւոյն մէջ պահելով բնագրին հարազատութիւնն։ Թարգմանութեան մը առաջին յատկութիւնն է ճշգրտութիւն, որ կը կայանայ ո՛չ միայն գաղափարներն համազօր բառերով բացատրելու, այլ եւ բնագրին իմաստն ու կորովն ու նուրբ գոյներն ճշդիւ յառաջ բերելուն մէջ։ Մատենագրութեան մէջ թարգմանութեան նկատմամբ ա՛յնչափ ինչ ճարտարութիւն հարկ է, որչափ ճարտարութիւն կը պահանջուի նկարչութեան մէջ՝ պատկերի մը օրինակութեան մասին։ Սահակ եւ Մեսրոպ զգացած էին անտա-

բակոյս թէ մեր լեզուին եւ մատենագրութեան առաջին զարկն թարգմանութեանց միջոցաւ կրնար միայն լինել, վասն զի ազգին հանճարն առանց այդ զօրաւոր խարիխին ընտրելու՝ դեռ կարող չէր բարձրագոյն մատենագրութեան մը՝ այն է Յունականին աղօտ նմանութիւնն իսկ բերել. ուստի ԹԱՐԳՄԱՆԻՉՔ պարապեցան յուսումն յունական՝ ասորի եւ պարսիկ լեզուաց, ուսանելով անշուշտ նաեւ իւրեանց մայրենի լեզուն առ ոտս վարդապետաց իւրեանց։ Այդ նախնական շրջանն աւարտելէ յետոյ՝ անոնցմէ շատերն գացին յԵդեսիա, յԱղեքսանդրիա, յԱթէնս, ի Հռովմ եւ ի Բիւզանդիոն՝ յառաւելագոյն կրթութիւն մտաց։ Այսպէս թարգմանիչք կատարեալ մատենագրութիւն մը յարդիւնս ածելու կարեւոր հմտութիւնն ու արուեստն ի ձեռս բերին ժրաջան աշխատութեամբ։

Անուրանալի է որ ամենէն գեղեցիկ թարգմանութիւնք եղան առ Նախնիս ի Ե. դարու, եւ մեք թարգմանչաց կենաց եւ ինքնագիր երկասիրութեանց վրայ դեռ չխօսած՝ փութանք յիշատակել այս դարու թարգմանութիւններն՝ որք իբրեւ դուզնաքեայ մաս մը միայն՝ նախանձոտ ժամանակին ճանկերէն զերծան, եւ ասոնք են. ԵՒՍԵԲԻՈՍ եկեղեցական պատմչին Քրոնիկոնն (Ժամանակագրութիւն) եւ Եկեղեցական պատմութիւնն, ՓԻԼՈՆ ԵԲՐԱՅԵՑՒՈՅՆ այլ եւ այլ ճառերն, ՈՍԿԵԲԵՐԱՆԻ Մեկնութիւններն Մատթէոսի աւետարանին, Պօղոսի թղթոցն, Եսայեայ մարգարէութեան, Անդրիականք կոչուած ճառերն եւ այլ ներբողական գրուածներն. ԿԻՒՐԵՂ ԵՐՈՒՍԱՂԵՄԱՑՒՈՅՆ Կոչումն ընծայութեան գիրքն եւ զանազան խրատներն. ԻԳՆԱՏԻՈՍԻ Թղթերն, ԵՓՐԵՄԻ Մեկնութիւնն Աստուածաշունչ գրոց եւ զանազան գրուածներն, ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑՒՈՅՆ Յաղագս բնութեան եւ կազմութեան մարդոյ գրուածն, Երգ երգոցի մեկնութիւնն եւ այլն. ԳՐԻԳՈՐ ՆԱԶԻԱՆԶԱՑՒՈՅՆ աստուածաբանական ճառերն, ԲԱՐՍՂԻ Վեցօրեից գիրքն եւ ճառերն, ԱԹԱՆԱՍ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑՒՈՅՆ դաւանաբանական գրուածներն եւ ներբողներն ԵՊԻՓԱՆՈՒ Մեկնողական գործերէն մի քանին, Ս. ՆԵՂՈՍԻ ճառերն, եւայլն եւայլն։

Թարգմանիչ աշակերտք յերկուս դասակարգութիւնս կը բաժնուին. Առաջին թարգմանիչք, եւ Երկրորդ կամ Կրսեր թարգմանիչք։ Առաջին համարուածներն որք Ս. Մեսրոպայ Հայերէն գրերն հնարելուն ժամանակ հասակաւոր էին՝ եւ կրնային գործակից լինել ի թարգմանութիւնս, սոքա են.

ՅՈՎՍԷՓ ի Վայոց ձորոյ՝ որ ապա կաթողիկոսութեան արժա-

*նացաւ․* ՅՈՎՀԱՆ *որ խոստովանող կոչուեցաւ․* ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ *ի վանանդայ որ արիագունդ բանակի մը գլուխ անցաւ․* ՄՈՒՇԷ ՏԱՐՕՆԱՑԻ, ՏԻՐԱՅՐ ԽՈՐՁԵՆԱՑԻ *որք աւելի քարոզութեան եւ ուսուցման պարապեցան․* ՅՈՎՍԷՓ ՊԱՂՆԱՑԻ, ՅՈՎՀԱՆ ԵԿԵՂԵՑԱՑԻ, ԵՆՈՎՔ, ԴԱՆԱՆ, ԵՐԵՄԻԱ *սարկաւագապետն Ս․ Սահակայ․* ԹԱԴԻԿ, ԳՆԻԴ՝ *եպիսկոպոս Դերջանայ,* ԱՐՁԱՆ ԱՐԾՐՈՒՆԻ, ԱՂԱՆ ԱՐԾՐՈՒՆԻ, ՂԱԶԱՐԻԿ *կամ* ՂԱԶՐԻԿ *որ այլ է ի Փարպեցւոյն, որոց դժբաղդաբար գրաւոր վաստակներէն մեր ձեռքն բան մը չէ հասած։ Առաջին աշակերտաց կարգէն են նաեւ* ԵԶՆԻԿ *եւ* ԿՈՐԻՒՆ *զորոց առանձին պիտի խօսինք։*

*Իսկ կրտսեր թարգմանիչներն են․* ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ, ՄԱՄԲՐԷ ՎԵՐԾԱՆՈՂ, ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ, ԳԻՒՏ ԿԱԹՈՂԻԿՈՍ, ՅՈՎՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆԻ, ԵՂԻՇԷ *եւ* ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ (1), *որոց գրուածներն փոքր ի շատէ ծանօթ են մեզ։*

## ԱՌԱՋԻՆ ԹԱՐԳՄԱՆԻՉՔ

# ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ

*Եպիսկոպոս Բագրեւանդայ եւ երիցագոյն աշակերտ Սահակայ եւ Մեսրոպայ․ քաջ հմուտ էր հայ, յոյն, ասորի եւ պարսիկ լեզուաց եւ ժամանակին իմաստասիրական գիտութեանց։ Իւր ուսումն Բիւզանդիոնի մէջ գովութեամբ կատարելէ յետոյ դարձաւ 'ի Հայս՝ միւս ընկերակցացն հետ, Եփեսոսի ժողովոյն (431) կանոններն եւ Աստուածաշունչ գրոց ընտիր օրինակ մը մէկտեղ Տարօնի Աշտիշատ քաղաքը բերելով։*

*Այլեւայլ թարգմանութիւններէ զատ՝ որ պատմագրաց վկայութեամբ իրեն կ'ընծայուին, Եզնիկ թողած է նաեւ ինքնագիր երկասիրութիւն մը եղծ աղանդոց յորջորջմամբ չորս մասն բաժնուած, յորում քրիստոնէական կրօնի տեսակէտով Հեթանոսաց, Պարսից, Յունաց իմաստնոց եւ Մարկիոնի աղանդոյն դէմ կը կռուի։ Լեզուին հիանալի շարադրութեամբն Եզնկայ այդ ոսկեղինիկ գործն պիտի մնայ միշտ իբրեւ հայկաբանութեան գեր ի վերոյ օրինակ մը։ Իրեն կ'ընծայուին նաեւ խրատական փոքրիկ յորդորակներ,*

(1) Ասոնցմէ զատ կը յիշատակուին այս դարու մէջ Եզրաս Անգեղացի, Անանիա, Յովհաննէս, Յովնաթան, Խաչիկ կամ Խաչատուր եւ այլք, որոց երկասիրութեանց եւ կենաց վրայ բան մը չենք գիտեր։

որք սակայն Ս. Նեղոսի սկզբնագիր երկասիրութիւնք լինելով՝ հաւանականաբար թարգմանիչ կը համարուի Եզնիկ այս խրատուց։

## ԿՈՐԻՒՆ

Եպիսկոպոս Վրաց աշխարհին՝ ուր այդ պաշտաման մէջ կը կարծուի թէ կնքած լինի իւր կեանքը։ Ղեւոնդ երիցու հետ անհրաման ի վարդապետացն ի Բիւզանդիոն գնաց, հոն Եզնկայ նըման թարգմանութեանց պարապելու համար, եւ յետոյ յԵրուսաղէմ անցնելով՝ Ս. Կիւրղի Երուսաղեմացւոյն յօրինած Ապաշխարողաց արձակման կարգն հետ բերաւ ի Հայս։

Կորիւնոյ միակ գործն է Պատմութիւն վարուց Ս. Մեսրոպայ գրուածն՝ յորում կը խօսի Երանելւոյն թէ զինուորական եւ թէ կրօնաւորական կենաց վրայ, իբրեւ վկայ ականատես։ Իւր ոճն ընդհանրապէս ընտիր է, այլ մութ եւ խրթին դարձուածներ ուրեք ուրեք ի կիր կ'առնու, որ գուցէ յաճախուած լինին ապա ի թերութենէ կամ յանուշադրութենէ գրչագրաց։

#### ԵՐԿՐՈՐԴ ԿԱՄ ԿՐՏՍԵՐ ԹԱՐԳՄԱՆԻՉՔ

## ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ

Մովսէս Խորենացւոյն քեռորդի էր ԴԱՒԻԹ, Տարօնոյ մօտ Հարք գաւառի Հարքէթ կամ Հերեան գիւղէն, եւ կամ ըստ այլոց Ներգիւն աւանէն, եւ վասն այնորիկ Ներգինացի կոչուած։

Կրնանք ըսել թէ առ Նախնիս ոչ ոք յառաջ կամ յետոյ քան զինքն այն քան եռանդեամբ պարապեցաւ յիմաստասիրութիւն, եւ արժանացաւ համբաւոյ, մինչեւ կոչիլ իրաւամբ անյաղթ, եռամեծ փիլիսոփայ եւայլն։

Դաւթի փիլիսոփայական գործերն են Մեկնութիւն ստորոգութեանց Արիստոտելի, Վերլուծութիւն ի Ներածութիւն Պորփիւրի եւայլն եւայլն, եւ այդ երկասիրութեանց մէջ գլխաւոր տեղն կը բռնէ Սահմանաց գիրք կամ Սահմանք իմաստասիրութեան կոչուածն։

Իբրեւ Հայերէն լեզուի մատենագիր Դաւիթ ոեւէ արժէք չունի հետեւելի՝ նոյն իսկ եթէ կարելի է ասել՝ ընթեռնլի լինելու, վասն զի յունամոլութեամբ հարեալ երբէք չէ հետեւած իւր ընկերակցաց շաւղին, եւ այնպիսի շարադրութիւն մը ստեղ-

ծած է, յորում Հայերէն լեզուի յստակութիւնն բոլորովին կոր-
սուած եւ Հայերէն բառերն յունական կաղապարի մէջ ձուլուած
են։ Այս թերութենէն խուսափ զերծ է Խաչի Ներբողն, զոր եր-
կասիրեց Գիւտ կաթողիկոսի խնդրանօք։

Դաւիթ իւր խառնավարեալ լեզուաւն թողած է մեզ նաեւ
քանի մը իմաստասիրական գրոց թարգմանութիւններ, եւ իւր իսկ
մատենագրութիւններէն մի քանին յունարէն լեզուաւ ալ շարագ-
րած է։ Չիարդ եւ իցէ սակայն, «Դաւթի փառքն պիտի լինի
Հայոց աշխարհի ներկայացուցիչն լինել յիմաստասիրութեան, ինչ-
պէս կ'ըսէ Պարթէլըմի Սէնդ-Իլէր գաղիացի նշանաւոր մատենա-
գիրն(1), եւ եթէ այդ աշխարհն չկարաց խաղալ մի փայլուն դեր,
պարագայք եւ ժամանակին դժուարութիւնք էին պատճառ եւ ոչ
թէ Ազգին հանճարն»։

## ԳԻՒՏ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Տայոց գաւառին Արահեզայ գիւղէն էր Գիւտ, եւ կաթողիկո-
սական աթոռն բարձրացաւ այնպիսի ժամանակի մը մէջ՝ մինչ իւր
աշակերտակիցք Եղիշէ, Խորենացի եւ այլք առանձնական կենաց
մէջ կ'ողբային Ազգին վիճակը։ Ըստ վկայութեան Փարպեցւոյն
հմուտ էր սա Հայ եւ յոյն լեզուաց, եւ յորդասաց եւ առատա-
բուղխ վարդապետութեամբ կը լուսաւորէր գժողովուրդն աւետա-
րանի լուսով։

Գիւտի ինքնագիր մատենագրութիւններէն քիչ բան հասած է
մեզ, եւ սոնք են. Երկու թուղթեր, մին առ Դաւիթ անյաղթ
գրուած՝ խաչին ներբողը խնդրելու համար, եւ միւսն առ Վաչէ՝
արքայ Աղուանից՝ որ մոգութեան կրօնն թողլով միանձնական
կեանք վարել յանձն առած էր։

Իբրեւ մին ի թարգմանիչ աշակերտաց անշուշտ Գիւտ պարա-
պած պիտի լինի ի թարգմանութիւնս. ինքն ձեռնտու եղած է
նաեւ Ժամագրոց եւ Հասարակաց Աղօթից կարգաւորութեան,
թէպէտ եւ մասնաւոր աղօթք մը յանուանէ չընծայուիր իրեն։
Գիւտի մահն հանդիպած 475 թուականին։

## ՅՈՎՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆԻ

Արշարունեաց Տախնոտ գիւղէն էր Մանդակունի որ 75 տա-

(1) Բառգիրք իմաստասիրական գիտութեանց Ֆրանքի, ի յօդուածին Հայկազն Դաւիթ։

ռեկան հասակին մէջ Վահան Մամիկոնեանի խնդրանօք կաթողիկոսական աթոռն նստաւ ։

Այլ եւ այլ երկասիրութիւններ կ'ընծայուին Մանդակունւոյն, յորս գլխաւոր կը համարուին 28 Թուղթ ճառերն, որք թէպէտ քանի մը ձեռագրաց մէջ Ոսկեբերանի եւ Եփրեմի կ'ընծայուին, բայց այդ երկու վարդապետաց յունական եւ ասորի բնագրաց մէջ այդ ճառերէն եւ ոչ մին կը տեսնուի, եւ բանաւոր չէ կարծել թէ սոյն 28 ճառերն ալ միանգամայն կորսուած ըլլին նոցա երկասիրութեանց մէջէն ։

Փարպեցին իւր պատմութեան մէջ կ'աւանդէ մեզ այն գեղեցիկ ատենաբանութիւնն զոր խօսեցաւ Մանդակունի հայրապետն յեկեղեցւոջ Դուին քաղաքի՝ Վահանայ մարզպանութեան առթիւ ։ Իրեն կ'ընծայուին նաեւ Մաշտոցին մէջ Մկրտութեան կանոնն, Խաչ-օրհնէքն, Պսակի եւ Եկեղեցւոյն Հիմնարկէից օրհնութիւնքն, Տաճարի Սրբութիւնն, Ժամահարի՝ Սկհւոյ, Մաղզմայի՝ Սպասու եւ Աւազանի օրհնութիւնն, Պատարագամատոյց գրոց մէջ այլ եւ այլ քարոզներ եւ աղօթքներ · Ժամագրոց մէջ ալ Զարթուցեալք եւ Զինչ գոհանամք աղօթքներն, եւ ճաշաժամուն երեք քարոզներն ու աղօթքներն ։

Վեց տարի հայրապետական պաշտօնը վարելով՝ կնքեց իւր սրբասէր կեանքն եւ թաղուեցաւ Շիրակ գաւառի Բեռնոս գիւղի մէջ ։

## ԵՂԻՇԷ

Եղիշէի կենաց նկատմամբ այսչափ ինչ գիտենք միայն՝ թէ էր պարգեւապետ կամ ատենադպիր Ս · Վարդանայ, եւ հաւանական կը թուի կարծել թէ Արտաշատի մէջ գումարուած եպիսկոպոսաց ցուցակին մէջ նշանակեալ Ամատունեաց Եպիսկոպոսն ինքն եղած լինի ։ Հայ մատենագրութեան անմոռաց փառքերէն մին՝ որ Եզնիկէ վերջ կը ներկայանայ իբրեւ երկրորդ հայկաբան լեզու, թէպէտ իւր ոճն փափուկ զգացմանց եւ վեհ իմաստից բացատրութեանց ներքեւ աւելի առոյգ եւ թարմ կ'երեւի · զի մինչ Եզնիկայ գրիչն իրերն իբր ի հայելւոջ կը պատկերացունէ յստակ եւ վճիտ, Եղիշէ զանոնք կը ցոլացնէ հատուածակողմ ապակւոյ մը մէջէն ։

Իւր երկասիրութեանց մէջ գլուխ վաստակոցն կը համարուի Պատմութիւն Վարդանանց, որ նիւթովն ծանօթ է մեզ ։ Այդ գործն

Թէպէտեւ վիպական կազմութեան մը դրոշմ կը կրէ, բայց ստուգապատում դիպաց շարայարութիւն մը լինելէ չդադրիր։ Պատմութենէն զատ Եղիշէի միւս երկասիրութիւններն են. Միաբանից գեղեցիկ ճառն, Մեկնութիւն Յեսուայ եւ Դատաւորաց գրքին, Մեկնութիւն Տէրունական աղօթից կամ Հայրմերի, այլ եւ այլ ճառեր զՄկրտութենէ, զԱյլակերպութենէ, զԽաչելութենէ եւ զԹաղման Քրիստոսի եւ այլն։ Շարագրած է նաեւ Արարածոց մեկնութիւն մը (Ծննդոց գրքին), որ կորուստն աւաղելի է յոյժ, ինչպէս զգալի կ՚ընեն այն հատուածներն՝ զորս կը յիշատակէ Վարդան վարդապետ (Դար ԺԳ.) իւր Մեկնութիւն Հնգամատենին Մովսիսի կոչուած երկասիրութեան մէջ։

Վարդանանց պատերազմէն յետոյ՝ իւր կենաց օրերն միայնութեամբ անցուց Եղիշէ, նախ Մոկաց լեռներուն մէջ, եւ ապա ի գաւառին Ռշտունեաց, ուր եւ կնքեց իւր աստուածահաճոյ եւ բազմարդիւն կեանքը։

## ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

Բազմահմուտ ծերունին կրտսեր աշակերտաց դասէն էր, եւ երբ իւր ուսումնական արշաւանքէն դարձաւ ի Հայս, մեռած գտաւ իւր սիրելի վարդապետներն զՍահակ եւ զՄեսրոպ։ Նոյն դժբաղդութիւնն ունեցած էին նաեւ իւր աշակերտակիցներէն ոմանք։

Թարգմանչութեան արուեստին հմտանալու եւ իւր գաղափարներն ծանօթութեամբք ճոխացունելու համար չդադրեցաւ երբէք յընթերցմանէ, եւ պարապեցաւ ի քնին մատենադարանաց եւ մատենից, եւ ծանօթացաւ իւր ժամանակի անուանի իմաստնոց։

Խորենացւոյն գործոց մէջ նշանաւոր է Հայոց պատմութիւնն՝ զոր գրել ձեռնարկեց ի խնդրոյ Սահակայ ասպետի Բագրատունւոյ. բաց՚ի քանի մը պատմական օտար աղբիւրներէ՝ առաջնորդ ունենալով մասնաւորապէս մեր ազգի ծագման եւ սկզբնաւորութեան մասին Մարիբաս Կատինայ անուն ասորւոյ մը գրուածն, որ ըստ պատմութեան Խորենացւոյն՝ Վաղարշակայ ժամանակակից լինելով՝ նորա հրամանաւ Նինուէի մատենադարանէն քաղեց Հայոց ազգի պատմութիւնն, մեր Ազգին նախահայրէն մինչեւ Վահէի ժամանակներն։ Սակայն եղան քննադատներ՝ որ Մարիբաս Կատինայի գոյութիւնն ուրացան, եւ Նինուէի ի վաղ ժամանակաց կործանած լինելն առարկելով՝ զԽորենացին խաբուած կամ խաբեբայ ջանացին ցոյց տալ։

Այսու ամենայնիւ ինչ առարկութիւններ ալ որ ի մէջ բերուին՝ Խորենացւոյն պատմած կամ աւանդած նախնական ժամանակաց դէպքերն չկրնալ երաշխաւորելու կասկածանօք, մանաւանդ ի մասին ծննդաբանութեան Հայոց ազգին, միշտ իւր հնութեամբն պատկառելի յիշատակարան մ'է իւր պատմութիւնն՝ առանց որոյ յանհնարից իմն է լոյս տալ Հայոց ազգին ցեղական պատմութեան, եւ ի դասակարգութեան նախնի ազանց նշանակել նորա որոշ գիրքն ու դերն։

Խորենացւոյն երկասիրութիւններէն յիշենք նաեւ Աշխարհագրութիւնն, եւ Պիտոյից գիրքն որ ճարտասանական ձեւոց հրահանգներ կը թուին լինել. Հռիփսիմեանց պատմութիւնն, եւ նոյն կուսանաց վրայ գրած Ներբողն. իսկ աւանդութեամբ իրեն ընծայուած գործերէն անհարազատ են Պատմութիւն Սրբուհւոյ Աստուածածնի եւ պատկերի նորա, Վարդավառի ճառն եւ այլ քանի մը քերականական գրուածներն։

Խորենացւոյն գործոց մէջ իբրեւ թերութիւն կը նկատուի հելլենաբանական խրթնութիւնն ուրեք ուրեք, որ՝ եթէ չեմք սխալիր՝ անխուսափելի արդիւնք մ'է հելլէն դպրութեան ծայրալիր պարապմանցն։

Տարօնոյ Խորանք կամ Խորնի գիւղն ծնած լինելով Խորենացի կոչուած է Մովսէս. նոյն գաւառին մէջ հանդիպած է նաեւ իւր երջանիկ փոխումն եւ թաղուած է Ս. Առաքեալք վանաց եկեղեցւոյն մէջ։

## ՄԱՄԲՐԷ

Խորենացւոյն կրտսեր եղբայրն էր ՄԱՄԲՐԷ՝ որ կը կոչուի վերծանող. ազգային թէ՛ ժամանակակից եւ թէ հետագայ մատենագիրք մեծ գովութեամբ կը խօսին զնմանէ։

Իւր երկասիրութիւններէն՝ որք հաւանաբար բազմաթիւ լինել կը կարծուին՝ երկու ճառեր միայն հասած են մեր ձեռքն, մին Ղազարու Յարութեան վրայ եւ միւսն՝ Ի Գալուստն Քրիստոսի յԵրուսաղէմ։ Առաջին ճառն անհամեմատ կերպով ընտիր է եւ գերազանց քան զերկրորդն, այնպէս որ վերջնոյն հարազատութիւնն կրնայինք ձգել երկբայութեան տակ, եթէ Կիրակոս պատմիչ (ԺԳ. դար) յայտնապէս Մամբրէի չընծայեր զայն։

Թովմա Արծրունին (Թ. դար) ալ պատմական գրուած մը կ'ընծայէ Մամբրէի, բայց հասած չէ առ մեզ։

# ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ

Ընտիր եւ ազնուական ծնողաց զաւակ էր ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ։ Մանկութեան հասակէն իւր նախնական կրթութիւնն առաւ Վրաց Աշուշայ բդեշխի տան մէջ, որ Վահան Մամիկոնեանի Անոյշ-Վռամ մօրաքեռ հետ ամուսնացած էր։ Սահակայ եւ Մեսրոպայ հրամանաւ ի Յունաստան գնաց Ղազար, եւ հոն հետեւելով հելլենական ուսմանց, ի հռետորականին ճարտասանն անունն առաւ, եւ դառնալով ի հայրենիս բնակեցաւ Մամիկոնեանց ազգական կամսարականաց տիրոջ քով, եւ ժամանակէ մը յետոյ անցաւ ի Սիւնիս։ Հոն երկու տարի մնալէ վերջ՝ Վահան Մամիկոնեան կոչեց զինքն նմա յանձնելու համար Էջմիածնի նորաշէն կաթողիկէին հոգաբարձութիւնն. ընդունեց զայն Ղազար, եւ քիչ ժամանակի մէջ այնքան պայծառացուց վանքն որ Հայաստանի ամէն կողմէն հոն կընթանային ուսանելու համար։ Վանքին այս բարեկարգութիւնն եւ մեծ համբաւն ի նախանձ շարժեց ընդդէմ Ղազարու բազմաթիւ աբեղաներ՝ որք սկսան ամբաստանել զինքն իբրեւ աղանդաւոր՝ չափազանց ներողամիտ եւ քաջալերիչ մոլութեանց եւ այլն։ Զայսոսիկ լսելով Վահան Մամիկոնեան՝ երդմամբ սպառնացաւ ո՛չ միայն զՂազար, այլ եւ ոչ զոք յիւրայնոց թողուլ վանքին մէջ։ Խռովեցաւ Փարպեցին, եւ որպէսզի իրեն դէմ բացուած անդունդ բերաններն լռեցունէ, հարկ սեպեց դիմել առ կաթողիկոսն Յովհան Մանդակունի. իսկ նա չուզեց եւ ո՛չ իսկ տեսնել զինքն եւ լսել իւր դատը։ Ղազարու թշնամիներն տեսնելով որ լքուած է ամենէն, այլ եւս չվախցան, եւ անգթութեամբ վռնտեցին վանքէն՝ նորա ստացուածքն ալ յափշտակելով, եւ մինչեւ անգամ իւր քով գըտնուած յունարէն գրքերն ալ չտուին։ Ղազար սրտաբեկ եւ յուսահատ ելաւ վանքէն, եւ Ամիթ քաղաքը գնաց, եւ անտի Վահան Մամիկոնեանի առջեւ ինքզինքն արդարացնելու համար թուղթ մի գրեց, յորում սննդակից եւ խաղակից իւր կը կոչէ զնա։ Այդ թուղթն ընթեռնլով որ Փարպեցւոյն մի գեղեցիկ գրուածն է՝ Վահան կոչեց զինքն առ իւր։ Այդ թուղթէն զատ Ղազարու երկասիրութիւնն է Պատմութիւն մը որ Արշակունեաց թագաւորութեան յերկուս բաժնուելէն կ՚սկսի, եւ կը հասցունէ մինչեւ Վահանայ մարզպանութեան օրերն։ (488 - 490)

# ԴԱՐ Զ.

*Հայկական մատենագրութիւնն որ անհաւատալի իմն ճոխութեամբ արագ փայլեցաւ ի Հինգերորդ Դարու, գոգցես նոյն արագութեամբ յանկումն կ'երթայ Զ. դարուն մէջ։ Ցետս ընդկրուկն յեղափոխութեան պատճառ էին ոչ միայն անընդհատ պատերազմունքն ընդդէմ Սանասանեանց, որ դրական զբաղմանց խաղաղասէր ժամերն վրդովմանց եւ ծխանաց մատնեցին, այլ եւ Քաղկեդոնի աղմկայոյզ ժողովն (451)՝ որ անվերջանալի խնդիր յարոյց Ցունաց եւ Հայոց միջեւ կրօնական գժտութիւն բերելով. այնու հետեւ յունական լեզուի ուսումն եւ դասական մատենագրաց ընթերցմունք խոտան եւ արհամարհ թուեցան յաչս մերայնոց՝ եւ Հայ հանճարն որ բարձր թռիչ մ'առած էր արտաքին մանաւանդ յունական մատենագրութեան շնորհիւ՝ առանձինն եւ անօգնական մնաց։ Ցոյժ սակաւաթիւ մատենագիրք երեւեցան այս դարուն մէջ՝ որք իբրեւ սկզբնագիր գրիչներ՝ աննշան երկասիրութիւններ միայն թողին։ Աւելորդ է ըսել թէ դարուն այս մատենագրական ամլութիւնն խորապէս ներգործեց նաեւ լեզուին անկման մասին։*

*Իբրեւ լուսաւորութեան վառարան կը հանդիսանայ մեզ յայսմ դարու Սիւնեաց վարդապետարանը՝ ուր կրթուող անձանց մէջ նշանաւոր եղաւ*

## ՊԵՏՐՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԻՒՆԵԱՑ

*Մեր պատմագիրներէն ոմանք կը համարին զինքն աշակերտ Խորենացւոյ, եւ մեծ գովեստիւք կը խօսի զմանէ Ուռպէլեան (ԺԴ. դար), փիլիսոփոս՝ fürթող եւայլն մակաոնուններ տալով։ Պետրոսի կ'ընծայուին բազում թարգմանութիւններ, ճառեր, հին եւ նոր Կտակարանաց մեկնութիւններ, պատմական գրուածք մը, եւ Ուրացող Վասակայ հօր Բաբկայ վրայ ներբող մը, որք այսօր չեն ի միջի։*

*Պետրոսի անուամբ հետեւեալ երկասիրութիւնք միայն հասած են մեզ. 1° Համառօտ Ներբողեան մը Ս. Աստուածածնի վրայ. 2. Քրիստոսի ծննդեան վրայ գրուած ճառէն հատուած մը. 3. «Պատասխանիք առ հարցմունս Վաչագանայ իշխանին» մարդեղու-*

թեան խորհրդոյն վրայ յօրինուած։ Ասոնցմէ զատ իր ընտիր գրչին արդիւնքն է նաեւ Բաբկայ Սիւնւոյ՝ Հոնադուր Հոնին դէմ տուած մենամարտութեան պատմութիւնն՝ զոր Մովսէս Կաղանկայտուացւոյն (է. դար) պատմութեան մէջ կը կարդանք։

## ԱԲՐԱՀԱՄ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՄԻԿՈՆԷԻՑ

Աղուանից Վաչագան Թագաւորին խնդրանօք յօրինած է քանի մը խրատական գրուածներ, մանաւորաբար որոց նշխարաց յարգութեան եւ հոգեհանգստեան աղօթից վերաբերմամբ։

Աբրահամու անուամբ կը յիշատակուէր նաեւ Եփեսոսի ժողովոյն պատմութիւնն աւանդող համառօտ գրուած մը որ ընտիր ոճով շարադրուած է. բայց վերջին տարիներուս մէջ գրչագիր մը յերեւան գալով իմացուեցաւ Թէ այդ գրուածն Նաքովկ քաղաքի Փիլաքսիանոս Եպիսկոպոսի հեղինակութիւնն էր, եւ Աբրահամ հաւանականաբար Թարգմանիչ եղած էր այդ գործոյն։

---

Յիշատակենք նաեւ այս դարու մէջ զԱԲՐԱՀԱՄ ԿԱԹՈՂԻԿՈՍՆ (+ 617) որ մեղադրանաց Թուղթեր գրած է առ Կիւրիոն կաթողիկոսն Վրաց՝ Քաղկեդոնի ժողովն ընդունած լինելուն համար։ զՄՈՎՍԷՍ ԵՂԻՎԱՐԴԵՑԻ, որ վեցերորդ դարու գիտնականներէն լինելով ձեռնարկեց նորոգել Հայոց տումարը, 551 Թուականին կաթողիկոսական աթոռն ելնելով. զՎՐԹԱՆԷՍ ՔԵՐԹՈՂ՝ որ քանի մը Թուղթերն կը կարդանք Ուխտանէսի պատմագրութեան մէջ (ժ. դար) (1)

## ԴԱՐ Է.

Գրաբարն որ մարը մնող արեւու մը պէս իր ճառագայթներն ժողվելով կը հեռանար հորիզոնէն, լիալիր լուսնի մը ճաճանչներովն կը Թուի յերեւան գալ այս դարու մէջ, որ Հայ մատենագրութեան արծաթի դարուն սկիզբն կը համարուի, չունենալով անտարակոյս իր նախկին փայլն ու ջերմութիւնն։ Այս դարն մեծ կարեւորութիւն ունի նաեւ հայերէն լեզուին պատմութեան նկատմամբ, վասն զի ոմանք իրօք սահմանագլուխ մը կը համարին զայն հին հայերէնի կամ գրաբարին եւ հին աշխարհա-

(1) Ուխտանէսի պատմագրութեան մէջ են նաեւ Աբրահամ կաթողիկոսի թուղթերն։

բարի մը կամ նախնեաց ռամկօրէն կոչուած լեզուին միջեւ։ Այս եւ հետագայ դարուց մատենագրաց ճիգն ու ջանքն եղած է աշխարհաբարի հետզհետէ ողողմանէն զերծ պահել գրաբարի չէնքն, եւ որչափ թէ յաջողեցան առ այդ, սակայն եւ այնպէս այն ժողովրդական Հայերէնն կամ ռամկօրէնն ո՛չ երբէք ընկրկեցաւ գրաբարի կանգնած թումբերուն դէմ, եւ այն որ Ե. դարու մատենագրաց գրչին իսկ ներքեւէն սահելով սպրդեցաւ, կրցաւ անխափան մուտ գործել նաեւ Զ. դարու մէջ եւ առաւելապէս յեօթներորդումս զգալի եղաւ իւր ազդեցութիւնն, եւ որոշ կերպարան մը առնլու չափ յառաջ գնաց։ Ցայդմ իսկ էր Գրաբարի անկման գաղտնիքը. զի մատենագրին հանճարն եթէ իւր հարկաւոր ճարակն չգտնէր բարձրագոյն ոլորտի մը մէջ՝ իբրեւ բոց սլանալով, հարկ է այնուհետեւ որ իջնէ ի գետին՝ ռամկին խորհրդոց եւ լեզուին արձագանգն ըլլալու։ Եթէ բնական համարինք մատենագրական կամ քերթողական լեզուին վրայ աշխարհաբարի նախնականութիւն տալն, Գրաբարի անկում ըսելով ո՛չ այլ ինչ կը հասկնանք բայց եթէ ռամկօրէն ձեւերու՝ բառերու եւ բացատրութեանց յաճախակի պատահումն մատենագրական երկասիրութեան մը մէջ։

Այս դարու աշխարհաբարին կամ ռամկօրէնին նկատմամբ կրնան գաղափար մը տալ մեզ մանաւանդ Յովհան Մամիկոնեանի գրուածներն, բայց որչափ իւր գրաբարն նոյնչափ եւ իւր ռամկօրէնն իրենց բնական աղբիւրէն հեռացած կը թուին. աշխարհաբարն կարծես դեռ իւր մեծարանքն կ'ընծայէ գրաբարին, իւր տգեղութիւնն ծածկելով նորա զարդերովն։

Դառնանք այժմ խօսիլ սոյն դարու մատենագրաց վրայ՝ յորս ժամանակաւ առաջին կը հանդիսանայ մեզ

## ԿՈՄԻՏԱՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Սա Տարօնոյ Եպիսկոպոս եւ Գլակայ վանուց առաջնորդ լինելով՝ յաջորդեց Աբրահամ կաթողիկոսի։ Իւր հայրապետութեան ժամանակ Հռիփսիմեանց վկայարաններն նորոգելու ձեռնարկեց, եւ այդ առիթ մ'եղաւ Կոմիտաս կաթողիկոսի համար Ս. Կուսանաց վրայ յօրինել շարական մը այբուբէնի կարգաւ, որ իւր անուամբ առ մեզ հասած միակ երկասիրութիւնն է, եւ որ ծանօթ է Անձինք նուիրեալք սկզբնաւորութեամբ։ Այդ քնարերգական

գեղեցիկ բանաստեղծութիւնն փափկութեամբ զգացմանց, պարզութեամբ լեզուի եւ զանազանակութեամբ իմաստից գրեթէ կրնայ առաջին տեղն բռնել հայկական եկեղեցւոյ Շարականաց մէջ։

Կոմիտասայ կընծայուին նաեւ այլ եւ այլ ճառեր, դաւանաբանական թուղթեր եւ զանազան գրուածներ։

## ՄԱԹՈՒՍԱՂԱ

Ուռպէլեան «մեծ քերթող եւ անյաղթ փիլիսոփայ» կ'անուանէ զՄաթուսաղա, եւ մեծ զարմացմամբ կը խօսի իւր վրայ։ Կոմիտաս կաթողիկոս երբ լսեց Մաթուսաղայի առաքինական կեանքն ու մեծ հմտութիւնն՝ անոր յանձնեց Արշարունեաց գաւառի Երասխաձոր կոչուած տեղւոյն վարդապետարանը(1), ուր կը դաստիարակուէին հայ մանուկներ, ընդ որս էր նաեւ կաթողիկոսին Թէոդորոս եղբօրորդին։ Մաթուսաղայի գրուածներէն միայն մեր ձեռքն հասած է Դաւանութիւն հաւատոյ կոչուած թուղթ մը՝ զոր Ուռպէլեան ամբողջ կը դնէ իւր պատմութեան մէջ։ Մա՞րթ է միթէ որ այդպիսի իմաստասէր եւ բեղնաւոր հանճար մը առանց ո եւ է երկասիրութիւն մը թողլոյ՝ անչքապէս ծածկուած լինի ի խորշս վանաց. պէտք է համոզմամբ ուրեմն զկայ առնուլ այն ենթադրութեան վրայ, զոր յաճախ ըրինք եւ դեռ պիտի ընեմք յընթացս մատենագրական պատմութեան Հայոց, այսինքն թէ՝ ինչ գերազանց գործեր եղծուած են արդեօք ցեցամէս, կամ թէ ժամանակն որչափ ինչ յափշտակած է մեր գրական գանձերէն։

Մաթուսաղա 18 տարիներ Սիւնեաց մետրապոլտութիւն ընելէ յետոյ վախճանեցաւ։

## ՅՈՎՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

Ներսէս Շինող կաթողիկոսի ժամանակակից լինելով ՅՈՎՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ որ Եպիսկոպոս էր Տարօնոյ, կաթողիկոսին հրամանաւ գրած է Տարօնոյ պատմութիւն մը։ Ամբողջ գործն ութ գլուխներէ կը բաղկանայ՝ որոց հինգն թարգմանած է ի համանուն երկասիրութենէն Զենոբ Գլակ ասորւոյն՝ որ Գլակայ վանուց առաջնորդ էր Լուսաւորչի ժամանակ, իսկ մնացեալ երեք գլուխներն

(1) Այս դարուս մէջ ծաղկեալ վիճակ մ'ունէին նաեւ Դպրեվանքն ի Շիրակ եւ Խաչկայ վանքն ի Կարին։

*իւր իսկ երկասիրութիւնն են․ Թէպէտ եւ ինքն Յովհան կը պատմէ թէ այդ Զենոբայ գրուածէն 28 գլուխ բան թարգմանած եւ իւր կողմանէ եւս 10 գլուխ յաւելած է ։ Զենոբայ գրոց նիւթ են Լուսաւորչի կենաց համառօտ պատմութիւնն եւ Սրբոյն գրած քանի մը նամակներն․ Արձան եւ Դեմետր քրմաց արիւնռուշտ պատերազմն, եւ այլն․ իսկ Յովհան Մամիկոնեան կը խօսի Մուշեղ Մամիկոնեանի եւ Գայլ Վահանայ ժամանակին եւ գործոց նկատմամբ առանց ուշ դնելու ժամանակագրական ճշդութեան, եւ առասպելախառն անցքեր կը յիշատակէ տեղական անուններէ ստուգաբանութիւններ հանելով ։*

*Մամիկոնեանի լեզուն գրեթէ պարզ եւ ռամկական ոճ մ'ունի, ինչպէս արդէն խօսեցանք, թէպէտեւ աշխոյժ եւ զուարճաբան է ։ Իւր գիրքն մեծ կարեւորութիւն ունի սոյն դարու ռամկօրէնն ուսումնասիրելու համար ։*

## ԲԱՐՍԵՂ ՃՈՆ

*Դպրեվանից առաջնորդ լինելով՝ սոյն դարու նշանաւոր մատենագիրներէն մին եղած է* ԲԱՐՍԵՂ ։ *Իւր կենաց նկատմամբ այսչափ ինչ տեղեկութիւն ունինք որ Ներսէս Գ․ Շինող երբ Դւնայ մէջ ժողով գումարեց (645) եկեղեցական ինչ ինչ խնդրոց կարգադրութիւն ընելու համար, Բարսեղ ներկայ էր այդ ժողովին, եւ հոն իրեն յանձնուեցաւ ընտրութիւն ընել շարականաց, ոյց թիւն խիստ բազմանալով ժամերգութեան խանգարման եւ երկարաձգութեան պատճառ կը լինէր ։ Բարսղի ընտրած շարականներն կոչուեցան* ՃՈՆԸՆՏԻՐ ։ *Իբրեւ երկասիրութիւն Բարսղի՝ մեր ձեռքն հասած է* ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՐԿՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ *ընդարձակ գործն ո՛չ ամբողջ, յորում կը տեսնուի աստուածաբանական հմտութիւն, եւ Հայերէն լեզուի կորովն ու շնորհը ։*

## ՍԵԲԷՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

*Բագրատունեաց ցեղէ եպիսկոպոս՝ որ վերը յիշուած Դւնայ ժողովոյն ներկայ էր ։ Իւր երկասիրութիւնն է* ՊԱՏՄՈՒԹԻՒՆ Ի ՀԵՐԱԿԼ *կոչուած գործն, որ գլխաւոր նիւթն են Հերակլ Յունաց կայսեր ընդդէմ Պարսից մղած պատերազմներն եւ Սասանեանց տկարանալն․ ածով իմն կը խօսի նաեւ Խոսրով Բ ի, Մօրիկ կայսեր, Մուշեղ Մա-*

միկոնեանի եւ այլոց վերայ, Հայոց ազգի սկզբնաւորութեան մասին ժամանակագրական համառօտութեամբ անցնելով։ Բայց ի քաղաքական դէպքերէ կը գրէ նաեւ Հայոց եւ Յունաց մէջ պատահած եկեղեցական խնդրոց մասին։ Սեբէոսի լեզուն շատ չհեռանար ոսկեղինիկ հայկաբանութեան խոկատիպ վայելչութենէն եւ վեհութենէն։

## ՄՈՎՍԷՍ ԿԱՂԱՆԿԱՅՏՈՒԱՑԻ

Ուտի գաւառին Կաղանկայտուք քաղաքաւանէն էր Մովսէս՝ որ ծնած եւ հաւանականաբար մեռած է Է. դարու։ Կը կարծուի թէ էր մոտքրաւոր Աղուանից Վիրոյ կաթողիկոսին։ Կաղանկայտուացւոյն որ երբեմն Աղուանեցի ալ կը կոչուի՝ նշանաւոր երկասիրութիւնն է Պատմութիւն Աղուանից գրուածն՝ յորում Աղուանից ծագման՝ բարուց եւ հեթանոսական սովորութեանց, ի Քրիստոնէութիւն դարձին եւ ի ձեռն Մեսրոպայ լուսաւորուելնուն, քաղաքական պատերազմաց եւ նոյն իսկ երկրին արտադրութեանց մասին այնպիսի ծանօթութիւններ կան՝ զորս չէ կարելի ընթեռնուլ առ այլս ի պատմագրաց։ Թէեւ ամբողջ գործն երեք գրքէ բաղկացեալ է, բայց ժամանակագրական հաշուով առաջին երկու գրքերն միայն Մովսիսի կը պատկանին, իսկ երրորդ գիրքն անանուն հեղինակի մը գործ է իբրեւ շարայարութիւն Կաղանկայտուացւոյն պատմագրութեան, եւ կը պատմէ անցքեր՝ որք մինչեւ ԺԴ. դարուն վերջերն կը հասնին։

Կաղանկայտուացւոյն մատենագրական լեզուն յստակ է եւ հարուստ, բայց մերթ խրթնաբանութիւններ եւ մերթ եւս ճոխաբանութիւններ ունի, որով ընտիր հայկաբանութեան յատկանիշերն լիովին չեն փայլիր ի նմա։

## ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ

Ազգային մատենագրութեան պատմութեան մէջ՝ համարողական եւ թուաբանական գիտութեանց հետամուտ եղող գլխաւոր անձն է ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ կամ ԱՆԵՑԻ, որ ծաղկեցաւ այս դարու մէջ։ Բարոյական ուսմանց եւ Աստուածաշունչ գրոց հմտանալէն յետոյ ուսողական գիտութեանց հետամուտ լինելու փափաքանօք ուղեւորեցաւ նախ ի Կարին՝ ուր Եղիազարոս անուամբ մէկէ մը իմանալով թէ Չորրորդ Հայոց մէջ Քրիստոսատուր անուն գիտուն մի

կայ, անմիջապէս անոր քով գնաց, եւ վեց ամիս աշակերտելէ վերջ երբ տեսաւ որ նորա գիտութեամբն չպիտի կարենայ գոհանալ՝ ելաւ Կ. Պոլիս եկաւ։ Յետոյ դարձաւ ի Տրապիզոն, եւ հոն ութ տարի Տիւքիկոս գիտնականի մօտ համարողական ուսմանց ամէն մասունքն ուսնելով դարձաւ ի Հայս, եւ աշակերտներ ունեցաւ՝ յորս յանուանէ նշանաւոր եղած են Հերմոն, Տրդատ, Ազարիա, Եզեկիէլ, Կիրակոս։ Շիրակացւոյն գլխաւոր երկասիրութիւնն է Աստեղաբաշխութիւն կամ Աստեղագիտութիւն անուն գործն՝ զոր գրչագիրք ընդհանրապէս կը կոչեն Յաղագս երկնի։ Այդ գրուածն հեղինակին գիտական բարձր արժանիքն ցոյց կուտայ իւր ժամանակին բաղդատմամբ եւ գրեթէ մինչ դար մը յառաջ դեռ իւր տեսակին մէջ միակ եւ առաջին երկասիրութիւնն էր առ մեզ։ Շիրակացւոյն են նաեւ Ժամանակագրութիւնք, եւ Յաղագս չափուց եւ կշռոց կոչուած գործերն՝ որոց առաջինն նախնեաց համանուն երկասիրութեանց մէջ կրնայ գլխաւոր սեպուիլ։

Ասոնցմէ զատ յանիրաւի կ'ընծայուին Շիրակացւոյն Վեցհազարեակ կամ Եօթնագրեանք յորջորջանօք անճոռնի գրուած մը, եւ քանի մը ճառեր ու հակաճառական գրուածներ։

Իմաստասիրական եւ ուսումնական գրութեանց յատուկ ոճ մը ի կիր կ'առնու Շիրակացին, եւ ինչպէս ուսմանն՝ նոյնպէս եւ լեզուին գլխաւոր հեղինակ համարուած է արժանապէս։

## ԹԷՈԴՈՐՈՍ ՔՌԹԵՆԱՒՈՐ

Եղբօրորդին էր Կոմիտաս կաթողիկոսի՝ ինչպէս վերագոյն յիշատակեցինք, եւ աշակերտեցաւ մեծանուն Մաթուսաղայի՝ Սիւնեաց վարդապետարանին մէջ։ Հմուտ էր աստուածաբանական ուսմանց, հայ եւ հելլէն լեզուաց, եւ Արագած լերան ստորոտն կառուցած վանքին հայր լինելով, ունեցաւ բազմաթիւ աշակերտներ յորս նշանաւոր եղան Սահակ Ձորափորեցի եւ Յովհան Օձնեցի կաթողիկոսունք։ Իւր երկասիրութիւններն են Ներբողեան ի Ս. Խաչն, Գովեստ ի Ս. Աստուածածինն՝ եւ ճառ մը ինչ ինչ մոլորութեանց դէմ՝ մարդեղութեան խորհուրդն ապացուցանելու առաջադրութեամբ յօրինուած։

Քռթենաւորի լեզուն անիմանալի լինելու չափ խրթին է, բառից թարմատար բարդմունք եւ յունաբանութիւնք իւր գրուածոց՝ յարգն նուազեցուցած են։

## ԳՐԻԳՈՐ ԱՐՇԱՐՈՒՆԻ

Վահան Կամսարականի ժամանակ 684ին Սահակ կաթողիկոսէն Սիւնեաց եպիսկոպոս ձեռնադրուեցաւ ԳՐԻԳՈՐ կամ ԳՐԻԳՈՐԻՍ որ յետոյ նորին Վահանայ խնդրանօք շարագրեց Մեկնութիւն ընթերցուածոցն ուր վայելուչ խորհրդածութեամբ առաջի կը դնէ գլխաւոր տօնից եւ պահոց խորհուրդն, եւ նոյն աւուրց ընթերցուածոց բացատրութիւնն՝ 35 գլխոց մէջ ամփոփուած. հմտաբար եւ զգուշաւոր լեզուաւ կը խօսի թէ ազգային եւ թէ յունական տօնից վրայ։ Արշարունւոյն հայկաբանութիւնն ընտիր է եւ յարմար հետեւողութեան։

## ՍԱՀԱԿ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՁՈՐԱՓՈՐԵՑԻ

Աշակերտ էր Քութենաւորին, եւ 677ին կաթողիկոսական աթոռն բարձրանալով՝ պատկառելի եղաւ իւր խոհական եւ իմաստուն վարուք։ Շարականաց հին գրչագիրք Սահակայ կ'ընծայեն Նաւակատեաց եւ Ս. Խաչի շարականներն՝ որք իբրեւ սրբազան բանաստեղծութիւններ՝ արդարեւ ծնունդ են բարձրաթռիչ մտաց եւ խանդավառ սրտի. իրեն կ'ընծայուի նաեւ Արմաւենեաց կամ Ողոգոմեան (ծաղկազարդի) տօնախմբութեան վրայ ճառ մը՝ ընտիր ոճով եւ շարադրութեամբ, իսկ իւր առ Մոհամատ իշխանն արաբական լեզուաւ գրած աղերսական թղթոյն հարազատ թարգմանութիւնն պահած է մեզ Ղեւոնդ Երէց իւր Պատմութեան մէջ։

---

Սոյն դարու մատենագրաց մէջ յիշատակենք նաեւ զԵԶՆԻԿ ԵՐԷՑ որ Կոմիտաս կաթողիկոսի օրով Հռիփսիմեանց մարմնոց փոխադրութեան ականատես լինելով՝ նոյն դէպքին պատմութիւնն գրած է. զԵԶՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ որում կ'ընծայէ Յովհան Իմաստասէր (Օձնեցի) Հայաստանեայց եկեղեցւոյ ժամագրքին Արեւագալի մասն. զՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԱՅՐԱՎԱՆԵՑԻ, որ Եզր կաթողիկոսի թուլամիտ վարուց դէմ բողոքեց, եւ այդ հակառակութեան հետեւանքն եղաւ թերեւս իւր Խրատ վարուց, Նոյեմակ եւ Հաւատարմատ երեք գրոց յանգիւտ կորուստ մատնուիլն. զԴԱՒԻԹ ԲԱԳՐԵՒԱՆԴԱՑԻ՝ որ Աշոտ Պատրկի յորդորմամբ շարադրած է ճառ մը Քրիստոսի աստուածային եւ

մարդկային բնութեան վերայ. զՄՈՎՍԷՍ ՍԻՒՆԵՑԻ՝ որում կ'ընծայեն ոմանք Խորենացւոյն անուամբ ծանօթ Պիտոյից գիրքն եւ ուրիշ քերականական մեկնութիւններ. զՓԻԼՈՆ ՏԻՐԱԿԱՑԻ կամ ՇԻՐԱԿԱՑԻ որ թարգմանիչ է Սոկրատ Սկոլաստիկոս յոյն եկեղեցական պատմիչին։ Չմոռնանք նաեւ զԴԱՒԹԱԿ քերթողն որ Ջուանշէր Վրաց իշխանին մահն ողբացած է այբուբէնի կարգաւ յօրինեալ քերթուածի մը մէջ՝ որ լի է գեղեցիկ իմաստներով. այդ երգն ամբողջ կ'աւանդէ Մովսէս Կաղանկայտուացին իւր պատմութեան մէջ։

# Դ Ա Ր Ը.

Է. դարու վերջերն տիրապետեցին Արաբացիք Հայոց երկրին, եւ մեր մատենագրութեան մէջ տակաւ առ տակաւ զգալի կը լինէր տիրող լեզուին ազդեցութիւնն։ Իսկ ութերորդ դարուս ճիշդ կիսուն Աբասեանց իշխանութեան ներքեւ՝ յորում ժամանակի առաւել եւս ծաղկեցան առ Արաբացիս դպրութիւնք եւ գիտութիւնք՝ գրեթէ իրենց ծաղկեալ վիճակն պահելով մինչեւ ի մէջ կոյս ԺԳ. դարու, բնական էր որ մեր դպրութիւնն նոր ձեւակերպութեան մը հակամիտելու ծանրակշիռ ճնշումն կրէր։ Արաբական մատենագրութիւնն բանաստեղծական սեռն աւելի մշակելով՝ ճոխ ու ճոռոմ ասացուածոց, թարմատար ձեւերու եւ սեթեւեթեալ բառերու մասնաւոր բերում մ'ունէր. նոյն այդ ազդեցութեան ներքեւ ասիական ճոռոմաբանութիւնն մուտ գտաւ հայկական բացատրութեանց մէջ, եւ ինչ որ կարող էր լեզուն բացատրել պարզ եւ յստակ ձեւի մը տակ, բառից կոյտեր խրթնացուցին զայն, եւ խեղդեցին իմաստ ու հոգին. այնուհետեւ մատենագրին գրիչն յոր ինչ եւ հպէր՝ մեծութիւն զօրութիւն կամ փայլ կը փնտռէր։ Ահա այս իսկ եղաւ մեր արծաթի դարու մատենագրութեան խութը՝ նաեւ Թ. Ժ. եւ ԺԱ. դարերու մէջ. բառերու անօրինակ բարդումներ՝ երկայնաձիգ պարբերութիւններ՝ ուռուցիկ բացատրութիւններ յաճախեցին, ու այս գրական թերութեանց եւ տգեղութեանց մէջէն հազիւ ոմանք յաջողեցան իրենց հանճարին բնատիպ գեղեցկութիւնն ի վեր երեւցուցանել։ Բաց աստի, արաբական այս օտար ազդեցութիւնն զօրաւոր բայց արտաքին պարագայ մը համարելով, չմոռնանք նաեւ ըսել թէ

գրաբարի թերակատար ուսումն (Ը.—ԺԱ. դար) զարդարուն եւ բարձր գրելու տենչանքին հետ միացած՝ նորանշան բանագրօս լեզու մը եւ ճամարտակ խօսուածք մը յառաջ բերելու ներքին եւ ազդեցիկ պատճառն եղաւ (*)։

Այն դարու մէջ երեւցող մատենագիրք են.

## ՅՈՎՀԱՆ ԻՄԱՍՏԱՍԷՐ

Տաշրաց գաւառի Օձին կամ Օձուն գիւղէն էր ՅՈՎՀԱՆ, վասն որոյ եւ Օձնեցի կոչուած։ Մանկութեան հասակէն աշակերտեցաւ Քռթենաւորին՝ ինչպէս ի վեր անդր յիշեցինք։ Երբ կաթողիկոսութեան աթոռն ելաւ՝ իւր հայրապետութեան երկրորդ տարին ժողով մի գումարեց ի Դուին, եւ հոն եկեղեցւոյ բարեկարգութեան մասին գեղեցիկ Ատենախօսութիւն մ'ըրաւ, որ իւր ընտիր գրուածներէն մին է։

Օձնեցւոյն գլխաւոր երկասիրութիւններն կը համարուին 1. Ճառ ընդդէմ Երեւութականաց, յորում կը գլնուի ընդդէմ այն հերձուածողաց՝ որ զՔրիստոսի անօրէնութիւնն առաջօք կամ երեւութական կը վարդապետէին. 2. Ճառ ընդդէմ Պաւղիկեանց՝ որ Մարկիոնի աղանդոյն հետեւողներ էին Է. դարու մէջ Կոստանդին անուամբ մէկու մը առաջնորդութեամբ, եւ իրենց կուսակցութիւնն կը կոչուէր Պաւղիկեանք՝ Պօղոս առաքելոյն հեղինակութիւնն նախամեծար համարելնուն պատճառաւ. 3. Յաղագս կարգաց եկեղեցւոյ՝ յորում գեղեցիկ ոճով ժամակարգութեան մեկնութիւններ կու տայ. նոյն անուամբ կան նաեւ Հասուածք բանից եւ Յաղագս մեծի աւուր միաշաբաթու ճառն։

Օձնեցւոյն կ'ընծայուին նաեւ Աւագ տօնից շարականներն (թերեւս բաց ի Դաւթի եւ Յակոբայ առաքելոյն վրայ գրուածէն). իսկ Հիմնարկէք եկեղեցւոյ վերնագրով իմաստասիրիս ընծայուած երկու ճառերն ալ երկբայական են։

Օձնեցւոյն ոճն ընտիր հայկաբանութենէ չհեռանար, թէպէտ իւր դարուն ազդեցութիւնն կրելով հանդերձ, հելլենաբանական խրթնութենէ ալ զերծ չէ։ Իւր գրուածոց սեղմ եւ կուռ իմաստներն եւ իւր հմտութիւնն կ'արդարացունեն արդարեւ իւր իմաստասէր տիտղոսն՝ զոր ժամանակակիցք տուին։

---

Հ. Արսէն Այտընեան, Քննական Քերակ. էջ 134։

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ՍԻՒՆԵՑԻ

Իւր նախնական կրթութիւնն առած էր Դուին քաղաքի Հայոց կաթողիկոսարանին մէջ. յետոյ Մաքենոցաց մենաստանի առաջնորդ Սողոմոն վարդապետի քով շարունակեց իւր ուսումն, եւ ժամանակ մը Սիւնեաց վարդապետարանին մէջ աշակերտաց Ս. Գիրք մեկնելէ վերջ՝ իւր պաշտօնն Անանիա անուամբ գիտուն անձի մը յանձնեց, Սիւնեաց եպիսկոպոս ձեռնադրել տալով զնա ի Դուին, եւ ինքն հոն ի Կաթողիկոսարանի անդ հին եւ նոր կտակարանաց մեկնութեան պարապեցաւ։

Նոյն ատեններն Սմբատ Բագրատունի անուամբ իշխանի մը կողմանէ՝ հաւատոյ քանի մը խնդրոց բացատրութեան մասին հակառակութեան հանդիպելով Սիւնեցին՝ թողուց զԴուին եւ ի Կ. Պօլիս եկաւ, ուր եւ միայնակեցի մը քով ուսաւ Յոյն եւ Լատին լեզուներն. յետոյ Աթէնք եւ Հռոմ ալ գնաց, թարգմանութեանց պարապելու համար։

Ի Հայրենիս դարձած ատեն բերաւ իւր հետ Կ. Պոլսոյ Գերմանոս պատրիարքին մէկ թուղթն՝ գրուած առ Հայս՝ կրօնական տեսակէտով, զոր ի հայ թարգմանեց Սիւնեցին եւ Դաւիթ կաթողիկոսի հրամանաւ նոյն թղթին պատասխանն ալ գրեց։

Սիւնեցւոյն գլխաւոր երկասիրութիւններն թարգմանութիւնք եղած են, յորս ծանօթ եւ մնացեալքն են, Դիոնեսիոսի Արիսպագացւոյ անուամբ գրուած ընդարձակ գործն. Ս. Կիւրղի պարապմանց գիրքն, Ղեւտական գրոց մեկնութիւն մը եւայլն. իսկ իբրեւ ինքնագիր աշխատասիրութիւն՝ կ'աւանդուի թէ թողած պիտի լինի մեկնական զանազան գործեր, որք սակայն մեր ձեռքն հասած չեն։

Սիւնեցին իբրեւ բանաստեղծ եւս նշանաւոր է իւր շարականներով. Խաչի կարգին մէջ յօրինած Սրբութիւն Սրբոց երգն իմաստալից է յոյժ. Աւագ օրհնութեանց ընտիր շարականներն (բաց ի վառ ձայնէն որ Շնորհալւոյն երգածն է), զորս թէպէտ թարգմանչաց աշակերտներէն Ստեփաննոսի ումեմն կ'ընծայեն ոմանք, բայց ըստ արժանահաւատ վկայութեան Ուռպէլեանի՝ արդիւնք են Սիւնեցւոյն գրչին։ Ստեփաննոս Սիւնեաց մետրապօլտութեան պաշտօնն մի տարի (կամ ըստ ոմանց 8 տարի) միայն վարելով՝ անգութ մահուամբ սրախողխող սպանաւ քնոյն մէջ անզգամ եւ խառնակեաց կնոջ մը ձեռամբ՝ զոր յանդիմանած էր անկարգ վա-

րուցն համար ։ Սիւնեաց Թանահատի կոչուած վանքին մէջ թաղուեցաւ Ստեփաննոս ։

Չմոռնանք նաեւ յիշել Սիւնեցւոյն հետ իւր քոյրն ՍԱՀԱԿԴՈՒԽՏ որ քերթողուհի եւ երաժիշտ լինելով միանգամայն՝ իւր մենարանին դրան առջեւ ձգած վարագուրին ետեւէն կ'եղանակէր եւ կ'ուսուցանէր · իրեն կ'ընծայուին կցորդներ եւ մեղեդիներ, յորոց մին՝ Սրբուհի Մարիամ իւր անուամբ յօրինեալ է ։ Կուսական մատամբ կտրուած բանաստեղծական քնարի մը թելերն հնչեցուց նաեւ ի մէջ կոյս այսր դարու Վահան Գողթնացւոյն քոյրն ԽՈՍՐՈՎԻԴՈՒԽՏ՝ որ երգոց ցանկալի մնացուածն է ողբանուագ շարականն Վահանայ Գողթնացւոյն ։

## ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ

Այս դարու վերջերն ապրած կը թուի ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ՝ որ միակ երկասիրութիւնն է իւր Պատմութիւնն ։ Ղեւոնդայ այդ գործն կ'ըսկըսի Քրիստոսի 661 թուականէն եւ կը հասնի մինչեւ 788 թուականն, յորում ժամանակի տեղի կ'ունենային արշաւանքն Արաբացւոց ։

Թէպէտեւ Ը · դարու Հայերէնի ազնիւ եւ ընտիր ոճն չտեսնուիր Ղեւոնդայ երկասիրութեան մէջ՝ որ պարզ եւ հետեւակ լեզուաւ շարադրուած է, բայց իբրեւ ութերորդ դարու մատենագիր՝ ի պատմութեան Հայերէն դպրութեան մատդրութեան արժանի անձ մ'է ։

---

## ԴԱՐ Թ.

Հարկ չհամարելով կրկնել այն դիտողութիւններն զորս յառաջ բերինք արդէն նախընթաց (Ը·) դարու մատենագրութեան եւ լեզուին կրած ազդեցութեանց մասին, կը փութանք յաւելուլ թէ մատենագրաց սակաւութիւնն եւ հետեւաբար գրաբարի անմշակ եւ անխնամ վիճակն առաւել եւս անկում մը պիտի պատճառէին լեզուին, կամ թէ ըսենք՝ լայնագոյն ասպարէզ մը պիտի բանային աշխարհիկ կամ ռամկօրէն լեզուի ոտնխթութեանց, եւ արդարեւ գրեթէ Թ · դարու սկիզբներն լեզուին մեծ կերպարանափոխութիւն մը կրած լինելն կը տեսնենք ոչ այնչափ մատենագրաց եր-

կասիրութեանց, այլ առաւել արձանագրութեանց մէջ՝ յորս կը հանդիպինք նորանոր բառերու՝ ձեւերու՝ հոլովմանց՝ խոնարհմանց եւ խնդրառութեանց, որք հետզհետէ յընթացս դարուն յաճախակի կիրառութիւն կ՚ունենան։ Այս դարուն մէջ նաեւ կարծես աշխարհաբարն մատենագրական սահման մը կուզէ գրաւել՝ անկախ բոլորովին ի գրաբար լեզուէն, զի ՇԱՊՈՒՀ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ Աշոտ Անթիպատրկի որդին կը ձեռնարկէ գրել ժամանակակից պատմութիւն մը որ ըստ վկայութեան Յովհաննէս կաթողիկոսի գեղջուկ բանիւ յօրինուած էր։ Այդ երկասիրութիւնն մինչեւ ցարդ յերեւան չէ եկած, սակայն յայտնի է թէ այդ ոճով ամբողջ գրուած մը՝ որ ժողովրդեան իմանալի լինելու առաւելութիւնն ունէր՝ անոր խօսած լեզուն ի գիր առնլով, ժողովրդական աշխատասիրութեանց նոր ուղի մը կը հարթէր։ Այդ օրինակ գրուածոց խեթիւ նայեցաւ մատենագրութիւնն՝ որ ռամկանալու յարմարութիւնն չունենալէ զատ, իւր նուիրական իրաւանց բռնաբարում պիտի համարէր խոնարհիլ տգէտ դասու իմացական աստիճանին, եւ այս անհաշտ կռիւն դեռ քանի մը դարեր պիտի տեւէր, մինչեւ մեր օրերն իսկ։ Պէտք է ընդունիլ սակայն թէ գրաբար լեզուն նախնի դարուց մէջ աւելի իմանալի կրնար լինել ռամկին քան յետին ժամանակաց մէջ, եւ ինչ որ թերեւս պատճառ մը կրնար համարուիլ առ ոմանս ի նախնի մատենագրաց՝ ռամկօրէն գրականութեան մը տեղի չտալու մասին, առ յետինս մանաւանդ բացարձակ նախապաշարման մը կերպարանքն առաւ։

Իններորդ դարու մատենագիրք եղան.

## ԶԱՔԱՐԻԱ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Միեւնոյն օրուան մէջ սարկաւագ՝ քահանայ՝ եպիսկոպոս եւ կաթողիկոս ձեռնադրուելով յամին 854, յաջորդեց Յովհաննէս կաթողիկոսի՝ զորմէ քիչ մը վերջ պիտի խօսինք։

Զաքարիա իբրեւ մատենագիր թողած է մեզ թուղթ մի գրեալ առ Փոտ պատրիարքն Կ. պոլսոյ՝ պաշտպանելու համար զՀայաստանեայց Եկեղեցին, ցոյց տալով այն պատճառներն որոց համար կը հակառակէին Հայք Քաղկեդոնի ժողովոյն։

Այս թղթէն զատ ունի նաեւ այլ եւ այլ ճառեր Քրիստոսի ծննդեան, Մկրտութեան, յԵրուսաղէմ գալստեան, Տէրունական ընթրեաց, չարչարանաց, թաղման, խաչի վրայ, ի Ս. Եկեղեցին,

ի ննջումն կուսին եւ այլն ։ Զաքարիայի ոճն վայելուչ է եւ պարզ, յունական եկեղեցւոյ վարդապետաց հետեւողութեամբ կանոնաւորեալ ։

## ՄԱՇՏՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Կոտէից կամ Արագածոտն գաւառին Եղիվարդ գիւղէն էր ՄԱՇՏՈՑ, քահանայի մը որդի ։ տղայութեան հասակէն կրթուեցաւ Մաքենոցաց վանքին մէջ, եւ ապա իւր վարուց եւ գիտութեան համբաւն արժանացուց զինքն կաթողիկոսական պաշտաման ։ Մաշտոցի անուամբ կը յիշատակուին հետեւեալ գրուածներն ։ 1. թուղթ մի դաւանաբանական խնդրոյ վերայ, 2. պատմագրական երկասիրութիւն մը եւ 3. թուղթ մը ի Քաղկեդոն եւ ի Շիրակաւան գումարուած ժողովոց նկատմամբ ։ Բայց այս երկասիրութիւնք անյայտ մնացած են մինչեւ հիմա ։ Իւր միւս գրուածներն՝ զոր Յովհաննէս կաթողիկոս իւր պատմագրութեան մէջ ամբողջ կ'աւանդէ, երկու թուղթեր են, մին առ Աբաս սպարապետն ուղղեալ՝ յորդորելու համար զնա որ զԳէորգ կաթողիկոսութենէ ընկենլոյ եւ զինքն (զՄաշտոց) նմա յաջորդեցնելոյ խորհուրդէն յետս կենայ, եւ միւսն առ Դունեցիս, մխիթարելու համար զանոնք 894 տարւոյն Հոկտ. 13ի գիշերն պատահած երկրաշարժին աղէտից վերաբերմամբ ։ Այդ թուղթերն՝ որոց ոճն գեղեցիկ է եւ սրտագրաւ՝ փափաքելի կ'ընեն Մաշտոցի միւս գրուածոց գիւտը ։

Մեր ազգային մատենագիրք հայկական եկեղեցւոյ Ծիսարանին մէջ ինչ ինչ յաւելուածներ կամ փոփոխութիւններ եղած կ'աւանդեն նաեւ սոյն Մաշտոցի ձեռամբ, բայց անընդունելի է ոմանց կարծիքն թէ սորա անուամբ մեր Ծիսարանն Մաշտոց անուանն կրած լինի ։ [1]

## ՅՈՎՀԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Յովհան կաթողիկոս՝ որ ընդհանրապէս կը կոչուի նաեւ Յովհան պատմաբան, Դուին քաղաքին մօտ Դրասխանակերտ աւանին մէջ ծնաւ ։ աշակերտ էր միանգամայն եւ ազգական Մաշտոց կաթողիկոսի, որում եւ յաջորդեց յաթոռ կաթողիկոսութեան ։

Յովհան կաթողիկոսի երկասիրութիւնն է Պատմագրութիւն մը ։ ժամանակին եւ ազգային պատմչաց սովորութեանն համեմատ ջրհե-

---

(1) Մեր Եկեղեցւոյ Ծիսարանն Ս. Մեսրոպայ Մաշտոց մականուանէն իւր յորջորջումն առած է հաւանաբար ։

դեղջէն կ'սկսի իր գործն եւ կը հասցնէ մինչեւ իւր կաթողիկոսութեան օրերն՝ ժամանակակից անցից վրայ արտառուչ եւ ընդարձակ գրելով։ Եթէ ըստ գովեստից Թովմա Արծրունւոյն՝ Սամուէլի՝ Անողկան եւ Կիրակոս Գանձակեցւոյն կոչեմք զայդ պատմագրութիւն «գեղեցկաբան շարագրութիւն», չկարեմք լռել սակայն թէ Յովհաննու գրիչն ճարտասանական արուեստի շրջանակէ դուրս արուեստակութեան կերպարանք մ'ունի, եւ թէպէտ ուրեք ուրեք գեղեցիկ մասեր կ'ընծայէ, բայց գործն ամբողջ չկրնար հետեւելի օրինակ մը լինել։ Յովհաննու ծննդեան ճիշդ թուականն յայտնի չէ, բայց իւր մահն տեղի ունեցաւ ի խորին ծերութեան յամին 925, եւ թաղուեցաւ Ձորոյ վանքին մէջ։

## ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ

Թովմա Արծրունւոյն Պատմութիւնն դեռ չհրատարակուած՝ ընդհանրապէս կը կարծուէր աշակերտ լինել Եղիշէի պատմագրի, բայց իւր պատմութեան պարունակութենէն տեսնուեցաւ յետոյ թէ Թ. դարու մէջ ծաղկեալ ուրիշ համանուն վարդապետի մը աշակերտ համարելի է Թովմա։

Թովմայի նպատակն եղած է Արծրունեաց ցեղին պատմութիւնն ընել մանրամասնաբար, եւ յաջողած է յայդ ըստ կարելւոյն, առանց իւր առջեւն ունենալու Արծրունեաց տոհմի վրայ գրուած լիակատար պատմութիւն մը. միայն կը յիշատակէ ինքն թէ Մամբրէ վերծանող եւ նորա եղբայրն Մովսէս (Խորենացի?) եւ Թէոդորոս քերթող գրած լինին նոյն ցեղի սկզբնաւորութեան մասին, բայց այդ գրուածներն ալ անբաւական եղած էին իւր առաջադրութեան դոհացում տալու։

Սակայն իւր երկասիրութեան մէջ բաց'ի պատմութենէ տոհմին Արծրունեաց՝ կը կարդանք նաեւ նախամարդոյն սկզբնաւորութենէն առնլով Հայ աշխարհի մէջ պատահած նշանաւոր անցքերն եւ օտար քանի մը թագաւորաց մասին տուած հետաքրքրաշարժ տեղեկութիւններն՝ որ բաւական հետազօտութեանց արդիւնք կ'երեւին. իսկ իւր գործոյն Ե. դպրութիւնն՝ որ ժամանակի ընդհատումներով կը յիշատակէ դէպքեր՝ որ մինչեւ ԺԴ. դար կը հասնին՝ անշուշտ մի ուրիշի գրչի աշխատութեամբն է յօրինուած։

Թովմայի պատմագրական աշխոյժ եւ եռանդուն ոճն ու կարգաւորան հմտութիւնն իրաւամբ կը դասեն զինքն ի կարգ առաջին

պատմագրաց մերոց ։ Գալով լեզուին՝ ընտիր հայկաբանութեան մը հետ մերթ ընդ մերթ խրթնաբանութեանց կը հանդիպինք որ քաջ ի բաց կը հեռանան ի յստակութենէ լեզուին, եւ դարուն քաղաքական ու մատենագրական ազդեցութեան կարկառուն դրոշմն կը կրեն ։

---

Այս դարու մէջ իբրեւ գրագէտ կը յիշատակուին նաեւ ՍԱՀԱԿ ՄՌՌՒՏ ԱԳՒԿՈՒՐԷՇ կոչուած Եպիսկոպոսն Տայոց, որ առ Փոտ պատրիարքն Յունաց գրեց թուղթ մի՝ ցոյց տալու համար յունական Եկեղեցւոյն մոլորութիւնն ․ ՀԱՄԱՄ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՐԵՒԵԼՑԻ որում կ'ընծայուի Առակաց մեկնութիւն մը, քերականական գըրուած մը եւ ուրիշ մեկնողական քանի մը երկասիրութիւններ ․ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԲԺՒՇԿ՝ որ Դիոնեսիոս Արիսպագացւոյն եւ այլ սրբոց վարուց պատմութիւնն թարգմանեց ի հայ ․ ԴԱՒԻԹ ՎԱՆԱՀԱՑԻ ․ Մաշտոց կաթողիկոսի աշակերտն ՍՏԵՓԱՆՆՈՍ՝ որ իւր վարդապետին վարքն գրեց ․ իսկ ծանօթ չէ այն մատենագրին անունն որ ՆԱՆԱ ասորի սարկաւագապետին Յովհաննու Աւետարանի մեկնութիւնն յարդարուն եւ կոկիկ լեզուաւ թարգմանած է ։

---

# ԴԱՐ Ժ․

Տասներորդ դարն մեր մատենագրութեան մթնոլորտին մէջ մասնաւոր երեւոյթ մը կ'ընծայէր ․ ուշադիր նայուածք մը ոչ այլ ինչ պիտի տեսնէ բայց եթէ նախընթաց երկու դարերու (Ը․ եւ Թ․) քայլ առ քայլ հետեւող եւ անոնց մեր մատենագրութեան եւ լեզուին մէջ թողած հետքերն աւելի խոր տպաւորմամբ յերեւան բերող դար մը ։

Այս դարու մէջ ծաղկեցան․

## ԱՆԱՆԻԱ ՆԱՐԵԿԱՑԻ

Սա առաջնորդ լինելով Նարեկայ վանից՝ կոչուեցաւ Նարեկացի ։ Ազգային պատմիչք մեծ գովեստիւք կը խօսին իւր վերայ, փիլիսոփոս, այր անուանի եւ գիտնական, գրոց մեկնող եւ այլն կոչելով զնա ։ Անանիա Նարեկացւոյն իբրեւ երկասիրութիւնք կ'ընծայուին

1. Ընդդէմ աղանդոյն Թոնդրակեցւոց գրուած մը. 2. Մեկնութիւն առաքելական թղթոց, 3. Համեմատութիւն աւետարանաց, եւ 4. Ճառ մը ցոյց տալու համար թէ ուղղափառապէս կրնայ երգուիլ սուրբ Աստուած մաղթանքն՝ խաչեցար իւ. բայց ասոնցմէ բան մը հասած չէ առ մեզ։ Միայն մեր ձեռքն հասած է Շողակաթի կամ Եկեղեցւոյ վերայ յօրինած ճառն՝ որ թէեւ իմաստալից գրուած մ'է՝ այլ լի է անսովոր ոճերով եւ բառերով։

## ԽՈՍՐՈՎ ԱՆՁԵՒԱՑԻ

Հայր Գրիգորի Նարեկացւոյն եւ Եպիսկոպոս Անձեւացեաց գաւառին, որ ի մանկութենէ հետամուտ լինելով ուսմանց, տասներորդ դարու մատենագրաց մէջ մեծ տեղ մի գրաւեց։ Սա Անանիա Նարեկացւոյն եղբօր դստեր հետ արդէն ամուսնացեալ լինելով ունեցած էր երեք որդիներ (Յովհաննէս, Սահակ եւ Գրիգոր) բայց յետոյ հրաժարելով յաշխարհային կենաց, առանձնացաւ վանք մը, եւ քանի մը տարի վերջն ընտրուեցաւ Անձեւացեաց Եպիսկոպոս։

Խոսրովու գլխաւոր երկասիրութիւնն կը համարուի Մեկնութիւն Ժամագրոցն՝ յորում կը տեսնուի ընտիր եւ պարզ ոճ մը եւ եկեղեցական ընդարձակ հմտութիւն. Նոյն ոճով եւ ոգւով գրած է նաեւ Մեկնութիւն խորհրդոյ սրբոյ պատարագին՝ որ կարի համառօտութեանն պատճառաւ՝ Լամբրոնացւոյն (ԺԲ. դար) համանուն երկասիրութեան բաղդատմամբ մեծ արժէք մը չունի։

## ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ

Խոսրովու Անձեւացեաց Եպիսկոպոսին որդի էր Գրիգոր, որ ծնաւ յամին 951 եւ ի մանկութենէ յանձնուեցաւ ի խնամս Անանիայի Նարեկացւոյ։ Շատ կանուխ իւր վերայ փայլեցուց կենաց սրբութիւնն՝ հանճարն ու գիտութիւնն, եւ քիչ ատենէն իւր ժամանակին անուանի եկեղեցականներէն մին եղաւ. այս իսկ պատճառ մ'էր որ չարժէր ապիրատից եւ ագէտներու նախանձը, որք մինչեւ Անի քաղաքը գացին կաթողիկոսին առջեւ ամբաստանութիւններ ընելու Նարեկացւոյն նկատմամբ։

Բայց Սուրբն անխռով շարունակեց իւր ներանձնական կեանքը բազմաթիւ երկասիրութիւններ յօրինելով՝ յորս առաջին տեղին

կը բանէ Աղօթք կամ Նարեկ կոչուած հռչակաւոր գործը, անհամեմատ գերազանց քան զայլ երկասիրութիւնս թէ՛ ազգային եւ թէ օտար հեղինակաց՝ յայս ազգ գրուածոց։

Իւր ճառերու մէջ նշանաւոր են Ապարանից խաչին պատմութիւնը, Առաքելոց գովեստը զոր իւր աղօթագրքէն յառաջ յօրինած է, Խաչի ներբողը, Աստուածածնի ներբողը, Գովեստ ի Ս. Յակոբ Մծբնայ հայրապետ եւ Բանք վասն ուղիղ հաւատոյ գրուածներն։ Իսկ մեկնողական գրոցը մէջ առաջին կը համարուի Երգ երգոցի մեկնութիւնն՝ զոր գրեց Նիւսացւոյն համանուն երկասիրութեանն հետեւելով։

Բաց ի վերոյիշեալ երկասիրութիւններէն՝ Նարեկացին ունի նաեւ մանր գրուածներ, որպիսիք են. Գանձեր, տաղեր, մեղեդիք եւ թուղթ մի առ առաջնորդն Կճաւայ վանից՝ զգուշացնելու համար զնա յաղանդոյն Թոնդրակեցւոց։ Կան նաեւ Նարեկացւոյն անուամբ ուրիշ գրուածներ որք աննհարազատ կը համարուին։

Նարեկացւոյն ոճն որչափ ալ թէ խրթին է եւ բացատրութեան ձեւերն որչափ ալ թէ ասիական ճոռոմաբանութիւն մ'ունին, սակայն եւ այնպէս հայկական լեզուի բնատիպ կորովն ու վայելչախօս առուգութիւնն իւր սրբազան գրոց մէջ ի ճահ եկած լինելով խիտ առ խիտ եւ վսեմ իմաստից, միշտ բարձրագոյն տեղ մի պիտի գրաւեն հայկական դպրութեան մէջ, մանաւանդ իբրեւ հարազատ ծնունդ սանդծական մտաց եւ խանդավառ զեղմունք զգայուն եւ ազնիւ սրտի։

Նարեկացին 60 տարեկան հասակին կնքելով իւր սրբասէր եւ վաստակասէր կեանքն՝ թաղուեցաւ Նարեկայ վանքին մէջ։

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ԱՍՈՂԻԿ

Տարօն գաւառին մէջ ծնած լինելով կը կոչուի նաեւ Տարօնեցի. իսկ իւր Ասողիկ մականունն ցոյց կուտայ նորա ճարտարութիւնն յերաժշտական արուեստի։ Նշանաւոր է ի պատմագիրս Հայոց եւ իւր ընդհանուր Պատմութիւնն՝ զոր շարագրեց Գագիկ Ա. ի հրամանաւ. յարարչագործութենէ սկսելով կը հասցունէ մինչեւ ի 1004 թուականն Քրիստոսի, բաւական հմտութեամբ եւ կարգաբանութեամբ պատմելով իւր ժամանակին դէպքերն, որք ազգային պատմութեան մէջ կարեւոր մաս մը կը կազմեն։ Ասողկայ կ'ընծայուի նաեւ Մեկնութիւն Երեմիա մարգարէի՝ զոր կը յիշատակէ

Մագիստրոս, այլ այդ երկասիրութիւնն մինչեւ ցարդ եկած չէ յերեւան։

Ստեփաննոսի ոճն հետեւակ կը համարուի, թէպէտեւ իւր Պատմութեանն դառնալով՝ չէ զուրկ ի շնորհաց եւ ի հարազատութենէ հայ լեզուին։

## ՈՒԽՏԱՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

Տասներորդ դարուս մէջ ծաղկեցաւ ՈՒԽՏԱՆԷՍ՝ եպիսկոպոս Սեբաստացւոց, որ ի խնդրոյ Անանիայի Նարեկացւոյ գրեց իւր միակ երկասիրութիւնն եղող պատմութիւնն։ Ուխտանէս այդ գրուածոյն մէջ կարեւոր տեղեկութիւններ կ՚ընծայէ Վրաց ազգին ի Հայոց բաժանման անցից նկատմամբ ի Զ. դարու յաւուրս Մովսիսի Բ. եւ Աբրահամու Ա. կաթողիկոսաց, սակայն երկասիրութեանը վերջին թերթերն կորսուած են բոլորովին։ Ուխտանեսի լեզուն աւելի աղքատ է եւ անկանոն՝ բաղդատմամբ Ասողկայ լեզուին։

---

Այս դարու մատենագրաց մէջ յիշատակենք նաեւ զՍԱՄՈՒԷԼ ԿԱՄՐՋԱՁՈՐԵՑԻ, որում կ՚ընծայուի տօնապատճառ անուն գիրքը. զԽԱՉԻԿ ԿԱԹՈՂԻԿՈՍ՝ որ անշուշտ հայկական մատենագրութեան ծառայութիւն մը մատուցանելու նպատակաւ՝ Շիրակ գաւառի մէջ հոյակապ մատենադարան մի կառոյց. զԴԱՒԻԹ վանահայր, որոյ երկասիրութիւնն է «Հարցմունք երկուց փիլիսոփայից» վերնագրով պահոց վրայ գրուած մը. զՊԵՏՐՈՍ՝ որ կը կոչուի Մեկնիչ գրոց. զՍՏԵՓԱՆՆՈՍ՝ Թերեւս Մոկաց Եպիսկոպոսն՝ որում կ՚ընծայուի արքութիւն արքոց շարականը. զՄԵՍՐՈՊ ԵՐԷՑ՝ Վայոց Ձոր գաւառին Հողոցիմք գիւղէն, որ գրեց մեծին Ներսէսի վարքը. եւայլն, եւն։

---

## ԴԱՐ ԺԱ.

Մեր մատենագրաց յայլեւայլ դարս երկասիրած աշխատութիւնք յայտ է թէ՝ ինչպէս մինչեւ ցարդ իսկ տեսանք եւ պիտի տեսնենք դեռ, առաւելապէս կրօնական եւ պատմական էին, զի եկեղեցական ուսումն չունէր եւ չունեցաւ երկար ատեն աւելի

բարձր ոլորտ մը կամ աւելի լայն շրջանակ մը բնական կամ փիլիսոփայական գիտութեանց, թէպէտ եւ իմաստասիրական՝ հռետորական, քերականական կամ բանասիրական եւ նոյն իսկ գիտական գրուածները հանդիպեցանք մերթ ընդ մերթ։ Բայց միշտ իբրեւ գեղեցիկ ծնունդ հայ հանճարոյ բանաստեղծութիւնն մեր դպրութեան գեղեցիկ մասերէն մին կը կազմէ։ Այն եկեղեցական երգերն որ շարական անուամբ ծանօթ են մեզ, մինչեւ ԺԱ. դար լոկ քնարերգական վանկերու չափմամբ կը յօրինուէին, այսինքն առանց յանգի։ Թէեւ անաշխատ դիւրութիւն մը չէր այս, բայց գոնէ քերթողն կրնար ազատութեամբ վարուիլ առանց կաշկանդուած լինելու յանգ գտնելու դժուարութենէն, եւ միայն անդամատութեան օրէնի մը ուշ դնելով ներդաշնակաւորել լեզուն (1)։ Բայց արաբական մատենագրութեան ազդեցութեանց մին եղաւ նաեւ մեր ոտանաւորաց մէջ մուծանել ձայնական յանգերն, որ նախաձեռնակն եղաւ առ մեզ Գրիգոր Մագիստրոս, թէպէտ յառաջ քան զինքն Նարեկացին յԱղօթագիրն ուրեք ուրեք սկզբնաւորող եղած էր այդ նորաձեւութեան։ Ոտանաւորն իւր նախնի կազմութեամբ՝ ինչպէս բացատրեցինք՝ ոչ երբէք հարկ կ'զգար լեզուին օրինաց դէմ մաքառելու, բայց երբ յանգն բռնաւորութիւն մը բերաւ քերթողին, բնական էր որ շատ ինչ զոհէր նա գրաւոր լեզուին էական պայմաններէն եւ ներդաշնակ պարզութենէն, նոր հոլովմանց բառերու եւ դարձուածոց մեզ փնտռելով իւր յաջողութիւնն. եւ այսպէս արդէն աշխարհիկ լեզուի ընդդէմ գրաբարին դար ըստ դարէ գործած հակազդեցութեան վրայ ոյժ մ'ալ աւելցաւ։

Ռամկօրէն կամ աշխարհաբար լեզուն կը թուի այս դարուս մէջ աւելի ընդարձակած լինել իւր իրաւանց սահմանը, զի ինչպէս կը գրէ Հ. Արսէն Այտընեան, «ժամանակն եկած էր որ Հարկին պահանջումն յաղթանակէր ամէն գաղափարաց եւ յօժարութեանց դէմ, եւ դարուս սկիզբներէն փոքր ի շատէ զգալի եղաւ ռամկօրէն լեզուին յարգ տալու եւ նոյն լեզուաւ գրքեր շարադրելու կարօտութիւնն։ Այսպէս կը տեսնենք որ գրաբարն իբրեւ աւելի գործածական լեզու, գիտնոց եւ եկեղեցականաց ուղղուած՝ նուիրեալ է ճառերու, շարականներու եւ ուրիշ քերթուա-

(1) Հ. Արսէն Բագրատունի (1790—1866) այդ ոտանաւորաց չափն յերեւան բերաւ Հայկական չափ անուան տակ, եւ իւր ինքնագիր եւ Թարգմանածոյ քերթուածներն յետ այնորիկ այդ չափաւ յօրինեց։

ծոյ. իսկ աշխարհաբարն ժողովրդեան կը խօսի, եւ ասով կը գրուին առակներ, տաղեր, մշակութեան եւ բժշկութեան գրքերն, եւ մանաւանդ հրապարակական արձանագրութիւններն, անտարակոյս նաեւ նամակներն եւայլն։»

Մետասաներորդ դարու մատենագիրք են.

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿՈԶԵՌՆ

Որ կը կոչուի նաեւ Տարօնեցի։ Իւր ժամանակի վարդապետաց մէջ գովութեամբ կը յիշատակէ զնա Մատթէոս Ուռհայեցի։ Թուի թէ մեծ էր նաեւ իւր համբաւն իբրեւ բնական գիտութեանց հմուտ, զի երբ Հայոց ՆՁԵ թուականին (1031) արեգական խաւարում մի պատահեցաւ, Պետրոս կաթողիկոս եւ Յովհաննէս թագաւորն առ Կոզեռն վարդապետ ղրկեցին զԳրիգոր Մագիստրոս եւ զայլս՝ բացատրութիւն խնդրելու համար. բայց նոքա Հազարամեան աղանդաւորաց գաղափարին համեմատ պատասխան մը ընդունելով վարդապետէն յուսահատ յետս դարձան։

Լամբրոնացին կ՚աւանդէ թէ Կոզեռն վարդապետ «զՃառատոց գիրս գրեաց», բայց այդպիսի գրուած մը երեւան եկած չէ դեռ։ Յովհաննէս վարդապետ շարագրած է նաեւ տումարական արուեստի՝ թուականաց եւ շրջանաց վերայ երկասիրութիւն մը՝ յորմէ հատուած մը միայն գտնուած է։

## ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ

Պահլաւունեաց տոհմէն Վասակ նահապետին որդին էր Գրիգոր Մագիստրոս (Magistrat) որ մագիստրոսութեան եւ դքսութեան պատիւն ընդունեցաւ Կոստանդին եւ Մոնոմախոս կայսերաց կողմանէ, երբ Գագիկ Բ. ի հալածանօք՝ Տարօնոյ գաւառն թողլով եկաւ ի Բիւզանդիոն։ Ազգային պատմութեան անկ է խօսիլ Մագիստրոսի քաղաքական կենաց եւ արժանեաց մասին, մեք զինքն իբրեւ մատենագիր նկատելով՝ կը կանխենք ըսել թէ Մագիստրոս գրեթէ առաջինն է մեր մատենագրաց մէջ՝ որ առանց կրօնաւորական սքեմ ունենալու՝ յառանձնութեան պարապեցաւ ի գրաւոր վաստակս, եւ գոգցես կործանեց այն միջնորմը՝ որ մինչեւ այն ատեն կրօնաւորաց մենավաճառ եղող գիտութիւնն ու գրականութիւնն կը փակէր աշխարհական դասուն առջեւ, բայց դժբաղդաբար

չիրցաւ հետեւողներ ունենալ։ Հայկական եւ յունական դպրու-թեամբ հոխացեալ բաւականապէս հմուտ էր Մագիստրոս ասորի՝ արաբացի՝ պարսիկ լեզուաց, նաեւ աստուածաբանական ուսմանց։

Մագիստրոսի թէ՛ արձակ եւ թէ ոտանաւոր գրուածոց մէջ նշանաւոր են ութսունի չափ թուղթերն՝ որոց մէջ ընդհանրապէս կան գեղեցիկ իմաստներ, անիմանալի խրթնութեանց հետ ան-ճահաբար լծորդուած։ Այդ թուղթերէն ոմանք վարդապետական են եւ ոմանք իմաստասիրական․ շարադրութեան կողմանէ առա-ջինները աւելի պարզ են, իսկ վերջինները լի են անսովոր բառերով եւ բառախաղերով։ Քանի մը թղթեր ալ ունի՝ որոց մեկնութիւնն ու թարգմանութիւնն անլուծանելի առեղծուածոց կարգն կրնայ անցնիլ։

Բաց ի թուղթերէն զորս յիշատակեցինք, Մագիստրոս թողած է նաեւ քերթողական գրուածներ զանազան նիւթոց վրայ՝ յորս աւելի ընդարձակ եւ մտադրութեան արժանի է «Մեծ են գործք Աստուծոյ» սկզբնաւորութեամբ քերթուածը՝ զոր շարադրած է ի խնդրոյ Մանուչէի Հագարացւոյ՝ երեք օրուան մէջ հազար տուն ոտանաւորաւ բովանդակելով հին եւ նոր կտակարանաց պատմու-թիւնը, եւ զոր ընծայեց առ նոյն ինքն Մանուչէ։

Մագիստրոսի քերականական գրուածոց մէջ գլխաւոր եւ միակ երկասիրութիւնն կրնայ համարուիլ հին քերականի մեկնութիւնն զոր իւր համանուն աշխատասիրութեան մէջ շատ անգամներ կը յիշատակէ Երզնկացին (ԺԳ․ դար)։

Ըստ իւր վկայութեան Մագիստրոս թարգմանած է նաեւ Պղատոնի երկու գրքերն Տիմեոս եւ Փեդոն՝ որք հասած են առ մեզ, Եւկլիդէսի Երկրաչափութիւնն՝ յորմէ պատառիկներ միայն մնացած են․ իսկ Ողիմպիոդորոս, Կալլիմաքոս եւ Անդրոնիկէ իմաստասիրաց մատենից թարգմանութիւնքն կորսուած են։

Մագիստրոսի արդիւնաւոր կենաց վախճանն հասաւ յամին 1058։

## ՊԵՏՐՈՍ ԳԵՏԱԴԱՐՁ

Պետրոս Գետադարձ կաթողիկոսն իւր նախնական ուսումն առաւ Տրապիզոնի վանքին մէջ, եւ ըստ վկայութեան ազգային պատմագրաց, սրբազան գիտութեանց եւ արտաքին իմաստու-թեան հմուտ էր։ Սաէպ կը թղթակցէր Մագիստրոսի հետ, եւ կ'աւանդուի թէ այլեւայլ գեղեցիկ ճառեր շարադրած լինի․ բայց

իր երկասիրութիւններէն մեր ձեռքն հասած գրուածներն միայն ութ ձայնի վրայ յօրինուած շարականներ են Մարտիրոսաց եւ Հանգստեան, եւ քանի մը շարականներ՝ որ ընդհանուր անուամբ Մանկունք կը կոչուին, եւ որոց մէջ կը տեսնուի վայելուչ շարադրութիւն եւ բանաստեղծական հանճար։

## ԱՆԱՆԻԱ ՍԱՆԱՀՆԵՑԻ

Միաբան Սանահնի վանուց, որ Պետրոս Գետադարձ Հայրապետին խնդրանօք Պօղոս Առաքելոյն չորեքտասան թղթոց Մեկնութիւնն պատրաստեց. նաեւ ընդդէմ Յունաց գիրք մը այսպիսի մակագրով. «Անանիայի վարդապետի Հայոց բան հակաճառութեան ընդդէմ երկաբնակաց», այս վերջնոյն շարադրութիւնն գեղեցիկ է եւ զարդարուն։ Սանահնեցւոյն կ'ընծայուի նաեւ Համեմատութիւն աւետարանչաց գրուած մը՝ որոյ ձեռագիրն դեռ չէ գտնուած, նոյնպէս եւ Շողակաթի Ներբողեան մը որ հրատարակուած է արդէն։ (*)

## ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ

Նշանաւոր է ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ իր Պատմութեամբն, յորում եղերական գրչաւ կը նկարագրէ իր ժամանակին թշուառութիւններն։ Իր վարուց վրայ կենսագրական տեղեկութիւն մը չունինք, բայց իր պատմագրութեան ոճէն կ'երեւի թէ եկեղեցական էր. վասնզի Ս. Գրոց ընդարձակ հմտութիւն կը ջանայ ցոյց տալ, զոր եւ ոչ ի դէպ կը շռայլէ ամենուրեք, եւ այդու իր գրուածոյն արժէքն նուաղեցուցած է մեծապէս։

Իր պատմութեան գլխաւոր մասն կը կազմէ Անւոյ վաճառումն առ Յոյնս. այդ ցաւագին դէպքն բանաստեղծական գոյներով կը պատմէ, այլ այնքան չափազանց եւ երկայնաձիգ ողբերով կը լնու բազմաթիւ էջեր, զի ոմանք Ողբոց պատմութիւն ուզեցին կոչել իր երկասիրութիւնն։

Լաստիվերտացւոյն Հայերէն ոճն ըստ բաւականի պարզ է եւ

---

(*) Բաց ի Ընդդեմ աղանդոյն Թոնդրակեցւոյ գրուածէն՝ Անանիա Նարեկացւոյն ընծայուած միւս գործերն կ'յիշատակուին նաեւ անուամբ Անանիա Սանահնեցւոյն։ Հաւանական չէ ընդունիլ թէ երկոքին եւս միեւնոյն նիւթոց վերայ գրած լինին, այլ վարդապետաց համանունութիւնն միայն պատճառն եղած է այդ շփոթման։ — Աւելի բանաւոր կ'համարուի վերջնոյս ընծայել զանոնք, դեռ ուրիշ քանի մը ճառօրէն գրուածոց հետ։

յատուկ, եւ ոչ անմասն ի հայկաբանական գեղեցկութենէ։ Իւր անուամբ գտնուած են նաեւ քանի մը ճառեր կամ հատուածք բանից։

## ԳՐԻԳՈՐ ՎԿԱՅԱՍԷՐ

Մագիստրոսի որդին՝ ոյր աշխարհականութեան անունն էր Վահրամ, եւ իբրեւ դուրս իւր հօր իշխանական աթոռն նստելէ յետոյ՝ թողուց զայն եւ միայնակեցական առանձնութիւնն ընտրեց. բայց իւր հանրածանօթ ուսումնասիրութիւնն ու բարեպաշտութիւնն ազդու հրաւէր մ'եղան բարձրացնելու զինքն ի գահ Հայրապետութեան Հայոց, եւ կոչուեցաւ Գրիգոր Բ։ Տարի մը վերջը կաթողիկոսական աթոռոյն տեսչութեան հոգն յանձնելով Գէորգ Լոռեցի վարդապետին, թարգմանութեանց պարապելու համար ինքն եկաւ ի Կ. Պոլիս. ապա գնաց յԵգիպտոս, եւ Սուլդանէն պատիւ գտնելով հոն բնակող Հայոց համար վանք մի շինեց եւ գլխաւոր կարգեց անոնց՝ իւր եղբօր կամ քեռորդին զԳրիգորիս։

Գրիգոր որ թէ անձամբ եւ թէ այլոց ձեռամբ թարգմանութիւններ կամ սկզբնագիր երկասիրութիւններ ընծայեց ազգին, մասնաւորապէս պէտ ըրաւ անձին՝ սրբոց վկայաբանութիւններն թարգմանել եւ կարգադրել, անոնց բազմաց տօները հաստատելով, եւ այդ պատճառաւ կոչեցաւ Վկայասէր։

Վկայասիրին երկասիրութեանց մէջ գլխաւոր կը համարուի Գործոց Առաքելոց մեկնութիւնն՝ որ ընդհանուր անուամբ խմբագիր կը կոչուի յՈսկեբերանէ եւ յԵփրեմէ քաղուած լինելուն համար։ Ինքն թարգմանած է Պրոկլի Ս. Յովհաննու Ոսկեբերանին վրայ շարագրած ճառը, Եփրեմի յօրինած Ոտնալուայի կարգն, նաեւ Յովհաննէս Մկրտչի գլխատման վրայ նոյնին յօրինած ճառը, եւ ուրիշ զանազան գրուածներ։ Վկայասէրն ունի վայելուչ եւ հայկաբան ոճ. հմուտ է թարգմանութեան արուեստին եւ կը համարուի մին ի նշանաւոր մատենագրաց մետասաներորդ դարու։

Եփրատ գետին քով Կարմիր վանաց մէջ կնքած է Վկայասէր իւր բազմաշխատ կեանքը (1106)։

---

Այս դարու երկրորդական մատենագրաց ի կարգ կ'յիշատակենք զՍԱՐԳԻՍ ՍԵՒԱՆԵՑԻ՝ առաջնորդ Սեւանայ կղզւոյն, որ կ'աւանդուի

թէ յօրինած է այլեւայլ ճառեր, մեկնութիւններ եւ այլն. Խնառի վանաց առաջնորդն զՍԱՄՈՒԷԼ ՎԱՐԴԱՊԵՏ. ԿԻՐԱԿՈՍ եւ ՄԱՏԹԷՈՍ վարդապետներն՝ որ Վկայասիրին գործակից էին ի թարգմանութիւնս. զԳԷՈՐԳ ՎԱՐԴԱՊԵՏ, որ Մեղրիկ կ'կոչուէր քաղցրուսոյց վարդապետութեանն համար, զՍԻՍԻԱՆՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՍԵԲԱՍՏԱՑԻ որ ի Սեբաստիա նահատակուող վկայից՝ Քառասուն մանկանց վրայ ընտիր եւ գեղեցիկ ներբողեան մը շարադրած է. զՊՕՂՈՍ ՏԱՐՕՆԵՑԻ՝ որ Թէոպիստէ յոյն կրօնաւորի մը դէմ վիճաբանական գիրք մը գրած է. ունի նաեւ Վերլուծութիւն կարգաց Եկեղեցւոյ, այսինքն՝ պատճառք տօնից, ժամակարգութեանց, ընթերցուածոց, ծիսից եւ այլն, յորմէ կ'առնուն նոյն նիւթոց վրայ գրող յետագայ մեկնիչք:

# ԺԲ. ԴԱՐ

Թէպէտ եւ մեր Արծաթի մատենագրութիւնն Է. դարէն սկսելով կը վերջանայ Երկոտասաներորդ դարուն հետ, բայց իսկապէս այդ անուամբ արժան է ճանչել Երկոտասաներորդ դարն: Նախընթաց դարերու մէջ հայ մատենագրութեան եւ լեզուին նկատմամբ եղած դիտողութիւնք բաւական են մեզ որոշ գաղափար մը տալու իրաց վիճակին վերայ, այսինքն թէ ինչպէս գրաբար մը կրնար աւանդուիլ յետնոց, երբ մէկ կողմանէ իւրաքանչիւր մատենագիր առանց քաջ ուսումնասիրելու զհին լեզուն, իւր ժամանակին եւ իւր գաւառին յատուկ եղած ոճովն կը գրէր, ոչ միայն քերականական այլ եւ մերթ տառադարձութեան եւ մերթ ուղղագրութեան վրիպակներ գործելով, եւ երբ միւս կողմանէ աւելի զգալաբար ի վեր կ'երեւէր աշխարհաբար խորհելու եւ գրաբար մատենագրելու հերձուածը:

Տարակոյս չկայ թէ ԺԲ. դարու մատենագիրներէն զանխուլ չէին մնացած լեզուին անկմանն ու աղաւաղման պատճառներն, եւ երբ ուզեցին նոքա շունչ եւ ոգի տալ այդ գրական նուաղումներուն՝ կորստեան վտանգէն զերծուցանելու համար զգրաբարն, անհրաժեշտ համարեցին մօտ գնալ անոր ջինջ եւ յստակ աղբերակին, որ ջուրերն դարաւոր հոսմանց մէջ ողողելով զանազան վայրեր՝ պղտոր եւ տղմաթաթախ կը հասնէին իրենց, եւ եթէ մատենագրի մը գրչին ներքեւ երբեմն լեզուն իբրեւ իւր ընթաց-

քէն մեկուսի խորաձորի մը մէջ ամփոփուող ուղխի մաս մը՝ իւր նախկին պայծառութեան դառնալով կրնար ցոլացնել մատենագրին հանճարն, սակայն պիտի չունենար անշուշտ աղբերակին կենդանութիւնն ու զով ցայտումները։

Ընդհանուր ապականութեան մը դիմադրելու միակ եւ ապահով միջոցն թերեւս այն էր ինչ որ խորհեցան ընել սոյն դարու մատենագիրք լեզուին ազնուացմանն համար. բայց հաւանակա՞ն էր յաջողիլ յայդ, կամ յետ միանգամ յաջողելոյ հնա՞ր էր հետեւողներ գտնել այդ ճամբուն մէջ որ տաժանաւոր էր արդարեւ.— փորձն՝ որ երկարժամանակեայ չեղաւ՝ զգացուց թէ զրաջան իմն էր մաքառիլ լեզուի հոսանքին դէմ, զի այն եւս բնական օրէնք մը ենթարկուած էր մարդոյս միւս գործողութեանց պէս, եւ թէ ճշմարիտ էր սա նշանաբանն թէ «Ամէն ինչ որ առանց ժողովրդեան կը լինի՝ վաւերական չէ այն»։ Այսպէս դարուս մատենագիրք որ Ե. դարու նախնեաց քայլ առ քայլ հետեւողութեամբ եւ մերթ տող առ տող օրինակութեամբ ընծայեալ մը անհամարձակ եւ խղճամիտ ընթացքն ունեցան գրաբարի խորհրդաւոր սրբավայրն մտնելու ատեն, զարմանք չէ սակայն որ անդիմադրելի տպաւորութեան մը տակ պատգամախօս լեզուի մը խրթութիւնն թողլով՝ ռամկին իմանալի լեզուն գործածեցին գոնէ այնպիսի գրուածոց համար՝ զորս ցոյց տուինք արդէն նախընթաց ԺԱ. դարու նկատմամբ եղած դիտողութեան մէջ։

Երկոտասաներորդ դարու եկեղեցական ուսմանց հետ մատենաւորապէս մշակուեցաւ նաեւ բանաստեղծութիւնն՝ մանաւանդ Շնորհալւոյ քերթուածներով, բայց յանդաւոր քերթելու ծայրայեղ հակումն ոչ նուազ քերականական նորօրինակ ձեւերու եւ այլայլութեանց պատճառ մը դարձաւ, եւ մանաւանդ նոյնայանգ տողերու երկայնաձիգ շարքերն տաղտկալի միակերպութիւն մը տուին քերթողական ոճին։

Սոյն դարու մէջ արաբական ազդեցութիւնն արդէն խիստ դադրած՝ արեւմտեան կամ եւրոպական ազդեցութիւն մը սկսաւ տիրանալ առ մեզ. այդ քաղաքական յարաբերութեանց արդիւնքն եղաւ մեր լեզուին մէջ լատին պաշտօնական բառերու եւ այլն մուտ գտնելն, եւ Դիւանական գրութեանց կամ թղթոց գոյութիւնն, որ մեր մատենագրութեան կարեւոր մի մասն կազմեցին։

Արծաթի դարուն մատենագրաց մէջ ժամանակաւ եւ թերեւս արժանեօք եւս իբրեւ առաջին կը ներկայանայ մեզ

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏ

Արցախու Փառիսոս գաւառէն՝ քահանայի մը որդի, որ Սանահնի եւ Հաղբատայ վանուց մէջ իւր պատանեկութեան օրերն անցուց, մշակելով իւր հանճարն գիշերաջան աշխատութեամբ։ Ցետոյ առաջնորդ կարգուելով Հաղբատայ, բարեկարգեց վանքն ու մանկանց դաստիարակութեան համար մեծ փոյթ եւ խնամք տարաւ։ Ոչ միայն գիտութեամբն՝ որով արժանացաւ Սոփեստես անուան, այլ եւ իւր սրբասէր վարուք պատկառելի եղաւ ամենուն. մինչեւ Դաւիթ Վրաց թագաւորն ինքնին՝ ամէն անգամ որ կ՚տեսնէր զՍարկաւագ, իւր թագաւորդ գլուխն անոր առջեւ խոնարհեցնելով օրհնութիւն կ՚խնդրէր։

Սարկաւագայ գլխաւոր երկասիրութիւններն են ծառ յաղագս քանանայութեան եւ Աղօրագիրք մը՝ որ լի է բարեպաշտիկ եւ վեհ զգացմանց արտայայտութեամբք. իսկ իւր պատմութիւնն՝ զոր կը յիշատակեն մեր պատմագրաց ոմանք եւայլ եւ այլ անձանց վրայ գրած ներբողեանները կորսուած են դժբաղդաբար։ Նաեւ ամբողջ գտնուած չեն հետեւեալ գրուածներն. Վասն մասանց պատուոյ եւ պատկերաց ընդդէմ երկրպագութեան. Վասն շարժման երկրի. Մեկնութիւն Տոմարի եւ յաղագս անկիւնաւոր թուոյ. Բան խրատու առ ուսումնասէրս եւ այլն։ Հայոց եւ Ցունաց միջեւ նիւթ եղած խնդրոց վրայ ալ գրուածներ ունի որք հրատարակուած չեն։

Իբրեւ բանաստեղծ՝ Սարկաւագ նշանաւոր է նաեւ պայծառացիր գեղեցիկ չափականաւն զոր երգած է ի պատիւ Ղեւոնդեանց, եւ ընտիր քերթուածովն զոր յօրինած է Սահակ Թուչնոյն վրայ։ Սարկաւագայ ոճն ընտիր հայկաբանութիւն կրնայ համարուիլ։

Իւր ուսումնական գլխաւոր արդեանց մին եղաւ նաեւ Մովսէս Եղիվարդեցւոյն ձեռամբ կարգադրեալ տոմարի շփոթութիւններն բառնալ ի մասին շարժական տօնից, եւ է սարկաւագադիր կոչուած տոմարն՝ որ չկրցաւ ընդունելութիւն գտնել Ազգին մէջ։

Սարկաւագայ մահն հանդիպեցաւ ի ՇՁԸ թուին (1129) եւ թաղուեցաւ Հաղբատայ վանուց Ս. Աստուածածին եկեղեցւոյն մէջ ուր դեռ կը կարդացուի հետեւեալ արձանագիրն. «ԱՐՁԱՆ ԱՅՍ ՍԵՄԱԿԱՆ Է ՍՈՓԵՍՏՈՍԻ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ»։

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ՄԱՆՈՒԿ

Շուղր անապատի կարմիր վանաց մէջ առանձնացած՝ ութու-

տասնամեայ հասակին մէջ սկսաւ քարոզել զարմանալի կարողու-
թեամբ։ Նախանձեցան ընդ այս հանկարծորդ.ք ոմանք, իսկ Բար-
սեղ կաթողիկոս անձամբ եկած լինելով Ստեփաննոսի քարոզու-
թիւնն լսելու, ի նշան իւր բարձր հաւանութեան տուաւ նմա իւր
մատանին եւ գաւազանն, եւ հետեւեալ օրն (կիւրակէ) եպիսկո-
պոս ձեռնադրելով զնա՝ Կարմիր վանքին առաջնորդ կարգեց։

Ստեփաննոսի միակ ծանօթ երկասիրութիւնն է ատենաբան մը
զոր շարադրած է Գրիգոր վկայասէրի մահուան առթիւ, բայց ոչ
այդ գրուածն եւ ոչ այլ երկասիրութիւնք Ստեփաննոսի չեն հա-
սած առ մեզ։ Իւր աշակերտներն սակայն՝ որք Արծաթի դարուն
գլխաւոր մատենագիրներն եղան ինչպէս, Գրիգոր Պահլաւունի,
Ներսէս Շնորհալի, Սարգիս եւ Իգնատիոս վարդապետք, բարձ-
րաբարբառ վկայ են Ստեփաննոսի արժանեաց եւ համբաւոյն։

## ԳՐԻԳՈՐ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ

Վկայասէրին քեռորդի Ապիրատ իշխանին որդի էր եւ երէց
եղբայր Շնորհալւոյն։ Իւր քսանամեայ հասակին մէջ կաթողի-
կոսական աթոռն նստաւ։

Հայ գրականութեան նպաստելու մեծ ջանիւք՝ ըստ օրինակի
Վկայասէրին իւր ժամանակի անուանի վարդապետաց այլ եւ այլ
երկասիրութիւններ յանձնարարեց։ Սամուէլ Երէց իւր հրամանաւ
շարադրեց իւր Քրոնիկոնը կամ ժամանակագրութիւնն․ Իգնատիոս
վարդապետ՝ Ղուկասու Աւետարանին մեկնութիւնն․ Շնորհալին
իւր այլ եւ այլ գրուածներն, եւ Սարգիս՝ իւր Կաթողիկեայց
թղթոց մեկնութիւնն։

Ինքն Գրիգոր անձամբ եւս պարապեցաւ յերկասիրութիւնս։
Շարականաց մէջ իւրն է Աւետաց շարականն՝ Խորհուրդ անճառ,
Երկրորդ ծաղկազարդի օրհնութիւնն՝ Մեծահրաշ այս խորհուրդ․
եւ Լուսաւորչի վրայ ալ գրած է ընտիր մեղեդի մը՝ Ի յերկս արեւու։

Սրբոց վկայաբանութեանց մասին ալ կարգադրութիւններ
ընելուն համար՝ յոմանց կոչուեցաւ փոքր վկայասէր․ (+ 1167)։

## ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ

Կրտսեր եղբայրն է Գրիգորի Պահլաւունւոյ, եւ ծնաւ յամին
(1102)․ Իւր սրբասէր վարուց համար, կոչուեցաւ Շնորհալի

եւ երեք ամսովք յառաջ քան զմահ եղբօրն՝ նորին իսկ ձեռամբ բարձրացաւ յաթոռ կաթողիկոսութեան ծերացեալ հասակի մէջ։

Հայ մատենագրութեան պատմութեան մէջ անհամեմատ դիրք մ'ստացած է Շնորհալի, հաւասար ճարտարութեամբ շարժելով իւր գրիչն յարձակ եւ ի չափաւ բանս, եւ թողլով բազմաթիւ գործեր՝ իբրեւ աստուածաբան եւ քերթող։

Շնորհալւոյն արձակ գրուածոց մէջ բարձր տեղ մը կը բռնեն այն գեղեցիկ Աստուածաբանութիւնն՝ զոր խօսեցաւ յաթոռ կաթողիկոսութեան բարձրացած օրն, եւ ընդհանրական թուղթն՝ զոր գրեց յետոյ ի սփիւռս աշխարհի ցրուած Հայ ազգին համար. նաեւ Հայոց եւ Յունաց Եկեղեցին միացնելու հանրածանօթ խնդրոյն մէջ առ կայսրն Մանուէլ, եւ առ մեծ իշխանն Ալեքս գրած թուղթերն։ Ոչ նուազ նաեւ կարեւոր գրուածներ են հետեւեալ զանազան թուղթերն. 1. Գիր շրջաբերական ի կողմանս Արեւելից ի Կարս. 2. Բան մխիթարութեան առ վտանգեալսն մարմնով, մխիթարելու համար Եդեսիոյ բնակիչներն որ ուրկութեան դժնդակ ախտով վարակեալ բազում սիրելիներ կորուսած էին. 3. Յաղագս արեւորդեաց դարձի. 4. Առ Պօղոս Փռանկաց հայկազն, որ ազգուրացութեամբ հեռացած էր. 5. Առ Ժպիրհ ոմն. երեք թուղթեր. 6. Առ Ստեփաննոս ոմն. 7. Առ երջանիկ վարդապետ Գէորգ՝ երեք համառօտ թուղթեր եւայլն։

Շնորհալւոյն աստուածաբանական գործերն են. Մեկնութիւն Մատթէի, զոր ինքն հասուցած էր Աւետարանչին մինչեւ այն խօսքը՝ թէ «Մի համարիք եթէ եկի լուծանել զօրէնս» (Մատթ. Ե. 17), եւ յետոյ շարունակեց Երզնկացին. Մեկնութիւն կաթողիկեայց համառօտ ոճով, եւ Հրեշտակաց ներբող մը։

Բազմաթիւ են Շնորհալւոյն ոտանաւոր գրուածներն ալ, յորս նշանաւոր են Ողբ Եդեսիոյ եւ Յիսուս Որդի ընտիր քերթուածներն։ Ասոնցմէ զատ ունի համառօտ քերթուածներ, Բան հաւատոյ, Յաղագս երկնից եւ զարդուց նոցա. Դաւիթ Անյաղթի խաչի ներբողին ոտանաւորը, եւ Վիպասանութիւնն՝ որ համառօտ պատմութիւն մ'է Հայոց։ Փութանք յիշատակել նաեւ այն գեղեցկահիւս եւ քաղցրանուագ երգերն զորս սրտայոյզ կ'եղանակէ Հայաստանեայց Եկեղեցին, եւ որ Շարականցին մէջ ամենէն անգին գոհարներն կը համարուին եւ են. Այսօր անճառ, Աստուած անեղ, Առաւօտ լուսոյ, Աշխարհ ամենայն, Արարչական, Նորաստեղծեալ,

եւ այլ բազմաթիւ շարականներ երգեալ ի տօնս սրբոց, Մեծ պահոց կիւրակէից կանոնքն եւայլն։

Շնորհալւոյն ամէն երկերն միեւնոյն բարձր հանճարի՝ յստակ հայկաբանութեան եւ սահուն ոճոյ կնիքն կը կրեն. միայն իւր արձակ գրուածոց մէջ հրեշտակաց ներբողն յունաբան է եւ խրթին, վասնզի հետեւողութիւն մ'է Դիոնեսիոս Արիսպագացւոյն ընծայուած համանուն երկասիրութեան, եւ չափաբանական գրուածոցը մէջ Վիպասանութիւնն իւր մանկական տիոց երախայրիքն ըլլալով, չունի այն աշխոյժն եւ արուեստն որ կը տեսնուի յայլ քերթուածս հեղինակին։

Շնորհալին ռամկօրէն լեզուաւ յօրինած է նաեւ ոտանաւոր Հանելուկներ, ժողովրդային զուարճութեանց համար։

Սրբոյն երջանիկ փոխումն հանդիպեցաւ 1172 ին յամսեանն օգոստոսի, 70 տարեկան հասակին մէջ. եւ ոչ միայն Հայաստան աշխարհն այլ եւ Յոյնք ողբացին աննման հայրապետին մահը։

## ԻԳՆԱՏԻՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ

Իւր ուսումնական ընթացքն Կարմիր վանքին մէջ առ ոտս Մանուկ Ստեփաննոսի կատարելէ յետոյ, Սեաւ լերան Շափիր անապատն կամ վանքն առանձնացաւ։ Իւր միակ երկասիրութիւնն է Ղուկասու մեկնութիւնն որ իբրեւ աստուածաբանական գործ՝ ընտիր գրուած մ'է, համառօտ՝ հմտալից եւ յստակ։ Լեզուի նկատմամբ եւս պարզ եւ գեղեցիկ շարադրութիւն մ'է։

## ՍԱՐԳԻՍ ՇՆՈՐՀԱԼԻ

Աշակերտակից Իգնատիոսի, որ Սեաւ լերան Քարաշիթաւ վանքն առանձնացաւ, իւր ուսումնական եւ հոգեւոր զբաղմանց զանձն իսպառ նուիրելու։

Իւր գլխաւոր գործն է Կաթողիկեայց մեկնութիւնն, յորում ճարտարօրէն նմանող ցոյց կուտայ զինքն Ոսկեբերանի, ունենալու եռանդուն սիրտ, ողջամիտ վարդապետութիւն, սուր քննադատութիւն եւ պերճախօս լեզու. միայն իբրեւ թերութիւն կը նկատուի իւր երկարաբանութիւնն որ տաղտուկ կը պատճառէ։ Այս պակասութիւնն թերեւս ինքն եւս իմանալով՝ ծերութեան ատեն յամին 1166 համառօտութիւն մ'ալ գրեց նոյն գրոց մեկնութեան

Այս գործէն զատ Սարգսի կ'ընծայուի Եսայեայ մեկնութիւն մը, որ անծանօթ է մեզ, նաեւ գրուածք մը Առաջաւորաց պահոց վերայ։

Սարգսի լեզուն ըստ ինքեան Արծաթի դարուն բոլոր որոշիչ յատկութիւններն կ'կրէ՝ թէպէտեւ Իգնատիոսի լեզուին գեղեցիկ պարզութիւնն չունի։

## ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

Ներսէս Լամբրոնացի ծնած է 1153ին բարեպաշտ եւ ազնուական տոհմէ։ Իւր հայրն էր Օշին Լամբրոնի իշխանն, եւ մայրն Շահանդուխտ, որ եղբօրդուստր էր Ներսէսի Շնորհալւոյ։ Մանուկն Սմբատ— զի այս էր Լամբրոնացւոյ մկրտութեան անունն— փութաց կանուխ առանձնանալ ի վանս Սկեւռայ, որոյ առաջնորդ կարգեցաւ ապա, երբ քսան երեք տարեկան հասակին մէջ ընդունեց զաստիճան եպիսկոպոսութեան յորդորանօք եւ ձեռամբ Շնորհալւոյն։

Թէպէտ իւր գիտութեամբն ու սրբութեամբ հիանալի երեւցած էր բազմաց, բայց ոմանց նախանձն ու ատելութիւնն դրդռեցաւ իւր վերայ, որք եւ բարուրանքներ յօդեցին իւր կրօնական կարծեաց նկատմամբ։

Լամբրոնացւոյն երկասիրութեանց մէջ գլխաւորն կը համարուի Պատարագամատոյց գրոց մեկնութիւնն՝ զոր Տաւրոս լերան առանձնութեան մէջ յօրինեց քսան եւ չորս տարեկան հասակին մէջ. նշանաւոր է նաեւ Ատենաբանութիւնն, զոր խօսեցաւ Հռոմկլայի ժողովոյն մէջ, նիւթ ունենալով քրիստոնէական սէրն եւ Եկեղեցւոյ խաղաղութիւնն։

Լամբրոնացին յօրինած է նաեւ Մեկնութիւններ, Սաղմոսաց, Սողոմոնի երեք գրոց (Առակաց, Ժողովողի եւ Իմաստութեան), Երկոտասան փոքր մարգարէից, որոց ամենքն ալ իւր գրչին արժանաւոր երկասիրութիւնք են։ Իրեն կ'ընծայուին հինգ այլ եւ այլ ճառեր ի Համբարձումն Քրիստոսի, ի Գալուստ Հոգւոյն Սրբոյ ի փոխումն Կուսին, յԱնառակ որդին եւ ի Տնտեսն, որոց առջի երկուքն լաւագոյն են ըստ իմաստից եւ ըստ ոճոյն։ Ունի նաեւ թուղթ մի առ Լեւոն իշխանն գրած, յորում կ'արդարացունէ զանձն ընդդէմ ամբաստանութեանց Տուտէորդւոյն։ Իբրեւ թարգմանութիւն թողած է մեզ Կեսարիոյ Անդրէաս Եպիսկոպոսի Մեկնութիւն յայտնութեան գրուածն։

Լամբրոնացւոյն արձակ գրուածոց վայելուչ եւ ընտիր շարադրութենէն զուրկ են իւր քանի մը շարականներն եւ Ներսէս Շնորհալւոյ վերայ յօրինած ոտանաւոր քերթուածն, որով իւր աստուածաբանական յորդ եւ հմուտ լեզուին հետ չենք կրնար քերթողի մը հանճարն միացած կցորդել։

## ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ

Մատթէոս՝ որ ինքզինքն վաներէց կը կոչէ, ծնած է յՈւռհայ (յԵդեսիա) քաղաքի, վասն որոյ եւ կ'կոչուի Ուռհայեցի։ Իւր կենաց թուականն կ'երկարաձգի մինչեւ ցամն 1144 եւ կը կարծուի թէ իւր ծերութեան մէջ վախճանած լինի։

Իւր հայրենի քաղաքն՝ յորում հաստատուած վանքին առաջնորդութեան պաշտօնն կը վարէր, պատմական հետազօտութեանց համար ընդարձակ ասպարէզ մը կը բանար Ուռհայեցւոյն առջեւ, զի Եդեսիա մեծամեծ յեղափոխութեանց թատր եղած էր, եւ նշանաւոր էր նաեւ գրական շարժման եւ զարգացման իբրեւ կեդրոն համարուած երկիր մը։

Մատթէոսի երկասիրութիւնն է ժամանակագրական պատմութիւն մը՝ որ կ'սկսի յամէ 952 եւ կը հասցունէ մինչեւ 1136։ Ինչպէս ինքն իսկ անկեղծաբար կը խոստովանի, չափաւոր հմտութիւն մ'ունի միայն, եւ իւր պատմագրութեան գլխաւոր աղբիւրն եղած է աւանդութիւնն՝ քաղելով զայն ծերունեաց խօսքերէն։ Այսու ամենայնիւ կան իւր գործոյն մէջ քանի մը գրաւոր յիշատակարաններ՝ որք պատմական կարեւորութիւն ունին։

Ուռհայեցւոյն ոճն որչափ թէ անհմուտ ցոյց կուտայ զինքն նոյն իսկ ազգային դպրութեան, սակայն եւ այնպէս վեհ եւ սրտաշարժ խրողութեանց տեսարաններ հրապուրիչ կ'գործեն իւր գրուածոյն ընթերցումը։

## ԳՐԻԳՈՐ ԵՐԷՑ

Կը կարծուի լինել աշակերտ Ուռհայեցւոյն, եւ շարունակեց նորա ժամանակագրութիւնը մինչեւ ցամն 1162։ Թէպէտ Գրիգոր զինքն Երէց կը կոչէ լոկ, այլ կը թուի թէ իւր հայրենակցաց մէջ բարձր աստիճան մ'ունեցած պիտի լինի, ինչպէս որ ապացոյց մ'է Քեսուն քաղաքի պաշարման ատեն իւր բռնած ընթացքն։ Գրիգորի ժամանակագրութեան նիւթերն ալ պատմական նշխարներ են,

որք զուրկ չեն կարեւորութենէ, եւ իւր գրութեան ոճն ու ոգին չէ ինչ ընդհատ քան զՈւռհայեցւոյն:

## ՍԱՄՈՒԷԼ ԵՐԷՑ

Անւոյ կաթողիկէի աշխարհիկ երիցանց կարգէն լինելով կը կոչուի նաեւ Անեցի: Ինքզինքն աշակերտ կ'դաւանի Գէորգ անուամբ վարդապետի մը, իսկ այլ պատմագիրք կը համարին զինքն աշակերտ Յովհաննու Սարկաւագի: Սամուէլի գըլխաւոր երկասիրութիւնն է Ժամանակագրութիւն կամ գաւազանք անուն գործն, որ կ'սկսի յԱդամայ եւ կը հասնի մինչեւ 1179 թուականն Քրիստոսի: Իւր գրուածոյն առաջնորդ բռնած է Եւսեբեայ Քրոնիկոնն եւ Խորենացւոյն աշխատասիրութիւններն, նաեւ ուրիշ երկասիրութիւններ՝ ըստ կարի ճշգրտութեան հետեւելով: Իւր մահուանէն վերջ այլ եւ այլ անձանց ձեռամբ շարունակուած է սոյն գործն մինչ ԺԸ. դարուն վերջերը:

Սամուէլի ոճն չէ հեռի ի վայելչութենէ Արծաթի դարուն:

## ՄԽԻԹԱՐ ՀԵՐԱՑԻ

Հռչակաւոր բժշկապետ մը՝ որ Հեր քաղաքը ծնած լինելով՝ ընդհանրապէս Հերացի կը կոչուի: Ի մանկութենէ ուսած լինելով արաբական՝ պարսիկ եւ հելլէն լեզուներն, ոչ միայն բժշկական այլ եւ փիլիսոփայական եւ աստղաբաշխական գիտութեանց հմուտ էր կատարելապէս:

Մխիթարայ մեր ձեռքն հասած միակ երկասիրութիւնն է Ջերմանց մխիթարութիւն կոչուած գիրքն՝ յորում կը ճառէ ջերմանց տեսակներուն եւ դարմաններուն վրայ: Այսպիսի երկասիրութիւն մը իբրեւ մեզ ծանօթ առաջին գործ՝ արդարեւ գեղեցիկ եւ յուսալից թուական մը կը բանայ բժշկական գիտութեան առ Հայս, զի մինչեւ այն ժամանակներն՝ ինչպէս կը խոստովանի Մխիթար՝ բժշկական ուրիշ աշխատութիւնք չէին երեւցած առ մեզ, բայց միայն աստի անտի հաւաքուած կամ ծաղկաքաղ եղած համառօտ երկեր, որք յայլ եւ այլ ձեռաց եւ գրչաց այլափոխեալ եւս էին:

Մխիթարայ անուամբ կան նաեւ տարբեր հիւանդութեանց վրայ գրուած կարճ հատուածներ՝ որ բժշկարանաց մէջ կը գըտնուին: Գալով իւր երկասիրութեան՝ ԺԲ. դարու աշխարհիկ կամ

ռամկօրէն լեզուաւն յօրինած է զայն Մխիթար, ժողովրդեան իմանալի ընելու համար, վասնզի գրքին գրաբար յառաջաբանին մէջ կ'ըսէ «Արարի զսա գեղջուկ եւ արձակ բարբառով, զի դիւրահաս լիցի ամենայն ընթերցողաց», (յամին 1184)։

# ԳՐԻԳՈՐ ՏՂԱՅ

Ներսէս Շնորհալւոյն վասիլ եղբօր որդին էր ԳՐԻԳՈՐ ՏՂԱՅ որ իւր հօրեղբօր (Շնորհալւոյն) իմաստուն հսկողութեան ներքեւ հմտացաւ սրբազան եւ արտաքին գիտութեանց. կաթողիկոսարանին մէջ ուսաւ զհելլէն լեզուն կոստանդին անուն յոյն քահանայէ մը, եւ կը թուի թէ հմուտ էր նաեւ Երրայականին։

Շնորհալւոյն յուղարկաւորութեան հանդիսին ներկայ գտնուելու համար ի Հռոմկլայ եկած լինելով՝ հոն գումարուած եպիսկոպոսաց ընդհանուր հաւանութեամբն յաջորդ ընտրեցաւ Ներսէսի Շնորհալւոյ։ Բիւզանդիոյ կիռ Մանուէլ կայսրն այս ընտրութեան լուրն առնլով՝ մխիթարութեան մասնաւոր գիր մը գրեց առ Գրիգոր՝ Շնորհալւոյ մահուան առթիւ, եւ կը յորդորէր որ հօրեղբօրն ջանիւք սկսուած Յոյն եւ Հայ ազգաց միաբանութեան խորհուրդն յառաջ տանի։

Այդ խնդրոյն վերաբերութեամբ գրած է Գրիգոր Տղայ քանի մը թուղթեր, յորս գլխաւորներն են առ կիռ Մանուէլ կայսրն գրուածներն, եւ առ Միխայէլ պատրիարքն Հռոմայ։ Միաբանութեան խնդիրն հակառակորդներ յարոյց ընդդէմ Գրիգորի, եւ ինքն անոնց պատասխանելու համար գրած է նաեւ առ Հաղբատացիս եւ առանձինն առ Գրիգոր Տուտէորդի, եւ առ վարդապետս Ախուանից ուղղեալ ընդարձակ թուղթեր։ Այս բոլոր թղթոց՝ մանաւանդ առ Հաղբատացիս գրուածոյն մէջ կրօնական հմտութիւն՝ ընտիր ոճ եւ պերճ բացատրութիւն երեւէլ կ'ըննեն ծայր ի ծայր։

Իբրեւ բանաստեղծական գործ՝ Գրիգոր թողած է մեզ Ող ի Երուսաղեմի անուն քերթուած մը, Շնորհալւոյն Ողբ Եդեսիոյ քերթուածոյն հետեւողութեամբ, բայց ինչպէս յարձակ գրութեան նոյնպէս եւ ի տաղաչափականին չհասնէ հաւասարիլ Շնորհալւոյն։

Գրիգոր Տղայ իւր ազգային եւ գրական բեղնաւոր կեանքը կնքեց 60 տարեկան հասակին մէջ՝ յամին 1193։

# ՄԽԻԹԱՐ ԳՈՇ

ԺԲ. դարու հայ մատենագրութեան պանծալի անձնաւորութիւններէն մին է նաեւ ՄԽԻԹԱՐ, որ Գոշ կոչուեցաւ մօրուացն ուշ աճելուն պատճառաւ։ Ծնաւ ի Գանձակ քաղաքի՝ ընտիր ծընողաց զաւակ, որք զինքն սրբազան ուսմանց նուիրեցին, եւ ապա երբ չափահաս եղաւ՝ կուսակրօն քահանայ ձեռնադրուեցաւ։ Յետ այնորիկ Ս. Գրոց առաւել եւս հմտանալու համար նախ Տաւուշեցի Յովհան վարդապետին, յետոյ Մխիթար անուամբ վարդապետի մը եւ այլոց բազմաց քով պարապելով յուսումն, վարդապետական անուն եւ պատիւ ստացաւ։ Գոհ չլինելով այնու, գնաց նաեւ դէպ յարեւմուտս Սեաւ լերան վրայ բնակող վարդապետաց քով. անտի դարձաւ ի Կարին եւ ապա ի հայրենիս իւր, ուր իւր մեծ համբաւն աշակերտաց հոծ բազմութիւն մը ժողովեց իւր շուրջը։ Բնակեցաւ Հաղբատայ մօտ Կայենոյ գաւառին մէջ. փառաւոր եւ մեծածախ կանգնել տուած Գետիկ վանքին մէջ, բայց երբ սաստիկ երկրաշարժէ մը կործանեցաւ այն, Տանձուտայ ձոր կոչուած տեղն Իւանէ մեծ իշխանին հրամանաւն եւ օգնութեամբ ուրիշ վանք մը շինել տուաւ դարձեալ Գետիկ անուամբ, ուր եւ հանդիպեցաւ իւր մահն յամին 1213։

Եկեղեցական պատմութեան թողլով Գոշի վարդապետական կենաց վերայ խօսիլ, մեք նկատելով զինքն իբրեւ մատենագիր՝ յառաջ բերենք իւր երկասիրութիւններն յորս նշանաւոր է Դատաստանագիրք անուն գրուածն, ընտիր ոճով յօրինուած եւ օրէնսդրական հմտութեամբ։ Ազգային մատենագրութեան մէջ կարեւոր տեղ մը կը բռնեն նաեւ Մխիթարայ Առակներն, որք հարիւր ինսունի չափ են թուով եւ շատերն կ'կրեն իսկատիպ հանճարոյ մը շնորհն, թէպէտ զուրկ են ընդհանրապէս քերթողական վայելուչ բացատրութիւններէ եւ դարձուածներէ։ Իբրեւ առաջին առակախօսն ի Հայս՝ Մխիթար արժանի է «Հայ Փեդրոս» յորջորջման։

Մխիթար Գոշ ունի նաեւ Մեկնութիւն մը Երեմիայ մարգարէի, զոր թէպէտ ոմանք Ասողկայ ուզեցին ընծայել, բայց ոճն ու լեզուն հաւաստիք մ'են թէ Մխիթարայ երկասիրութիւններէն մին է այն։ Մխիթարայ անուամբ կան նաեւ Դատաստանագրի աղօթքներ, պանազան խրատական թուղթեր եւ այլն։

# ԽԱՉԱՏՈՒՐ ՏԱՐՕՆԵՑԻ

Գուգարաց աշխարհին Հաղարծնի վանաց առաջնորդն էր ԽԱՉԱՏՈՒՐ, որ իւր պաշտօնավարութեան ժամանակ վանքին շինութեանն եւ ուխտին բարեկարգութեան մեծ խնամ տարաւ. Կիրակոս պատմիչ կ'աւանդէ թէ Տարօնեցին բերելով երաժշտական խազն յԱրեւելս՝ այսինքն վերին կամ մեծ Հայաստանի մէջ, յառաջ քան զինքն ապրող իմաստուն երաժշտաց մոռցուած կամ այլափոխեալ երգերն ուղղագրեց եւ ուսոյց բազմաց։

Գանձարանաց եւ Տաղարանաց մէջ այլ եւ այլ երգեր եւ գանձեր կը գտնուին Խաչատրոյ անուամբ, որոց շատին սկզբնատառքն ալ իւր անունն կը յօդեն, թէպէտ անոնցմէ ոմանք կընծայուին Խաչատուր Կեչառուեցւոյն (ԺԴ. դար)։ Այդ երգոց մէջ գեղեցկագոյնն է Խորհուրդ խորին զոր շարադրեց Տարօնեցին, երբ Զաքարէ Սպասալար Ս. պատարագի պաշտաման համար ի բացօթեայ տեղւոջ վայելուչ խորան մի կանգնեց։ Հաղարծնի վանուց մէջ Խաչատուր կնքեց իւր կեանքը, եւ թաղուեցաւ յարեւմտեան կողմն եկեղեցւոյն։

---

ԺԲ. դարու երկրորդական մատենագրաց ի կարգ յիշենք զԵՐԵՄԻԱ ԱՆՁՐԵՒԻԿ, եւ զԱՆԱՆԻԱ, որ աշակերտք էին Սարկաւագ վարդապետին. զՍԱՐԳԻՍ ԿՈՒՆԴ՝ որ ծերութեան հասակին մէջ հետեւողութեամբ այլոց յօրինած է Ղուկասու եւ Յովհաննու աւետարանաց մեկնութիւններ. զԴԱՒԻԹ ԳԱՆՁԱԿԵՑԻ՝ որ գրած է Կանոնական սահմանադրութիւններ, զԳՐԻԳՈՐ ԳԱՆՁԱԿԵՑԻ՝ որ չափազանց ուսումնասէր ոք էր. զԳՐԻԳՈՐ ԻՄԱՍՏԱՍԷՐ՝ միաբան Մարաշու Յեսուանց անապատին, որ հեղինակ է Գիրք վայից եւ մեղային աղօթագրքի մը (1149). զԴԱՒԻԹ ՔՈԲԱՅՐԵՑԻ եւ զԳՐԻԳՈՐ ՏՈՒՏԷՈՐԴԻ, միաբանք Հաղբատայ վանուց, որոց առաջինն գրած է Մեկնութիւն մը Յոբայ եւ Գրիգոր Աստուածաբանի ճառից լուծմունքը, եւ երկրորդն իւր թղթերով հակառակած է Գրիգոր Տղայ կաթողիկոսին. զԴԱՒԻԹ ՎԱՐԴԱՊԵՏ՝ որ հեղինակ է Եսայեայ մեկնութեան մը, յորմէ թերեւս ըրած է իւր փոխառութիւններն Գէորգ Սկեւռացի իւր համանուն երկասիրութեան մէջ. զԱՐԻՍՏԱԿԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ՝ որ ի միջի այլ երկասիրութեանց՝ Մատթէի աւետարանի մեկնութիւն մը շարադրեց. զՍԱՄՈՒԷԼ ՍԿԵՒՌԱՑԻ, զՍՏԵ-

ՓԱՆՆՈՍ ՏԻՐԱՑՈՒ ՎԱՐԴԱՊԵՏ եւայլն։ Տարակուսանօք այս դարու մէջ կը յիշատակենք նաեւ զԳՐԻԳՈՐ ՍԱՐԿԱՒԱԳԱՊԵՏ՝ որ գրած է Ներբողեան մը ի Ս. Գրիգոր Լուսաւորիչ։

---

# ԴԱՐ ԺԳ.

ԺԳ. դարն անկման դար մ՚եղաւ բաղդատմամբ Նախորդ Արծաթի դարուն, եւ յազգային բանասիրաց ընդունեց պղնձի անունն։ Երկրին քաղաքական վիճակն՝ որ մտաւոր յառաջադիմութեան եւ հետեւաբար մատենագրութեան վրայ հզօրապէս կը ներգործէ, լաւագոյն ակնկալեաց երեւոյթ մը չէր ընծայեր։ Բաց աստի նախընթաց դարու մատենագրական ներարկութեամբ (injection)՝ ինչպէս արդէն դիտեցինք, թէպէտեւ գրաբարի հինաւուրց մարմնոյն երակաց մէջ արիւն տեղափոխեցին ճարտար ձեռքեր ու գեղեցիկ ծերունին կանգնեցաւ առոյգ եւ զուարթ, այլ արդէն իւր մահը կը գուժէին ալեւոր մազերն, եւ եթէ դեռ ԺԳ. եւ ԺԴ. դարերու մէջ կենդանութեան իբրեւ նշոյլք երեւեցան իւր այտից վերայ կարմիր ցոլմունքներ, ճգնաժամի տագնապ մ՚էր այն եւ ոչ այլ ինչ։ Լեզուագիտական կենսաբանութեամբ պէտք էր որ գոնէ երկու երեք դարեր կազմէին դրաբարին օրհասական ժամերն, մինչ իւր ծնունդն ո՛ գիտէ թէ քանի՛ դարերու յղացումն եղաւ։

Ռամկօրէն լեզուին գաւառաբարբառներէն մին՝ զոր Կիլիկեան յորջորջմամբ կը ճանչենք՝ Սմբատ պատմչի գրուածոյն մէջ իւր բոլոր գոյներովը առաջին անգամ ի վեր կ՚երեւի յայսմ դարու, եւ Նախորդ դարերու արտադրած ռամկօրէն հեղինակութեանց բաղդատութիւնն՝ մանաւանդ ընդ վերջնոյս՝ ցոյց կուտայ յայտնապէս թէ այլեւայլ գաւառներու մէջ ժողովրդեան յատուկ եւ սեպհական եղող բարբառք (գաւառաբարբառք) որչափ կը զանազանուին յիրերաց ժամանակի երկայն շարքերուն մէջ։

Այսպէս եւ գրաբարն՝ որոյ նուիրականութիւնն եւ անեղծութիւնն յայնմ կը կայանար որ աշխարհէ աշխարհ ի միմեանց անջատուած մատենագրաց գրչին տակ պահէր միշտ իւր նոյնութիւնն ու յատկանիշը՝ չփոթ կերպարան մ՚առաւ յագնադիմի հակազդեցութեանց պատճառաւ, մանաւանդ երբ խառնա-

նեցաւ իւր ուսումն ; ու աշխարհաբար լեզուի խուժանին յարձակեցաւ ամենուստ։ Այնուհետեւ խոնարհեցաւ գրաբարն իւր իշխանութեան բարձունքէն, ինչպէս Հեթում ի սոյն իսկ դարու, եւ առանձնացաւ ի խորշս վանաց խոյս տալով արքունական այն ժամերէն՝ յորս այնքան ազնիւ եւ վեհաշուք երեւցած էր երբեմն ոստանիկ ցեղի մը մեծվայելչութեամբ։

Գլնձի դարուն մատենագիրք եղան.

## ԳՐԻԳՈՐ ՍԿԵՒՌԱՑԻ

Սա միաբան էր Սկեւռայ վանուց՝ եւ Լամբրոնացւոյն հետեւող եղաւ յամենայնի։ Այլեւայլ երկասիրութիւններ շարագրած է Գրիգոր, յորոց ոմանք անծանօթ մնացած են, իսկ իւր յայտնի գրուածն է Ներբողեան մը ի Ս. Ներսէս Լամբրոնացի։

Սկեւռացւոյն անուամբ կը յիշուին նաեւ քանի մը ճառեր, եւ Եւագրի Լուսաւոր պատկերազմ գրոց մեկնութիւնն՝ յորմէ պատառիկներ միայն հասած են առ մեզ։

Գրիգորի բանաստեղծական հանճարն կ'երեւի «Արեգականն արդարութեան» շարականին մէջ՝ զոր երգած է ի պատիւ Յովհաննու Մկրտչի։ Իւր անուամբ ծանօթ են նաեւ քանի մը ջերմեռանդն աղօթքներ։

## ԳԷՈՐԳ ՍԿԵՒՌԱՑԻ

Գրիգոր Սկեւռացւոյն քեռորդի էր եւ միանգամայն եւս միաբան Սկեւռայ վանուց. երբեմն եւս կը կոչուի Լամբրոնացի, Լամբրոն դղեկին մէջ ծնած լինելուն պատճառաւ։

Գէորգայ հարազատ երկասիրութիւնն է Մեկնութիւն Եսայեայ գործն՝ զոր Հեթմոյ առաջարկութեամբ եւ խնդրանօք յօրինեց. ունի յստակ ոճ եւ սահուն լեզու։

## ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

Վանական վարդապետ Տաւուշեցի՝ մին էր ի գլխաւոր աշակերտաց Մխիթար Գոշի։ Իւր հայրենեաց մէջ փառաւոր վանք մի կառոյց եւ հոյակապ եկեղեցի մը Խորանաշատ անուանեալ։ Բազմաթիւ աշակերտներ ունեցաւ զորս կ'ուսուցանէր Վահրամ իշխանի երկրին սահմանաց մօտ գտնուող մեծ այրի մը մէջ։ Բայց երբ

Թաթարք այն կողմերն յարձակելով՝ այրին մէջ ապաստանեալնե-րէն զոմանս գերեցին եւ զոմանս ծախեցին, այդ ծախուածներուն մէջ էր Վանական՝ զոր Քրիստոնեայք յիսուն դահեկանի գնեցին, եւ ինքն ալ այնուհետեւ դարձաւ ի Խորանաշատ, ուր գրի առաւ այն աղեկտուր անցքերն՝ որոց ականատես եղած էր։ Իւր մահն հանդիպեցաւ հոն Զ Թուականին (1254)։

Վանականի գրուածոց մէջ կը յիշատակուի Յոբայ մեկնութիւն մը որ ճապաղ եւ խառնակ ոճ մ'ունի, այս կարգի գրուած մ'է նաեւ Ուռհայեցի պսակ կուսից շարականին տեսութիւնն։ Յօրինած է նաեւ Հոգւոյն Սրբոյ բղխման վրայ ճառ մը, եւ «Խրատ դաւանութեան Վանական վարդապետի» խորագրով գրուած մը Կոստանդին կաթողիկոսի օրով յուզուած կրօնական խնդրոց առթիւ։ Տօնապատճառ կոչուած գրոց մէջ ալ քանի մը մանր երկասիրութիւններ կ'ընծայուին Վանականի, որոց հարազատութիւնն տարակուսելի է. ճառ մը «Հայեաց ի քեզ, գուցէ լինիցի բան ծածուկ ի սրտի քում». խորհրդաւոր համեմատութիւն մը հին եւ նոր կտակարանաց. զանազան նիւթոց վրայ հարցմունք եւ պատասխանիք, եւ տումարական գրուած մը Տարեգլխի վերայ։

Անտարակոյս Վանականի գլուխ գործոցն պիտի լինէր իւր պատմութիւնն՝ զոր շարագրեց Խորանաշատի մէջ Թաթարաց ձեռքէն ազատելէն յետոյ, բայց այդ հետաքննութեան արժանի երկասիրութիւնն դժբաղդաբար կորսուած է։ Վարդան եւ Կիրակոս պատմիչներն կը գովեն Վանականի գրական ուսումնասիրութիւնն, եւ այն փոյթն ու ջանքը՝ զոր ի գործ կը դնէր զի մի գուցէ նախնեաց գործերէն բան մը կորսուի, եւ այդ նպատակաւ Երգեվանից մէջ հաւաքած էր գրոց բազմութիւն մը։

## ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

Վանական վարդապետի աշակերտներէն մին էր ՎԱՐԴԱՆ ՎԱՐ-ԴԱՊԵՏ, որ մեծ պատիւ գտաւ թէ Հեթում թագաւորէն եւ թէ Կոստանդին կաթողիկոսէն։ Այս վերջնոյն թախանձանօք հինգ տարւոյ չափ կաթողիկոսարանի մէջ կարեւոր գործառնութեանց օժանդակեց, ինչպէս նաեւ հոն թարգմանեց Միքայէլ Ասորւոյ պատրիարքի ընդհանուր պատմութիւնն Իշոխ անուն ասորի քահանայի մը ձեռնտուութեամբ։ Երբ Կիլիկիայէն դարձաւ՝ Կայենոյ ձորոյն մէջ Անդրէի վանքն առանձնանալով պարապեցաւ յերկա-

սիրութիւնս․ յետոյ Վիրապին վանքն նստաւ եւ աշակերտներ ուսոյց, նոյն պաշտօնն կատարեց նաեւ Սաղմոսավանից եւ Թեղենեաց վանքին մէջ։

Վարդանայ երկասիրութեանց մէջ նշանաւոր է պատմութիւնն՝ որ կարի համառօտութեամբն եւ ժամանակագրական եւ պատմական թերութեամբքն հանդերձ՝ հետաքննին գրուած մ՚է։

Վարդանայ մեկնողական գրուածներն են․ 1․ Մեկնութիւն Դանիէլի, ամփոփ ոճով․ 2․ Մեկնութիւն Սաղմոսի, ստորին եւ ռամիկ լեզուաւ․ 3․ Մեկնութիւն Հնգամատենին, յորում կան հատուածներ Եղիշէի համանուն երկասիրութենէն՝ որ կորսուած է․ 4․ Մեկնութիւն Երգոց Երգոյն։ Ասոնցմէ զատ իրեն կ՚ընծայուին Ներբող մի ի Ս․ Լուսաւորիչն, եւ քանի մը շարականներ․ «Որ նախնեաց․ Ի յանսահման ծովէն․ Որք զարդարեցին․ նաեւ Անբաւ ծաղիկ շարականին մեկնութիւնն, որ վայելուչ ոճով գրուած է։

Իբր անհարազատ երկասիրութիւնք Վարդանայ կը յիշատակուին, Դաւանութիւն Հաւատոյ, երկու տեսակ՝ մին համառօտ եւ միւսն ընդարձակ․ Բանք յաղագս երկոտասան ականց նմանութեամբ երկոտասան առաքելոց․ Աղուէսագրոց մէջ հարիւր քառասունի չափ Առակներ նմանողութեամբ Մխիթար Գոշի․ Աշխարհագրութիւն մը Հայաստանի՝ զոր թարգմանեց Սէն-Մարդէն արեւելագէտն, եւ մեկնութիւն քերականի աննշան գրուած մը․ սակայն վերջին երեք գործերն կ՚ընծայուին յոմանց ՎԱՐԴԱՆ ԲԱՐՁՐ ԲԵՐԴՑԻՈՑՆ, որ այս դարու մէջ կ՚ապրէր։

Հաղբատու վանաց մէջ կնքեց Վարդան իւր կեանքն եւ հոն թաղուեցաւ յամին 1271։

## ԿԻՐԱԿՈՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ

Վանական վարդապետի աշակերտներէն էր նաեւ Կիրակոս Գանձակեցի՝ որ Գետկայ վանքին մէջ առաւ իւր ուսումը։ Իւր միակ երկասիրութիւնն է պատմութիւնն՝ որ Ս․ Գրիգոր Լուսաւորչի օրերէն սկսելով մինչեւ իւր ժամանակներն կը հասցունէ՝ գլխաւոր նպատակ ունենալով Հայաստանեայց եկեղեցւոյ պանծալի անձանց եւ անցից վրայ խօսիլ եւ դուն ուրեք կը յիշատակէ քաղաքական դէպքեր։ Իւր գործոյն իբրեւ յաւելուած կրնայ նկատուիլ գրքին վերջին մասն՝ ուր Թաթարաց ազգին եւ այլ իրողութեանց վրայ կը խօսի։

Կիրակոսի երկասիրութիւնն հաւատարիմ վկայ մ'է դարուն անկեալ մատենագրութեանն :

## ՅՈՎՀԱՆ ԵՐԶՆԿԱՑԻ

Երզնկացին որ կը կոչուի նաեւ Պլուզ (կապուտ աչուի) ; եւ Ծործորեցի՝ երկար ատեն Ծործորոյ Ս. Աստուածածնի վանքին բնակելուն համար, իւր նախնական ուսումնքն առաւ Սեպուհ լերան քով Ս. Մինասայ կոչուած անապատին մէջ եւ ի շրջակայ վանորայս. աշակերտեցաւ նաեւ Վարդան վարդապետի : Իւր հմտութեամբն ու համբաւովն մեծարանք գտաւ Յակոբ կաթողիկոսէն եւ Լեւոնէն. իսկ ըստ աւանդական պատմութեան՝ Անի քաղաքի ժողովրդեան կողմանէ նախատալից ընդունելութիւն մը գտաւ, երբ իբրեւ Յովնան մը ի Նինուէ՝ հոն գնաց քարոզութեան պաշտամամբ :

Երզնկացին իւր ալեւորեալ հասակին մէջ ուսաւ նաեւ զլատին լեզուն երբ Ունիթորք Հայաստան եկան, եւ կը կարծուի թէ Թովմա Ագուինեցւոյն Աստուածաբանութեան մէկ մասն ալ թարգմանեց : Իւր կենաց վերջին օրերն անցուց Արտազ գաւառի Թադէի վանքն՝ որ երկրաշարժէն վլաւ, բայց վանահայրն Զաքարիա եպիսկոպոս վերստին շինեց զայն, որպէս զի Յովհաննէս չհեռանայ իւր քովէն, եւ հաւանական կ'երեւի թէ հոն կնքած լինի Երզընկացին իւր բազմարդիւն կեանքը 1326ին գրեթէ 76 տարեկան :

Իւր գլխաւոր երկասիրութիւնքն են. Մատթէի մեկնութիւնն որ շարունակութիւնն է Շնորհալւոյն սկզբնաւորած գործոյն, եւ թէպէտ ջանացած է Երզնկացին նման ոճ մը բռնել, բայց ակնյայտնի կ'երեւի երկու հանճարներու տարբերութիւնն. Մեկնութիւն Քերականի, երկու տեսակ, մին համառօտ իբրեւ պարզաբանութիւն Դիոնեսիոսի Թրակացւոյ Քերականութեան, եւ միւսն աւելի ընդարձակ. Բանք յաղագս երկնային շարժմանց աստղաբաշխական գրուածն թէ արձակ եւ թէ ոտանաւոր : Ասոնցմէ զատ ունի նաեւ ճառ մը ի Ս. Լուսաւորիչն՝ որ ընտիր գրուած մ'է «յարազուարճ խնդութեամբ բերկրեալ» սկզբնաւորութեամբ. եւ ճառ մը զոր խօսեցաւ հանդիսի մը մէջ՝ երբ Լեւոնի երկու որդիքն Հեթում եւ Թորոս ուրիշ քանի մը պաշտօնէից որդւոց հետ Ձիաւորի (ասպետական) Ս. Վլասայ կարգն ընդունեցին :

Երզնկացւոյն մանր երկասիրութիւններն կը համարուին, խրա-

տաղան գիրք մը, ներքուած մը՝ իւր անուան տառերովը յօդեալ· Յամենայն ժամ օրհնեմ եւ Այսօր ձայնն հայրական ջրօրհնեաց տաղերն, յորս կ'փայլի Երզնկացւոյն բանաստեղծական հանճարը, եւ տաղ մը «Առաջնաճաշակ պտղոյն» ի փոխումն Կուսին: Շարականաց մէջ ալ իւր անուամբ կը յիշատակուին «ղերինք ամենայն» ի պատիւ Լուսաւորչին երգեալ, նաեւ Նոյն Սրբոյն վերայ այբուբենական շարական մը «այսօր զուարճացեալ»· Որ զլոյսն անճառն ի պատիւ Նշխարաց Ս. Ներսէսի, երբ նորին ոսկերաց գիւտն եղաւ ի Թիլն աւանի· Խոստովանողաց համար երգուածն յաւուրս վերջին ժամանակի եւայլն, որոց սկզբնատառքն կը յօդեն ՅՈՎՀԱՆՆԻՍԻ Է ԵՐԳՍ:

## ՎԱՀՐԱՄ ՎԱՐԴԱՊԵՏ

Հայաստանեայց եկեղեցւոյ պատիւ բերող անձնաւորութիւններէն մին էր Վահրամ որ իւր բարձր հմտութեանն համար Լեւոն Գ.ի ներքին քարտուղար ընտրուեցաւ, եւ նորա հրամանաւ գրեց Հայոց պատմութիւն մը 770 տողի մէջ իբրեւ շարայարութիւն Շնորհալւոյ վիպասանականին, սկսելով ի Ռուբենէ (ԺԱ. դար) եւ հասցունելով մինչեւ ի Լեւոն Գ. (ԺԳ. դար):

Այս երկասիրութենէն զատ Վահրամ ունի նաեւ ընտիր եւ մեկնողական քանի մը ճառեր:

## ՍՄԲԱՏ ՊԱՏՄԻՉ

Ա. Հեթմոյ եղբայրն էր Սմբատ՝ որ իւր պաշտօնի անուամբն Գունդստաբլ կամ Սպարապետ կը կոչուէր: Սմբատայ գլխաւոր գործն է իւր Պատմութիւնն, որ գրեթէ չորս հարիւր տարուան (951—1331) միջոցի դէպքեր կը բովանդակէ ժամանակագրական համառօտութեամբ, թէպէտ վերջին 60 տարիներու պատմութեան համառօտութիւնն ուրիշի մը գործ է, վասն զի Սմբատայ մահն հանդիպած է 1275ին: Այդ գրուածոյն մէջ Սմբատ կը խօսի նաեւ իւր արիական գործոց վերայ, որոց աղետաւոր հետեւանքն եղաւ վերջապէս ձիական սաստիկ արշաւանաց առեն՝ ծառի մը զարնուելով իւր ոտքին վնասուիլն, որով եւ բանակն դառնալէն քանի մը օրեր վերջ մեռաւ գրեթէ 68 տարեկան:

Սմբատայ երկասիրութեան մէջ ոչ կարգաբանութիւն կը տես-

նուի եւ ոչ մատենագրական լեզուի նշմարանք, սակայն իբրեւ պատմական գործ ուշադրութեան արժանի լինելէ զատ, Հայ լեզուի պատմութեան մէջ եւս իւր կարեւոր տեղն ունի։

Սմբատ իւր այս հեղինակութենէն զատ թարգմանած է գրեթէ նոյն լեզուաւ եւ ոճով «Ասիզք Անտիոքայ» անուն գործ մը՝ յորում ամփոփուած են Խաչակրաց ժամանակ Անտիոք քաղաքին մէջ բնակող քրիստոնեայ պարոններու եւ գիճերու փոխադարձ պարտ-քերն եւ իրաւունքներն։

---

Այս դարու մէջ իբրեւ երկրորդական մատենագիրք յիշատակելի են ԿՈՍՏԱՆԴԻՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԲԱՐՁՐԲԵՐԴՑԻ, որ ըստ աւանդելոյ ազգային պատմագրաց գրած է թուղթեր առ զանազան անձինս եւ առ Գրիգոր Թ. եւ Իննովկենտիոս Դ. քահանայապետս Հռոմայ. ՆԵՐՍԷՍ ՏԱՐՈՆԵՑԻ՝ որ աշակերտ էր Երզնկացւոյն, եւ որ իրեն աշակերտ ունեցաւ ի միջի այլոց զՅՈՎՀԱՆ ԱՐՃԻՇԵՑԻ մականուանեալն ոսպնակեր. այս վերջինն աշխատասիրած է պատարագի համառօտ մեկնութիւն մը. ՄԽԻԹԱՐ ՍԿԵՒՌԱՑԻ՝ որ գրած է Պետրոսի առաքելոյն եւ անոր յաջորդաց իշխանութեան մասին. ՎԱՐԴԱՆ կամ ՎԱՐԽԱՄ վարդապետ որ Սեւ լերան վերայ կը բնակէր, եւ քանի մը կրօնական դրուածներով յուզումներ հանեց. իսկ իբրեւ Յայսմաւուրք գրող հաւաքող՝ այս դարու մէջ կը յիշատակուին ԿԻՐԱԿՈՍ ԱՐԵՒԵԼՑԻ վարդապետն եւ ՏԷՐ ԻՍՐԱՅԷԼ։ Այս դարու մէջ յիշատակենք նաեւ ԲԵՆԻԿ անուամբ կրօնաւորն՝ որ Աղօթագիրք մը յօրինած է ստորին ոճով, այլ խրթին բառերով եւ բարդութեամբք։

---

# ԴԱՐ ԺԴ.

Երկոտասաներորդ դարու մէջ հաստատուած Արեւմտեան քաղաքական յարաբերութիւնք մշակուեցան մինչեւ ի սկիզբն չորեքտասաներորդին, եւ որովհետեւ այդ յարաբերութեանց թագուն խորհուրդք կրօնական նկատումներ էին միայն, Հռոմայ քահանայապետն Յովհաննէս ԻԲ 1316ին յարեւելս ղրկեց զԲարթողիմէոս լատին վարդապետն Պոլոնիացի՝ արեւելեան ազգաց քաղաքական եւ կրօնական վիճակն քննելու պատրուակաւ, որ յետոյ 1333ին Մեծ Հայոց դաւառին արքեպիսկոպոս ձեռնադրուեցաւ։ Բարթողիմէոս Դոմինիկեան կրօնաւորաց կարգէն էր, եւ քիչ ժամանակի մէջ յաջո-

*ընցաւ ոչ միայն հասկնալ հայ լեզուն, այլ եւ խօսիլ եւ քարոզել նոյն լեզուաւ։ Մեր երկրին քաղաքական եւ ուսումնական վիճակն տարակոյս չկայ թէ խիստ տխուր կերպարան մ'ունէր այնատեն, ուստի մէկ կողմանէ ուսման եւ գիտութեան ծարաւն եւ միւս կողմանէ մեր լատինամիտ թագաւորաց ոմանց ընթացքն պատճառ եւ խրախոյս եղան բազմաց՝ յարիլ Բարթողիմեայ եւ անոր աշակերտիլ հետեւելով ըստ ամենայնի։ Քռնի աւանին մէջ՝ ուր Յովհաննէս Քռնեցւոյն թախանձանօք իւր բնակութիւնն հաստատեց Բարթողիմէոս, բազմաթիւ աշակերտներ եկան հասան յայլ եւ այլ տեղեաց եւ գաւառաց՝ աստուածաբանական ուսմանց պարապելու նպատակաւ։ Իսկ յաշակերտութեան իւրեանց տակաւ առ տակաւ տեղի տալով օտար համոզմանց յիրս հաւատոյ, սկսան արհամարհոտ աչօք դիտել հայկական եկեղեցւոյ անցեալն ու աւանդութիւններն՝ ամեն ինչ լատինացնելով. եւ անոնք որ Ունիթոր կամ Միաբանասէր անունն կը կրէին՝ Հայաստան աշխարհի տեսարանին վերայ խառնակութեանց եւ շփոթութեան դեր մը ներկայացուցին կրօնական դիմակի ներքեւ։*

*Միաբանասիրաց կրօնական միութիւններն յայտ է թէ այդ արդիւնքն միայն կրնային ունենալ. բայց իրենց ուսումնական ջանքերն հակառակ շարժում մը յառաջ բերին, այն է թէ Եկեղեցւոյն սկզբանց պաշտպան հայ վարդապետաց ոմանք սրեցին իրենց լեզուն ու գրիչն Ունիթորաց ապականիչ հեղեղին դէմ մաքառելու համար, եւ այսպէս թէպէտ մատենագրական մղում մը յերեւան եկաւ, բայց լեզուին մէջ մուտ գտան Միաբանասիրաց կողմանէ յօրինուած կամ թարգմանուած մատեաններով լատինական ձեւեր եւ բացատրութիւններ, եւ որք ապա առաւել եւս համարձակութեամբ խուժեցին ԺԷ. դարու։*

*ԺԴ. դարու մատենագրաց մէջ առաջին կներկայանայ մեզ*

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ՈՒՌՊԷԼԵԱՆ կամ ՕՐԲԷԼԵԱՆ

*Սիւնեաց աշխարհի Տարսայիճ իշխանին որդին էր Ստեփաննոս որ դեռ երիտասարդ հասակին մէջ վարդապետական պաշտօնն առնլով՝ քիչ ժամանակ վերջ Սիւնեաց գաւառին մետրապօլիտ կամ կամ արքեպիսկոպոս կարգուեցաւ Կոստանդին կաթողիկոսի ձեռամբ* (1323)։

*Երբ դարձաւ յաշխարհն Սիւնեաց, Տաթեւու վանքին առաջ-*

նորդներէն վիշտեր կրեց, բայց անոնց մահուանէն վերջ Տաթեւու եւ Նորավանից միաբանութիւններն ձուլելով կառավարեց զայնս ըստ արժանւոյն։ Կարեւոր շինութեանց եւս պարապեցաւ, ի միջի այլոց՝ ի հիմանց նորոգել տալով Տաթեւու Ս. Լուսաւորչի վանքը։

Ստեփաննոս իբրեւ երկասիրութիւն թողած է մեզ Սիւնեաց ցեղին պատմութիւնն որ ընդհանրապէս կ'կոչուի Պատմութիւն վասն Սիւնեաց աշխարհին, որ արդարեւ հետաքննական եւ խիստ կարեւոր գործ մ'է թէ պատմական եւ թէ կրօնական տեսակէտով։ Իբրեւ քերթող՝ Օրբէլեան գրած է նաեւ քերթուած մը Ողբ ի դիմաց Վաղարշապատու, յոր սրտայոյզ զգացմամբ կը նկարագրէ Վաղարշապատու նուիրական աթոռոյն անշուք եւ լքեալ վիճակն, որ ծնունդ առած էր ո՛չ այնչափ արտաքին պատերազմաց եւ աւարառութեանց պատճառներէ, որչափ ազգին եւ եկեղեցւոյ առաջնորդաց անտարբերութեան շնորհիւ։

Օրբէլեանի լեզուն հետեւակ է, թէպէտեւ իւր ժամանակին անկեալ Հայերէնն մերթ ընդ մերթ իւր գրչին տակ ճիգեր կը գործէ իւր նախկին բարձրութեան ժամանելու։

## ՀԵԹՈՒՄ ՊԱՏՄԻՉ

Հեթում որ ընդհանրապէս պատմիչ կ'կոչուի, որդի էր Կոռիկոսի բերդին տէր Օշին իշխանին. նախ այդ ամրոցին իշխան, եւ ապա Տէրութեան մարաջախտ կամ սպարապետ կարգեցաւ։ Երբ իւր դիրքն ու պաշտօնը թողլով լատին կրօնաւորաց կարգն ու սքեմն ընդունեց, Կղեմէս Ե. պապին օրով գնաց ի Հռոմ, եւ հոն առաջարկութեամբ պապին արեւելք բնակող ազգաց եւ ժողովրդոց պատմութիւնն յանձն առաւ յօրինել. բայց որովհետեւ Հեթում մատենագրելու չափ կատարեալ հմտութիւն չունէր ոեւէ եւրոպական լեզուի, ուստի ինչ որ ինքն գաղիերէն լեզուաւ կաւանդէր կամ կ'պատմէր, զայն ի գիր առաւ Նիկողայոս Ֆալքոն անուամբ կրօնակից անձ մը։ Այդ տեղեկութեանց հաւաքածոյն կոչուեցաւ Պատմութիւն արեւելից՝ կամ որ նոյնն է պատմութիւն Թաթարաց, զոր 1307 ին լատիներէնի թարգմանեց նոյն ինքն Ֆալքոն պապին հրամանաւ։(1)

---

(1) Հեթմոյ այս գործն լատիներէնէ ի հայ թարգմանուած է ի ձեռն Հ. Մկր. Վ. Աւգերեանի, եւ ի Վենետիկ հրատարակուած՝ հանդերձ ժամանակագրութեամբ նորին Հեթմոյ:

վերոյիշեալ երկասիրութեան չափ հետաքրքրական է նաեւ Հեթմոյ համառօտ ժամանակագրութիւնն որ երեք հարիւր ամաց (1076—1307) կարճ ի կարճոյ տեղեկութիւններ կ'ամփոփէ հայ փռանկ եւ սարրի պատմութիւններէ քաղելով։

Հեթմոյ լեզուն ռամկական է այս վերջի երկասիրութեան նայելով։

## ՄԱՂԱՔԻԱ ԱԲԵՂԱՅ

Չորեքտասաներորդ դարու պատմիչ մ'է ՄԱՂԱՔԻԱ, եւ է մին յաչակերտաց հռչակաւոր Վանական վարդապետի։ Իւր երկասիրութեան խորագիրն է Պատմութիւն վասն ազգին նետողաց, 44 տարիներու պատմութիւն մը, որ կը բովանդակէ ճշգրիտ եւ սոսկ նկարագրաւ Թաթարաց արշաւանքներն, եւ ի միջի այլ աղեկտուր անցից՝ Սիս քաղաքի արեւացաւեր կործանումն, Լեւոնի ի գերութենէ ազատիլն ու հօրը յաջորդելն եւայլն եւայլն։

## ՄԽԻԹԱՐ ԱՅՐԻՎԱՆԵՑԻ

Մխիթար Այրիվանեցւոյն նշանաւոր գործն է ժամանակագրութիւն մը, որ աշխարհի ստեղծմանէն սկսեալ կը հասնի մինչեւ ՉՀԷ թուականն Հայոց (1328)։ Այս գրուածոյն գլխաւոր արդիւնքն այն է որ Մխիթար ժամանակակցական տախտակներու վերայ ուզած է առնուլ թէ ազգային եւ թէ օտար իշխանաց՝ գեղապետաց եւ հայրապետներու իշխանութիւնն ու յաջորդութիւնն։ կարեւոր տեղեկութիւններն՝ որ ամփոփուած են այդ երկասիրութեան մէջ՝ փափաքելի ըրած են անոր թարգմանութիւնն եւ հետաքննութեան առիթ եղած է այն՝ Եւրոպացի բանասիրաց, յորս նշանաւոր է հայագէտն Պրոսէ՝ որ մեր միջին եւ նոր պատմագրաց վերայ այլ եւ այլ հիմական հետազօտութիւններ ըրած եւ հրատարակած է Փեդրսպուրկի կայսերական ճեմարանին Ցիշատակագրոց մէջ. ընդարձակ տեղեկութիւններ տուած է նաեւ թէ Այրիվանեցւոյն եւ թէ անոր ժամանակագրութեան վերայ։

## ԵՍԱՅԻ ՆՉԵՑԻ

Սասուն գաւառի Նիչ քաղաքէն էր Եսայի, Գայլիձորոյ վանքին առաջնորդ, որ բազմաթիւ աշակերտներ ունեցաւ։ Գրչագիրք

Եսայեայ կ՚ընծայեն քանի մը մանր երկասիրութիւններ, որոց կարգէն են առ Հեթում պատմիչ գրուած թուղթն «Երջանիկ րաբունւոյն Եսայեայ՝ ասացեալ վասն Դաւանութեան հաւատոյ ընդդէմ պարոն Հեթմոյ Կոռիկոսացւոյն՝ պատասխանի թղթոյն», եւ շրջաբերական գիր մը ուղղեալ առ համօրէն Հայս՝ «Եսայեայ ասացեալ դաւանութիւն հաւատոյ ի Հայր եւ յՈրդի եւ ի Հոգին Սուրբ»․ նաեւ քանի մը ճառեր այսպիսի մակագրով․ «Մեծ հռետորին Հայոց Եսայեայ» որ անհարազատ կը թուին։ Պատմութենէ գիտենք թէ թուղթ մ՚ալ առ աշակերտ իւր Յովհաննէս Թռնեցի գրած է Նչեցին, զգուշացնելու համար զնա այն ստասիրութեան եռանդէն՝ որով Թռնեցին սաստիկ յարած էր Պոլոնիացի Բարթողիմէոս Լատին վարդապետին՝ իբր իւր ուսուցչին։ Նչեցւոյն ընծայուած երկասիրութեանց մէջ նշանաւոր կրնայ համարուիլ Եզեկիէլի մեկնութիւնն, զոր յօրինած է ի խնդրոյ Ստեփաննոսի Օրբէլեան, ամփոփ եւ ընտիր ոճով։

## ՅՈՎՀԱՆ ՈՐՈՏՆԵՑԻ

Որոտն գաւառի Վաղանդն գիւղէն էր Յովհան որ Որոտնեցի միանգամայն եւ Կախիկ կ՚կոչուէր։ Իւանէ իշխանին որդին էր, բայց հայրենական իշխանութիւնն ի բաց թողլով՝ առանձնացաւ Տաթեւու վանքն, եւ հոն շատեր եկան աշակերտիլ իրեն քով, որոց նշանաւոր էր յաշակերտս Եսայեայ Նչեցւոյն։ Աւելի մեծ համբաւ ստացաւ երբ Խրիմցի Մաղաքիա վարդապետի յորդորանօք Երնջակ գաւառի Ապրակունեաց վանքն գնաց իւր աշակերտօքն հանդերձ եւ հոն հինգ վեց տարի առաջնորդ մնալով, Միաբանասիրաց ուսմանց եւ յուզմանց դէմ հակառակեցաւ, գրով եւ բանիւ։

Որոտնեցւոյն մեր ձեռքն հասած երկասիրութիւններն են․ Յովհաննու Աւետարանի մեկնութիւն համառօտ ոճով․ համառօտ մեկնութիւն Պաւղոսի չորեքտասան թղթոցն՝ Եւթաղի յառաջաբանութեանց լուծմամբը․ քանի մը քարոզներ․ Փիլոնի՝ Յաղագս նախախնամութեան երկու ճառերուն հաւաքումը․ Պորփիւրի վերլուծութիւնն, Արիստոտէլի Պերիարմենիաս գրոց եւ Ստորոգութեանցն լուծմունք եւ այլն։

## ԳՐԻԳՈՐ ՏԱԹԵՒԱՑԻ

Արճիշեցի էր Տաթեւացւոյն հայրն. բայց ինքն ծնաւ ի Վայոց-Ձոր յամին 1340 եւ Տաթեւացի կոչուեցաւ, վասնզի երկար ատեն միացած էր Սիւնեաց Տաթեւու վանքին մէջ։ Որոտնեցւոյն մահուանէն վերջ անմիջապէս ուսուցիչ եւ վարդապետ կարգեցաւ Տաթեւացին, եւ ո՛չ ոք առաւել քան զինքն յաջողեցաւ ժամանակին լատինականութեան յարձակումներն վանել, հարուստ մտքի մը զինարանէն հանելով իւր պաշտպանութեան զէնքերն։

Տաթեւացւոյն գրուածներն են, Հարցմանց գիրք կամ Հատոր Հարցմանց կոչուածներն, որ կրկին են, մեծ ու փոքր. փոքր կոչուած հարցմանց գիրքն համառօտ գրուած մ'է իբրեւ լուծմունք եւ պատասխանիք առ հարցմունս Գէորգայ Երզնկացւոյն՝ յօրինեալ ի 1389. իսկ մեծին մէջ կը բովանդակին կրօնական եւ վիճաբանական զանազան խնդրոց վերայ յոգնադիմի հարցմանց պատասխաններ։ Տաթեւացին գրած է նաեւ երկու հարիւրի չափ քարոզներ, որ ամփոփուած են Ամառան եւ Ձմեռան կոչուած երկու հատոր Քարոզագրքի մը մէջ։ Իբրեւ իմաստասիրական գործեր թողած է նաեւ նախնեաց այլ եւ այլ մատեաններու լուծումներն, ինչպէս են, 1. Լուծմունք Արտաքնոց կոչուածն. 2. Լուծմունք Արիստակեայ եւ Գէորգեայ, 3. Լուծմունք պարապմանց Կիւրղի Աղեքսանդրացւոյն եւ այլն։

Իւր մանր երկասիրութիւններն կ'համարուին Աստուածաշունչի այլ եւ այլ գրոց մեկնութեան համառօտ քաղուածոյներն։

Տաթեւացին իւր բազմաշխատ կեանքը կնքեց յամին 1411 գրեթէ 71 տարեկան։

---

ԺԴ. դարու երկրորդական մատենագրաց մէջ դասելի են. ՀԵԹՈՒՄ Բ. որ ունի քերթուած մը ազգային վիճակին եւ կրօնական խնդրոյ մը վրայ յօրինած. ՄԽԻԹԱՐ ՍԱՍՆԵՑԻ որ ծաղկանկար գրչագրութեան մէջ նշանաւոր լինելով հանդերձ, կ'աւանդուի թէ գրած լինի տասն եւ հինգ ճառեր, մեկնութիւն մը Յովհաննու Կաթողիկեայց, եւ ընդ նմին Յովհաննու Աւետարանչի Հանգստեան մեկնութիւնն. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ, որ մեկնիչ ընթերցուածոց կոչուեցաւ, եւ որոյ նշանաւոր երկասիրութիւնն կ'համարուի Տօնապատճառ գրոց կարգաւորութիւնն. ՄԵՍՐՈՎԲ ՎԱՐԴԱՊԵՏ,

որ Արտազու Ս. Թադէի մենաստանին մէջ մասնաւոր լսարան մը կամ ուսումնարան բացած էր, ուր բազումք կ'դիմէին յաշակերտութիւն. Նաեւ Տաթեւացւոյն աշակերտներէն յիշենք զԳԷՈՐԳ ԵՐԶՆԿԱՑԻ՝ որուն կ'ընծայուի Յայտնութեան գրոց մեկնութիւն մը, զՅՈՎՀԱՆՆԷՍ ԳՈԼՈՏԵՆՑ կամ ԿՈԼՈՏԻԿ, որ Եսայեայ մեկնութեան քաղուած մը եւ լուծմունք Դիոնեսիոսի կոչուած գրուած մ'ունի. զՄԱՏԹԷՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ, որ գրած է մեկնութիւն մը Վեցօրեայ արարչութեան վերայ. յիսուն այլ եւ այլ քարոզներ, յորոց երեքն միայն մեր ձեռքն հասած են, Աւետարանչաց եւ Գործոց համառօտ մեկնութիւններ եւ այլն, եւ զՏԻՐԱՏՈՒՐ ՎԱՐԴԱՊԵՏ, որ քանի մը համառօտ գրուածներէ զատ, հեղինակ է նաեւ իմաստասիրական կոչուած հանելուկներու։ Ասոնց դարակից են անուանին ԽԱՉԱՏՈՒՐ ԿԵՉԱՌԵՑԻ որ զանազան տաղերէ զատ՝ Աղեքսանդր մակեդոնացւոյն կենաց եւ մահուան վերայ այլ եւ այլ Բարառնութիւններ յօրինած է արձակ բանիւ եւ բաւական ընտիր իմաստներով. ԳՐԻԳՈՐ ԽԼԱԹԵՑԻ կամ ԾԵՐԵՆՑ՝ որ բազմաթիւ գանձեր եւ տաղեր, ու քանի մը ներբողեաններ յօրինած է, եւ աւանդած է նաեւ իւր ժամանակին վկայից նահատակութեանց պատմութիւններն. ԿՈՍՏԱՆԴԻՆ ԵՐԶՆԿԱՑԻ, ՄԻՆԱՍ ԴԵՐՋԱՆՑԻ եւայլն։

Իսկ գալով Միաբանասիրաց մէջ երեւցած մատենագրաց, փութանք յիշել զԲԱՐԹՈՂԻՄԷՈՍ լատին վարդապետն, որ գրաբար լեզուաւ յօրինած երկասիրութիւններ ունի, որք են. Մեկնութիւն Վեցօրէից, Քարոզգիրք եւայլն։ Նոյն ժամանակներն Միաբանասիրաց սիրելի եղած երկասիրութիւնք որ կը կոչուէին Գիրք Առաքինութեանց եւ Մոլութեանց, Գիրք Իրաւանց եւ Դատաստանի, եւ Եօթն մահացու մեղաց վերայ քարոզներն կ'ընծայուին Բարթողիմեայ ազգակից եւ կրօնակից ՊԵՏՐՈՍԻ ԱՐԱԳՈՆԱՑԻՈՅՆ. այդ գրքերէն առաջին երկուքն լատիներէնէ ի հայ թարգմանած է ՅԱԿՈԲՈՍ անուամբ լատինացեալ հայազգի վարդապետ մը, իսկ վերջի երրորդն ՍԱՐԳԻՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՎԱՇԵՆՑ, որ մին էր ի Միաբանասիրաց. զՄԽԻԹԱՐ ԱՊԱՐԱՆԵՑԻ, որ Երնջակայ սահմանակից Ապարան գիւղէն էր, համախոհ եւ պաշտպան Միաբանասիրաց. իւր ծերութեան հասակին մէջ շարադրեց «Գիրք տրամաբանութեան ուղղափառաց» կոչուած գործն. զՅՈՎՀԱՆ ՔՌՆԵՑԻ որ՝ ինչպէս վերագոյն կարդացինք՝ գլուխն եղաւ Միաբանասիրաց. զՆԵՐՍԷՍ ՊԱՂՈՆ կամ ՊԱԼԻԵՆՑ՝ Եպիսկոպոս Ուրմեայ՝ որ Միաբանասիրաց դպրոցին ջերմ կուսակիցներէն էր եւ թարգմանեց Ցրամարթենի լեհացւոյ Հռով-

մեական պատմութիւնն. այդ Թարգմանութեան մէջ կ'տեսնուին լատինահայ բառեր՝ որ ստոյգ նշան մ'է Թէ Թարգմանիչն ջանացած է հայկական լեզուն անգամ լատինացնել իւր գրչին տակ։

Հայ Միաբանասիրաց կարգին մէջ Թէպէտ կը հանդիպինք այլ եւ այլ անձանց՝ որ գրաւորական կենաց զբաղած են. բայց որովհետեւ ո եւ է երկասիրութիւն Թողած չեն, զանց կ'ընենք յիշատակել զանոնք։

# ԴԱՐ ԺԵ.

Մեր միջին մատենագրութեան հրաժեշտի վերջին ու նուաղկոտ նայուածքն կ'արձակէ ԺԵ. դարն, եւ իւր նախորդաց ոչ իսկ տագնապներն զգալով՝ կ'չիջանի անշշուկ, գրեթէ նոյն ժամանակներն տիրապետող ընդհանուր խաւարին մէջ ինքն ալ խառնուելով իբրեւ Թուխ ամպ մը։

Լեզուին պատմութեան մասին այս դարու մէջ հարկ է ուշ դնել գաղթականութեանց, եւ այլ եւ այլ գաւառաբարբառներու՝ որք այսօր տարբեր եւ առանձին յատկութեամբք կը զանազանին։ Կը Թուի Թէ այդ գաւառաբարբառք ո՛չ Թէ միոյ բարբառի աղաւաղումներն են յետ գաղթականութեանց կատարուած, այլ աւելի բնական է խորհիլ Թէ իւրաքանչիւր հաստուած ժողովրդեան Թողլով իւր դաւառն յօտար երկիր տեղափոխուելու համար՝ իւր հետ տարաւ իւր սեպհական լեզուն, որ ըստ պէսպիսութեան գաւառաց օտարացած կրնար լինել մի ուրիշ գաւառական լեզուէ։

Այդ գաւառաբարբառներու դասակարգութիւնն դեռ չ'ըրած՝ փութանք յայտնել Թէ Յոյն քերական Դիոնեսիոսի Թրակացւոյն (1) Քերականութեան մեկնութեան մէջ զոր յօրինած է Երզնկացին՝ Յունական լեզուի գաւառաբարբառներու (Դորացի, Եւողացի, Յոնիացի) բաղդատութիւնն ընելով՝ անոնց սահմանակից եղող (եզերական) կործալեզուներն յիշած ատեն, օրինակ կ'բերէ Հայոց սահմանագլուխ գաւառաց անուններն «որպէս զԿործայն, զՏայեցին, զԽութայեցին, զՋորրորդ Հայեցին, զՍպերացին, զՍիւնիս, զԱրցախայինն» եւայլն ըսելով. այս ամէնն ըստ բազմաց՝ Երզնկաց-

---

(1) Աշակերտ էր Արիստարքոս յոյն բանաստեղծին՝ որ քերականութեան ուսուցի եղաւ ի Հռովմ Պոմպէոսի ժամանակ։

ւոյն ժամանակ արդէն իսկ գոյութիւն ունեցող հայկական գաւառաբարբառներ կ'համարուին, բայց ազգային նշանաւոր բանասէրն Գարագաշեան՝ Եզերական գաւառներու յիշատակութիւնն լոկ սահմանակից օտար կամ կորճայ լեզուաց նկատմամբ եղած կ'ընդունի, թիւրիմացութեան մը արդիւնք համարելով այդքան գաւառաբարբառներու մասին մուտ գտած կարծիքը։ Թողլով որ ժամանակն եւ քննադատութիւնն աւելի օգնեն խնդրոյն լուսաբանութեան, կ'անցնինք մեք ԺԸ. դարէն սկսեալ իբրեւ Նոր աշխարհաբարի կամ արդի հայերէն անուամբ ծանօթ լեզուին գաւառական բաժանմանց, եւ հոս կը դնենք անոնց գլխաւորներն հետեւելով Հ. Արսէն Այտընեանի։

Ա. Միջին գաւառական. Վան, Միջագետք եւայլն

Բ. » » . Կոստանդնուպոլիս.—Փոքր Ասիա

Գ. Արեւմտեան. Լեհաստան—Առտեալ.

Դ. Արեւելեան. Աժտէրխան-Պարսկաստան, որ կը ձգուի Ռուսաստանէն մինչեւ Հնդկաստան։

Լեզուին այս ճիւղերուն համաձայնական կազմութեան մասին ունեցած տարբերութեանց վերայ հարկ չհամարելով խօսիլ, (*) միայն անոնց յատկութիւններն կ'ուզենք ցոյց տալ իրենց բնական կամ ռամիկ վիճակին մէջ։

Ա. Գաւառականի յատկութիւնն է սեպհական ընտիր բառերու եւ ոճերու առատութիւն, որք մեծաւ մասամբ ազգային հնութիւնք են, թէպէտեւ ընդհանրապէս լեզուն իւր առոյգ հնչումն կորուսած է դուեհիկ արտասանութեամբ։

Բ. Գաւառականն կրնայ ամենէն կանոնաւորն համարուիլ, թէպէտ բաղդատմամբ միւսներուն՝ հարուստ չէ բառերու եւ բացատրութեանց կողմանէ։ Մեր օրերուն մէջ առաջնակարգ տեղն գրաւեց այն՝ իբրեւ Կ. Պոլսոյ մատենագրական լեզուն։

Գ. Գաւառականն բացատրութեամբն աղքատ՝ քերականութեամբ թերակատար եւ հնչմամբ աղաւաղ է, եւ այսօր գրեթէ մոռացութեան դատապարտուած է բոլորովին։

Դ. Գաւառականն՝ որ կը կոչուի մասնաւորապէս «Ռուսիոյ Հայերէն» գրեթէ միւսներէն անկախ բնութեամբ օժտուած՝ Կ. Պոլսոյ աշխարհաբարին առաւելութիւնն ունի։

ԺԸ. դարու մէջ կը յիշատակուին հետեւեալ մատենագիրք.

---

(*) Տես զայսմանէ ընդարձակօրէն ի Քննական քերականութեան Հ. Ա. Այտընեանի (էջ 168—222)։

## ԹՈՎՄԱ ՄԵԾՈՓԵՑԻ

Տուրուբերան երկրին Աղիովիտ գաւառին մէջ ծնած է ԹՈՎՄԱ որ Մեծոփայ վանքին առաջնորդն լինելով Մեծոփեցի կոչուեցաւ։ Այդ վանքն նշանաւոր եղած է իւր ժամանակին, մանաւանդ Միաբանասիրաց դպրոցին դէմ Հայոց եկեղեցւոյն պաշտպան հանդիսանալով։

Թովմա ի միջի այլ օգտակար գրուածոց՝ յօրինած է «Պատմութիւն Լանկթիմուրայ եւ յաջորդաց իւրոց» անուամբ երկասիրութիւն մը որ վաթսուն տարիներու (1338—1446) անցից բովանդակութիւն մ'է. Թովմայի սոյն գործն իբրեւ պատմական գրուած մը մեծ կարեւորութիւն ունի, բայց իբրեւ մատենագրութիւն զուրկ է ամէն հանգամանքէ։ Թովմայի մահն հանդիպած է 1446 թուականին։

## ԱՌԱՔԵԼ ՍԻՒՆԵՑԻ

Սիւնեաց եպիսկոպոս որ աշակերտ՝ նաեւ քեռորդի էր Գրիգոր Տաթեւացւոյն։ Ունի քանի մը քերթուածներ, յորս առաջին կը համարուի Ադամ գիրք կոչուած քերթուածն։ Իրեն կ'ընծայուին նաեւ Լուսաւորչի վերայ պատմական երկար քերթուած մը. Մեծին Ներսիսի վերայ շարագրածն, եւ «Գովասանութիւն ի վերայ սաղմոսի» եւ «Յիշատակարան ի վերայ Աստուածաշունչ գրոց» գրուածներն։ Յիշենք նաեւ զԱՌԱՔԵԼ ԲԱՂԻՇԵՑԻ, աշակերտ Ալաթեցւոյ, որ երբեմն Պոռեցի ալ կը կոչուի, Բաղիշու սահմանակից Պոռ աւանը ծնած լինելուն համար. երկասիրած է Պատմութիւն Յովասափու անուամբ քերթուածն, եւ Պօլսոյ առման վերայ ոտանաւոր մը։ Այս վերջին նիւթոյն վերայ անարուեստ շարադրութեամբ քերթուած մը յօրինած է նաեւ ԱԲՐԱՀԱՄ ԱՆԿԻՒՐԱՑԻ։

Այս դարու հեղինակ կը կարծուի նաեւ ՍԻՄԷՈՆ ԳԱՌՆԵՑԻ կամ ԿԱՌՆԵՑԻ որ Պրոկղ իմաստասիրի գրոց լուծմունքն յօրինած է անպէտ եւ շաղփաղփ ոճով։

---

ԺԵ. դարուն մէջ աւելի ծաղկած են երգիչներ, որք համբաւաւոր եղան իրենց յօրինած երգերովն ու տաղերով եւ են. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԹԼԿՈՒՐԱՆՑԻ՝ որ Սսոյ կաթողիկոս ալ եղած է, եւ ի միջի այլոց՝ ընտիր եւ գեղեցիկ երգ մը յօրինած է ի գովեստ

*Լիպարիտ իշխանին․* ՄԿՐՏԻՉ ՆԱՂԱՇ *Ամդայ արքեպիսկոպոսն, որոյ երգերն ծնունդ են հանճարի եւ զգացման․* ՖՐԻԿ *որդի Թագվոչի կոչուած, որ ճարտար տաղաչափ մ'է։ Սոցա ժամանակակից կը թուին լինել* ԱՄԻՐ ՄՈՒՍԷ ՆԱՂԱՇ, ԱՐԹՈՒՆ *(Գրիգոր) եւ* ՅՈՎԱՍԱՓ ՍԵԲԱՍՏԱՑԻ։

*Այս դարուն մէջ իբրեւ գիտունք կը հանդիսանան մեզ* ԱՄԻՐՏՈՎԼԱԹ ԱՄԱՍԻԱՑԻ *որ Անգիտաց անպէտ անուամբ բժշկական երկասիրութիւն մը յօրինած է․ աւելի բառերովն կարեւորութիւն ունի այդ գործն քան լեզուաւն, վասն զի բոլորովին խառնակ շարադրութիւն մ'է, եւ* ՅԱԿՈԲ ՂՐԻՄԵՑԻ՝ *որ տումարական գրուած մ'ունի Թովմա Մեծոփեցւոյն խնդրանօք յօրինեալ։*

---

# ՆՈՐ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԺԶ. – ԺԹ. ԴԱՐ

*Հայկական մատենագրութիւնն այս դարուս մէջ ազգային քաղաքական վիճակին տխուր համապատկերն կը ներկայացունէ։ Իբրեւ մատենագիր ոչ ոք նշանաւոր դիրք մ'ստացաւ կամ մղում մը տուաւ լեզուին ազնուացմանն ու հանճարոյ գործունէութեան։ Եւ մինչ մէկ կողմանէ գրական արտադրութիւնք ողբալի ամլութեան դատապարտուած էին առ մեզ, միւս կողմանէ Եւրոպական աշխարհն դար մ'իսկ յառաջ (1456 ին) Կիւթթենպէրկ Գերմանացւոյն ձեռամբ գտած էր այն հրաշալի գործին՝ որ եւրոպական յեղափոխութեանց նպաստող միջոցներէն եւ քաղաքակիրթ աշխարհաց անհրաժեշտ պէտքերէն մին պիտի լինէր, այսինքն է՝ տպագրական մամուլն։*

*Հայ ազգն որ Արեւմտից հետ յարաբերութիւն հաստատած էր կանուխէն, ասիական ազգաց մէջ առաջինն եղաւ եւրոպական այդ անմահ գիւտին բարեաց հաղորդ լինելու գովելի ջանքն ունենալուն մէջ, եւ այդ իսկ եղաւ թերեւս մեր ԺԶ. դարու մատենագրութեան միակ շարժումը։ Տպագրական գիւտին ի Հայս մուտ գտնելու պատճառ եղած է ԱԲԳԱՐ ԴՊԻՐ Եւդոկիացի, ճարտարարուեստ անձ մը՝ որ Միքայէլ Դ. Կաթողիկոսի հրամանաւ կրօնական խնդրոյ մը համար Հռովմ գտնուելով, հոն տպագրական արուեստին մեծ յառաջդիմութեան ականատես եղաւ, եւ երբ ի Հայրենիս դարձաւ, այլեւայլ միջոցներով յաջողեցաւ վերջապէս իւր տաժանաւոր ճգանց իբրեւ առաջին երախայրիք տպագրել հայերէն Սաղմոսարան մը ի Վենետիկ (1545)։*

*Զարմանալի է սակայն որ տպագրական արուեստի այս մուտքն ո՛ եւ է բարեբաստիկ տպաւորութիւն մը չկրցաւ ընել ազգին գրաւորական վիճակին վրայ, զի ո՛չ միայն այս դարուս զորմէ կը խօսինք, այլեւ ԺԷ. դարու մէջ չկրցաւ յերեւան գալ առ մեզ մատենագրութեան արժէք ունեցող գործ կամ երկասիրութիւն, սակայն անուրանալի է թէ հնութեան եւ ցեցերու որս լինկած ձեռագրերն անկորուստ պահելու բախտն ունեցաւ Հայ ազգը, եւ այդ գեղեցիկ գործոյն արդիւնքն առաւելապէս վայելեցինք ԺԹ.*

դարուս սկիզբէն, յորում ոչ միայն մեր երանաշնորհ Նախնեաց գրեթէ բոլոր գործերն ի Վենետիկ, ի Կ. Պօլիս, յէջմիածին, ի Փեդրսպուրկ եւ այլուր տպագրութեամբ լոյս տեսան, այլեւ մատենագրութիւնն բեղնաւոր արդեամբք ճոխացաւ:

---

Թէեւ անմատենագրութեան դար մը համարեցինք սոյն ԺԶ. դարն, բայց ունինք յիշատակել զոմանս, որք աննշան գործեր թողած են:

Այդ երկոց հեղինակներն են ԹԱԴԷՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՍԵԲԱՍՏԱՑԻ՝ որ յօրինած է քանի մը տաղեր եւ ի գիր առած է իւր ժամանակին Հայաստանի մէջ պատահած անցքերն. ՍՏԵՓԱՆՆՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՍԱԼՄԱՍՏԵՑԻ, որ գրեց համառօտութիւն մը Յովհաննու Աւետարանին. ՂՈՒԿԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԿԵՂԵՑԻ՝ որ խնչ խնչ տումարական բաներու վերայ գրեց ոտանաւոր եւ արձակ բանիւ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԾՈՐԵՑԻ՝ որ պատմական գործ մ'ունի: Ասոնցմէ աւելի կարեւոր տեղ մը կը գրաւէ ՍԻՄԷՈՆ ԱՊԱՐԱՆԵՑԻ՝ որ Մեծոփայ վանքին միաբան էր, եւ որոյ գլխաւոր գործն կը համարուի ոտանաւոր յօրինած «Վիպասանութիւն սակս Պահլաւունեացն զարմի եւ Մամիկոնեանցն սեռի» քերթուածն՝ յորում կը համառօտէ Ղազար Փարպեցւոյն պատմութիւնն, մանաւանդ իւր առաջադրած նիւթոյն վերաբերութեամբ: Ունի նաեւ Ապարանից Ս. Նշանի պատմութեան գրուածն Նարեկացւոյն հեղինակութենէն քաղեալ, եւ ողբ մը Մեծոփայ ուխտին վերայ. նաեւ Դավրէժ քաղաքին առման վերայ ողբ մը տաղաչափեալ:

Այս դարուս մէջ ծաղկած են նաեւ երգիչներ կամ տաղասացներ, որոցմէ ոմանք նշանաւոր են. ԳՐԻԳՈՐ ԱՂԹԱՄԱՐՑԻ՝ որ Թլկուրանցւոյն զոյգն կրնայ սեպուիլ թէ անոր պէս կաթողիկոս լինելով եւ թէ վառվռուն երեւակայութեամբն, ՄԿՐՏԻՉ ՏԱՐՕՆԵՑԻ ՄԻՆԱՍ ԵՒԴՈԿԻԱՑԻ, ՄԱՐՏԻՐՈՍ ՂԱՐԱՃԱՍԱՐՑԻ (Գարահիսարցի), ԵՕՆՈՒՉ, ՅԱԿՈԲ ՎԱՐԴԱՊԵՏ, ՆԵՐՍԷՍ ՄՈԿԱՑԻ, ՔՈՒՉԱԿ ՀԱՌԿՈՒԱՆՑԻ հաւանօրէն եւ ՍՊԱՆԴԻԱՐ, ԱՍԱՊՈՎ, ԱԶԱՐԻԱ, ՍԱՐԿԱՒԱԳ ԲԵՐԴԱԿՑԻ, ԶԱՔԱՐԻԱ ԱԳՈՒԼԵՑԻ, ԽԱՉԻԿ ԿԱՖԱՑԻ, ՂԱԶԱՐ ԿՈՑԻ; ՄԵԼԳՈՆ, ՄՈՒՐԱՏ ԽԻԿԱՐ՝ որում կ'ընծայուի «Մարտըն կուգայր ծաղկըներով» երգն, ՅՈՎՆԱԹԱՆ, ՆԱՂԱՇ, ՆԵՐՍԷՍ, ՇԱՄՍ, ՔԵՐՈՎԲԷ, ՔՕԹԱՆ եւ ՔՕԹՆԱՑ ԽԼԱԹԵՑԻ եւ այլն:

# ԴԱՐ ԺԷ.

ԺԷ. դարու հեղինակաց ոմանց գործերն՝ որ աւելի իբրեւ պատմական երկասիրութիւն կարեւորութիւն ունին քան թէ իբրեւ մատենագրութիւն, լեզուի կողմանէ զգալապէս կրած են տաճկական բարբառոյն ազդեցութիւնն, այնպէս որ օտարամուտ բառերու եւ ասութեանց յաճախութիւն մը կը տեսնուի ամեն տողի մէջ, եւ այս եւս բնական բացատրութիւն մ'էր այն զանազան երեւոյթներուն՝ որոց արդէն իսկ հանդիպեցանք յայլեւայլ դարս։ Իսկ ի Լեհաստան՝ ի Նոր Ջուղա եւ այլուր հաստատեալ գաղթականութեանց մէջ գրաբարն ուղղակի եւրոպական մատենագրութեան ազդեցութեան ներքեւ լատինական կաղապարի մը մէջ ձուլուեցաւ։ Լեզուին այս արուեստական խանգարման սկզբնապատճառ եղած էին Ունիթոռք կամ Միաբանասէրք, ինչպէս արդէն կարդացինք, բայց աւելի այդ նորանշան ուղին հորդեցին յԱրեւմտից ի Հայս եկող Եւրոպացի քահանայք՝ որ Հայերէն ուսանելով եւ ուսուցանելով զԼատին լեզուն, ուզեցին այդ երկու լեզուներն նոյնացնել, եւ անկեալ գրաբարի մը թերութիւններն ուղղելու համար սկսան լատին գրականութեան մը ձեւերն ու կանոններն մուծանել։ Այս բռնաբարման դէմ հազիւ թէ լրջօրէն բողոքարկու ձայն մը լսեցուց ԺԴ. դարն, վասն զի եկեղեցական խնդիրն սուզած էր իր մէջ մտքի ամէն գործունէութիւն, եւ այսպէս զգացողականին օրէնքն ալ ի սպառ պիտի խափանուէր յաջորդ ԺԵ. եւ ԺԶ. դարերու մէջ՝ յորս ինչպէս տեսանք ոչ ոք երեւեցաւ մատենագրի մը անուան արժանի, եւ բնական էր որ այդ երկու դարերու միջոցին մէջ Միաբանասիրաց դպրոցին ձկտումներն չ'ընկրկէին, եւ ԺԷ. դարն ալ գրաբարի աւերակաց բեկորներէն կառուցուած տեսնէր օտար ու անկատար ճարտարապետական շինուած մը՝ ոչ ինչ ընդհատ այն աղաւաղ վիճակէն՝ զոր ունէր երբեմն ռամկական լեզուն։ Այս մոլար ուղղութեան կանոն եւ յաւերժացում տալու նպատակաւ, մինչեւ իսկ ձեռնարկուեցաւ քերականական օրինաց տակ դնել զայն, եւ յայդ խիզախողաց առաջիններէն մին եղաւ նաեւ Յովհաննէս Վարդապետ Հոլով. 1674 ին տպագրեց ի Հռովմ իւր Հայերէն քերականութիւնն։ Իրմէ յառաջ հրատարակած էին իրենց Քերականութիւններն Կղեմէս Կալանոս Իտալացի քահանայն 1645 ին, Փրանկիսկոս Ռիվոլա Մեդիոլանցի 1624 ին, եւ Ոսկան վարդապետ։ Տարակոյս չկայ թէ ոչ ճա

*չակ եւ ոչ գեղեցկութիւն կրնար սպասուիլ այդ օրինակ խառնածին Լատին-Հայ լեզուէ մը։*

*Այժմ դառնանք խօսիլ սոյն դարու մատենագրաց վերայ որք են.*

## ԶԱՔԱՐԻԱ ՎԱՂԱՐՇԱՊԱՏԵՑԻ

*Ջուղա քաղաքին մէջ ծնած եւ հոն առած է իւր ուսումն* ԶԱՔԱՐԻԱ։ *Աշակերտ էր Մովսէս կաթողիկոսի՝ յորմէ եւ քահանայ ձեռնադրուելով առաջնորդ կարգեցաւ Ամատունեաց Ս. Կարապետի վանաց։ Զաքարիայի միակ երկասիրութիւնն է պատմական ընդարձակ* յիշատակարան *մը, յորում համառօտակի կ'աւանդէ Մովսէս կաթողիկոսի, անոր այլեւայլ աշակերտացն եւ հայրապետական աթոռին վերայ իրեն յաջորդող Փիլիպպոս եւ Յակոբ կաթողիկոսաց վարքը։*

*Վաղարշապատեցւոյն մահն հանդիպած է յամին* 1659։

## ԱՌԱՔԵԼ ԴԱՎՐԻԺԵՑԻ

*Միաբան էջմիածնի վանաց եւ աշակերտ Փիլիպպոս կաթողիկոսին, որոյ հրամանաւ ձեռնարկեց գրել վանքին կրած տառապանաց եւ աղետից պատմութիւնն։ Երբ կաթողիկոսն վախճանեցաւ, Դաւրիժեցին դադրեցուց իւր* պատմութիւնն, *բայց Փիլիպպոսի յաջորդող Յակոբ Ջուղայեցի կաթողիկոսին հրամանաւ շարունակեց զայն, գրեթէ* 60 *տարիներու ժամանակակից անցից բովանդակութեամբ։*

*Առաքելի ընծայուած* Պատմագրութեան *մէջ եթէ եկամուտ համարինք քանի՛ մը հատուածներն ինչպէս է* պատուական ակեանց *վերայ ճառող գլուխն՝ որ բոլորովին օտար է պատմութեան նիւթէն, եւ բազմաթիւ արաբ՝ թուրք եւ պարսիկ բառերն, եւ եթէ իւր լեզուին աղաւաղութեանց իբրեւ մեծ պատճառ ընդունինք Ոսկան վարդապետի փոփոխութիւններն ու սրբագրութիւններն, արդարեւ Առաքելի երկասիրութեան մէջ կը տեսնուի կանոնաւոր լեզուի մը հետեւելու խնամքը։*

## ԶԱՔԱՐԻԱ ՍԱՐԿԱՒԱԳ

*Վրաց Դաւիթ թագաւորին ի Յովհաննավանս իբրեւ պատանդ ղրկած տասներկու Վրացի ազատ տղայոց միոյն Ղապոյի ութերորդ*

սերունդն է Զաքարիա (*)։ Մանուկ հասակէն սկսաւ կրօնաւորել աշակերտելով ի Յովհաննավանս համանուն եպիսկոպոսի մը, բայց հազիւ թէ քառասուն եւ եօթն տարուան աշխատութեանցն ի վարձ ընդունեց սարկաւագի աստիճանը, վասն զի կաղ էր մարմնով, եւ այն պատճառաւ եւս Կաղ Զախարիա կոչուեցաւ յոմանց։

Զաքարիայի գլխաւոր երկասիրութիւնն է պատմութիւն մը երկու մասերու բաժնուած, որոց առաջնոյն մէջ կը խօսի այլեւայլ իշխանութեանց եւ թագաւորաց վերայ, իսկ երկրորդին մէջ կը պատմէ ժամանակակից անցքեր։ Պատմութենէն զատ ունի նաեւ Կոնդակ Յովհաննավանից ըսուած համառօտ գործ մը, որ ոչ նուազ քան իւր պատմութիւնն կարեւոր է եւ հետաքննական։

Գալով իւր լեզուին, եթէ գրչագրաց ընծայելի չեն այն սխալները որ կը գտնուին իւր գործոյն մէջ, Հայերէնի ամենապարզ կանոնաց իսկ անգէտ պէտք է համարել զինքն. թողունք որ յաճախ ռամկական բառեր ալ գործածած է իւր պատմութեան մէջ։

## ԱԲՐԱՀԱՄ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԿՐԵՏԱՑԻ

Հայոց ՌՃՁԳ. թուականին Էջմիածնի հայրապետական աթոռը նստաւ Աբրահամ Կրետացի, որ այդ անուամբ կոչուեցաւ, վասն զի ծննդեամբ էր ի Կանդիոյ Կրետէի։ Կը կոչուի նաեւ Թեքիրտաղցի, քսանեւհինգ տարիներ Ռոտոսթոյի առաջնորդական պաշտօն վարած լինելուն պատճառաւ։

Ահաւոր եւ տագնապալից վիճակի մը մէջ մեծ բարեբաղդութիւն մ'էր որ Կրետացին սիրելի եղաւ Պարսից Նատր Շահին, եւ իւր ճարտար լեզուաւն ու հանճարով յաջողեցաւ բազմադիմի աղետից առաջքն առնուլ,

Աբրահամու երկասիրութիւնն է «Պատմութիւն անցից իւրոց եւ Նատր Շահին Պարսից» զոր շարադրած է իւր ծերութեան ժամանակ։ Էջմիածնի եւ շրջակայից նկատմամբ եւս ամփոփ տեղեկութիւններ կը պարունակէ այս գրուածն, բայց լեզուն բոլորովին խանգարուած է այլազգի բառերու խճողմամբ։ Կը թուի թէ աւելի հասկնալի լինելու ջանիւք այդպիսի ոճ մը բռնած է, վասն

(*) Դաւիթ Թագաւորն՝ Յովհաննավանից Ս. Գէորգայ մասունքն եւս դարձունելու խոստմամբ դրկած էր այդ պատանդներն, բայց երբ երդմանը դրժեց, տղայքն երկար ատեն արգելարանին մէջ նեղուելով՝ յետոյ Արարատեան աշխարհն ցրուեցան։

զի իւր անուամբ գրուած քանի մը կոնդակներն աւելի յստակ եւ մաքուր լեզուաւ են։

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ԼԵՀԱՑԻ

Լեհաստանի Իլվով քաղաքին մէջ բնակող նշանաւոր ծնողաց զաւակ է Ստեփաննոս Լեհացի, որ օտար վարժարանաց մէջ կատարելապէս ուսանելով Լատիներէն լեզու, քերականութիւն եւ ճարտասանութիւն, իւր ծնողաց ձեռամբ զրկուեցաւ առ Փիլիպպոս կաթողիկոս Էջմիածնի որպէս զի հոն հայերէն լեզուին հմտանայ, եւ կաթողիկոսն տեսնելով Լեհացւոյն զարմանալի յառաջդիմութիւնն՝ վարդապետական պատիւ եւ աստիճան տուաւ նմա։

Յետ այնորիկ Ստեփաննոս պարապեցաւ ի թարգմանութիւնս։ Թարգմանեց Յովսեպոս Հրէայ պատմագրին «Յաղագս հրէական պատերազմին» գիրքն, Դիոնեսիոս Արիսպագացւոյն ընծայուած գործն՝ իւր առջեւ ունենալով նախկին հայերէն թարգմանութիւնն որ քանի մը դար յառաջ (Ը դար) եղած էր Ստեփաննոս Սիւնեցւոյն ձեռամբ. Արիստոտէլի կամ Պրոկղի ընծայուած պատճառաց գրուածն։ Ասոնցմէ զատ թարգմանած է նաեւ Հայելի վարուց եւ Բուրաստան աղօթից կոչուած աղօթագրքերն, Սիրաքի իմաստութիւնն, որ Ոսկան վարդապետի հրատարակած Աստուածաշունչ գրոց մէջ տպագրուած է այդ նոր թարգմանութեամբ։ Կայ նաեւ իմաստասիրութեան վերայ ճառող գիրք մ'ալ որ Լեհացւոյն կ'ընծայուի իբրեւ թարգմանութիւն կամ ինքնագիր երկասիրութիւն։

Լեհացւոյն մահն հանդիպեցաւ յամին 1681 եւ թաղուեցաւ ի տաճարի Հռիփսիմեանց յԷջմիածին։

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ՌՈՇՔԵԱՆ

Լեհաստանի գաղթականութեան մէջ նշանաւոր է նաեւ Ռոշքեան, որ Կամենից քաղաքէն լինելով՝ երբեմն Կամենեցացի կը կոչուի. աւագերէց էր հոն կառուցուած եկեղեցւոյն։ Թէպէտեւ ժամանակաւ աւելի մօտ է ի սկիզբն ԺԸ. դարու, բայց մեք հոս կը դնենք զինքն իբրեւ մատենագիր ԺԷ. դարու՝ որոյ վերջերն ծնաւ Ստեփաննոս։ Իւր գործոց մէջ մտադրութեան արժանի է ընդարձակ եւ բազմահմուտ Բառարանն ի հայ լեզուէ ի լատին՝ վկայութեամբք ի նախնեաց. Թարգմանաբար յօրինած է նաեւ

*Տրամաբանութեան գիրք մը եւ բարոյական Աստուածաբանութիւն մը։*

*Այս գաղթականութեան մէջ յիշենք նաեւ զ*ՎԱՐԴԱՆ ՅՈՎՆԱՆԵԱՆ *եւ զ*ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԼԵՀԱՑԻ, *որոց առաջինոյն կ'ընծայուին հայկական թատեր երախայրիք համարուող սրտաշարժ ողբերգութիւններ, եւ երկրորդին՝ աստուածաբանական գրուածներ կամ թարգմանութիւններ։*

## ԽԱՉԱՏՈՒՐ ԿԵՍԱՐԱՑԻ

*Նոր Ջուղայի գաղթականութեան մէջ մեծ համբաւ ստացաւ Խաչատուր Կեսարացին՝ որ դպրոցներ ծաղկեցուց հոն, եւ ինքն «ուսուցանէր զհամբակս ի համայն արուեստս ազատականս եւ գերբնազանցականս»։ Մանաւանդ տպագրատուն մ'ալ հաստատեց* 1641 *ին Պարսից Շահ Հիւսէին թագաւորին օրով։ Թէեւ իւր անուամբ ո եւ է երկասիրութիւն մը մեր ձեռքն չէ հասած, բայց իւր բազմաթիւ աշակերտներէն դիւրին է ի միտ առնուլ Կեսարացւոյն մատուցած ծառայութիւնն հայ գրականութեան, յիշատակելով միայն զ*ՅԱԿՈԲ Վ. ՋՈՒՂԱՅԵՑԻ՝ *որ ապա կաթողիկոսանալով՝ հայկական տպագրութեան արուեստին զարգացմանն հետամուտ եղաւ. զ*ԴԱՒԻԹ ՎԱՐԴԱՊԵՏ՝ *որ Ջուղայի առաջնորդ եւ հիմնադիր էր Ամենափրկչի վանաց եւ զ*ՍՏԵՓԱՆՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ՝ *առաջնորդ նոյն վանաց. որք հաւանականաբար պարապեցան ի թարգմանութիւնս իւրեանց միւս դասակցաց հետ՝ յորս իբրեւ մատենագիր ուշադրութեան արժանի եղան*

## ՍԻՄԷՈՆ ՋՈՒՂԱՅԵՑԻ

*Որ Լեհաց Իլվով քաղաքին մէջ եւրոպական ուսմանց պարապեցաւ, եւ անխոնջ աշխատասիրութեամբն քիչ ատենէն յառաջդիմելով կարող եղաւ այլոց ուսուցանել ժամանակին գիտութիւններն։ Ի սկզբան դպրոց մը բացաւ Սպահանի մէջ՝ ուր շատեր աշակերտեցան իրեն. բայց երբ* 1639 *ին Փիլիպպոս կաթողիկոս դասատու կարգեց զնա յԷջմիածին, իւր ուսուցած երեւնի չափ աշակերտացն համար պատրաստեց Քերականութիւն մը, Ճարտասանութիւն մը, որ անծանօթ է դեռ, Տրամաբանութիւն մը, նաեւ Արիստոտէլի ստորոգութեանց վերլուծութիւն մը։*

*Սիմէոն Ամենափրկիչ վանաց առաջնորդ կարգուած՝ եւ* 1657 *ին յԵւդոկիա երթալով հոն կնքած է իւր կեանքը։*

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ

Խաչատրոյ աշակերտաց մէջ ոչ նուազ քան զՍիմէոն Ջուղայեցի նշանաւոր է նաեւ Յովհաննէս՝ որ Ամենափրկիչ վանքն կը բնակէր։ Իւր զարմանալի համարձակախօսութեանն համար հնուաար պատիւ եւ մեծարանք գտաւ Պարսից թագաւոր թէ Շահաբաս Բ.էն եւ թէ անոր յաջորդ Շահ Հիւսէին սուլդանէն։

Յովհաննու երկասիրութիւնք են բաց ի Նոր կտակարանի կրկին թարգմանութենէն՝ զոր ըրած է ի բարբառ Պարսից եւ Արաբացւոց, յատուկ Աստուածաբանութիւն մը, ճառականութիւն մը եւ տրամաբանութիւն։ Ունի նաեւ ուրիշ աստուածաբանական գրուածներ։ Գրաւոր աշխատասիրութենէ զատ՝ հմտամուտ էր նաեւ ազատական արուեստից, եւ իւր ձեռագործներովն Ամենափրկչի վանաց եկեղեցին ճարտար նկարչի պէս զարդարեց։ Իւր կենաց վերջին օրերն հակառակութիւններ կրելով առանձնացաւ իւր տան մէջ, եւ ոչ զոք ունեցաւ իրեն հետեւող բայց միայն ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ անուամբ վարդապետ մը, որ յետոյ Պոլիս գալով այլ եւ այլ աշակերտներ ունեցաւ, յորս էր նաեւ ՊԱՂՏԱՍԱՐ ԴՊԻՐ։

## ԽԱՉԱՏՈՒՐ ԿԱՐՆԵՑԻ

Իտալական գաղթականութեան մէջ ծաղկեցաւ Խաչատուր, որ ծնած է 1661 ին։ Երբ դեռ վեշտասանամեայ էր, Յովհաննեան Վարդան եպիսկոպոսի թելադրութեամբ գնաց ի Հռովմ, եւ հոն Ուրբանեան վարժարանի մէջ իւր ուսմանց տասնամեայ ընթացքն աւարտելով եւ քահանայ ձեռնադրուելով դարձաւ ի Պոլիս՝ իբրեւ աշակերտ Փրոփականտայի։ Թողած է աստուածաբանական քանի մը գործեր, ինչպէս են. Նրզ Նրզոցի մեկնութիւն մը, Բարոյական Աստուածաբանութիւն եւ այլն, փիլիսոփայութիւն մը տոմնաւոր, Քարոզ գիրք մէկ տարուան համար. ասոնցմէ զատ ունի ճարտասանութիւն մը եւ քերականութիւն։

1740 թուականին մեռաւ Կարնեցին ի Վենետիկ, ուր նաւարկած էր 32 տարիներ յառաջ Պոլսոյ մէջ յուզուած ազգային եկեղեցական երկպառակութեանց զոհ չերթալու նպատակաւ։

---

Փութանք յիշատակել նաեւ այս դարու մէջ ՂՈՍԿԱՆ ՎԱՐԴԱ-

ՊԵՏ ԵՐԵՒԱՆՑԻ որ հայկական տպագրութեան գլխաւոր սատարներէն մին եղաւ, եւ առաջին անգամ ինքն էր որ հրատարակեց՝ ընդ այլ եկեղեցական գիրս՝ Աստուածաշունչ մատեանն յԱմստերտամ (1666), եւ իբր գրաւոր երկասիրութիւն թողած է քերականութիւն մը. զԱՂԵՔՍԱՆԴՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՋՈՒՂԱՅԵՑԻ որ կրօնական խնդրոց վերաբերութեամբ վիճաբանական գրուած մ'ունի. զՂԱԶԱՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՋԱՀԿԵՑԻ, որ գործերն են զանազանագիրք, դրախտ ցանկալի եւ այլն. զԳՐԻԳՈՐ ԲԱՐԵՐԴԱՑԻ, որ գրած է Տարեգրութիւն թագաւորացն Օսմանեանց, զԵՐԵՄԻԱ ՉԵԼԷՊԻ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ (+1695) որ նօտարն լինելով Պոլսոյ Մարտիրոս Պատրիարքին, հետաքննութեան արժանի պատմական գործեր թողած է՝ թէեւ խառն ի խուռն ոճով գրուած. Նշանաւոր է նաեւ իբրեւ ժողովրդական երգիչ. իւր եղբայրն ԿՈՄԻՏԱՍ ՔԱՀԱՆԱՅ Նահատակ, իւր ժամանակի անցից համառօտ յիշատակութիւնն գրած եւ ոտանաւոր բանիւ մեկնած է Գործ առաքելոցը. զՄԱՂԱՔԻԱ ԴՊԻՐ ԾԷՎԱՀԻՐՃԵԱՆ որ ժամանակակից դէպքեր ի գիր առած է։

Այս դարուս մէջ իբրեւ ժողովրդական բանաստեղծք կամ երգիչք երեւեցան. ԱՍԱՐ ՍԵԲԱՍՏԱՑԻ, ԱՐԻՍՏԱԿԷՍ ԽԱՐԲԵՐԴՑԻ, ԽԱՉԱՏՈՒՐ ԲԱՂԻՇԵՑԻ կամ ՋՈՒՂԱՅԵՑԻ, ՄՈՒՔԻԱՍ, ՍՏԵՓԱՆՆՈՍ ԹՈԽԱԹՑԻ, ՍՏԵՓԱՆՆՈՍ ՇԱՏԱԽՑԻ, ՍԱՐԳԻՍ ԵՐԷՑ, ՍԱՄՈՒԷԼ ՂԱՑԹՄԱՋԵԱՆ. Երկու Կարնեցի երգիչք ալ որոց մին նուագող էր գինեաց՝ ՏԱՏՈՒՐ, եւ միւսն ծաղկանց՝ ԴԱՒԻԹ ՍԱԼԱՁՈՐԵՑԻ, այս դարու մէջ ծաղկած կը համարուին։

## ԺԸ. ԴԱՐ

Հայ մատենագրութիւնն գեղեցիկ ապագայի մը յուսով երեւեցաւ ԺԸ. դարու սկիզբներն. իւր անկեալ վիճակին սկզբնական դարմաններն եղան քանի մը քերականութիւնք եւ բառագիրքեր, որոց թէպէտ նպատակն էր գրաբարի ուսումն դիւրացնել եւ ընդհանրացնել, բայց լեզուին հարազատ կանոններն՝ բառերն ու ոճերն ճաշակի եւ քննադատութեան բովքին մէջ զտելու ոչ ոք տակաւին ձեռնարկած էր։ Արդարեւ լեզուի մը կանոններն եւ շարադրութեան օրէնքներն ամփոփ եւ սեղմ պահելու համար մի-

ջոց մը պէտք էր, որ ծառայէր միանգամայն ընտանութենէ հեռացած լեզուի մը քերականական պայմաններուն իրազեկ ընել զայլս, եւ այդ պիտի լինէր Քերականութիւնն։ Բայց քերականութեանց պէտքն մեր Ոսկեդարէն սկսեալ կարծես զգալի չէր եղած, եւ այդ իսկ էր պատճառ՝ որ լեզուն իւր խստապահանջ նկարագիրն կորուսած՝ անձնիւր գրչի ներքեւ՝ իբրեւ նոր կաղապարի մը մէջ կը ձուլուէր, ընդունակ լինելով ամեն աղաւաղմանց եւ այլայլութեանց տեղի՝ տալու, եւ առ ի չգոյէ կանոնաւոր քերականութեան լեզուին՝ դիւրին չէր գտնել երկայնամիտ եւ վստակասէր անձեր՝ որ գրաբար շարագրուած կամ թարգմանուած երկասիրութեանց մտադիր ընթերցմամբն ուսումնասիրէին լեզուն։ Իրաւ է որ յընթացս մեր Հայ մատենագրութեան յիշատակեցինք Խորենացւոյ՝ Դաւիթ Անյաղթի՝ Ստեփաննոս Սիւնեցւոյ՝ Մագիստրոսի՝ Երզնկացւոյ եւ այլոց անուամբ գտնուած քերականական գրուածներն, բայց այդ երկասիրութիւնք այժմեան քերականութեանց պէտքն չէին լնուր առ մեզ, թէեւ յոյժ օգտակար էին այն ժամանակաց բանասիրական տեղեկութեանց մասին։ Կը մնայ պակայն հարցանել թէ՝ նախորդ եւ ԺԸ. դարու մէջ միաբանասիրաց հրատարակած խառնալարեալ Քերականութիւնք ի՞նչ օգուտ կրնային յառաջ բերել — ոչ ինչ, միայն թէ լեզուի մը կանոնաց պահպանութեան միջոցն ցոյց տուին մեզ, թէպէտեւ դժուարին չէ ի միտ առնուլ թէ գրաբարի մասին իրենց առաջադրած նպատակն ո՛րչափ կը հեռանար այնպիսի աղքատ ու աղճատ գիտութեան մը առջեւէն։ Մխիթար Աբբայն եւս չկարաց այդ հոսանքէն զերծանիլ, այլ եւ մտադիւր մղուեցաւ անոր ուժգնութենէն, եւ Միաբանասիրաց հետեւողութեամբ գրաբար Քերականութիւն մը յօրինելէ զատ, պատրաստեց նաեւ մաքուր եւ գրաբարի մերձաւոր աշխարհիկ լեզուի մը կանոններն աւանդող Քերականութիւն մը, ուզելով թերեւս դիւրացնել ժողովրդական լեզուին ուսումը, եւ մատենագրական դիրք մը տալ աշխարհաբարին, թէպէտեւ ինքն ալ չէր դադրեր անոնցմէ մին լինելէ որ անձկանօք կ՚սպասէին գրաբարի դիակին չուրջն հսկող արալէզաց, թէ ե՞րբ վերստին կեանք եւ ոգի պիտի տային նմա։ Նախնեաց մատենագրութեան վերծանութիւնք որ վանական կենաց քաղցրագոյն զբաղումներէն մին էին, ընդհուպ զարթուցին յաշակերտս Մխիթարայ լեզուին հարազատ աղբերակն որոնելու տենչն, եւ անոնցմէ մին Միքայէլ վարդապետ Չամչեան՝ տեսնելով

թէ Լատին-Հայ քերականութիւն ժանդոտ եւ անյարմար բանալիներ են գրաբարի գանձարանին համար, այս դարուս վերջին քառորդին (1779ին) հրատարակեց իւր Քերականութիւնն «յօրինեալ ըստ նախնի ուղղախօսութեան» յորում ի խանդարմանց եւ յեկամուտ աղաւաղմանց կը զտէր հայ լեզուն, նախկին բնութեամբն ու կերպարանաւն ընծայելով զայն ի տեսիլ։ Դիւրին էր գուշակել թէ մեծ ծառայութիւն պիտի մատուցանէր գրաբարին այդպիսի աշխատասիրութիւն մը, մանաւանդ երբ հետեւողներ ունեցաւ իրեն։ Քերականութեանց համեմատութեամբ ոչ նուազ նաեւ լեզուին մաքրութեան եւ յառաջդիմութեան նպաստեցին բառարանք։ բառադրոց մասին եւս մեր հին մատենագրութեան մէջ կարեւոր բան մը չենք տեսներ, եւ պատմութիւնն կը վկայէ մեզ թէ ինչպէս քերականութեան նոյնպէս եւ այդպիսի երկասիրութեան մը նախաձեռնարկն ըրած է առ մեզ Մեդիոլանցի Փրանկիսկոս Ռիվոլա որ 1633ին Փարիզի մէջ հրատարակեց իւր աշխատասիրած հայ-լատին բառգիրքն։ այնուհետեւ ուրիշներ թէ յօտարազգեաց եւ թէ յազգայնոց պարապեցան այդօրինակ երկասիրութեանց, բայց հայերէն քերականութեանց նոր ուղղութիւն տուող ոգին հայ լեզուի բառարանաց վերայ ալ ազդուապէս ներգործեց, երբ Մխիթարայ եւ իւր աշակերտաց յօրինած բառարանն յետոյ՝ վենետկոյ միաբաններէն երեք վարդապետք Աւետիքեան, Սիւրմէլեան եւ Մկ. Աւգերեան 1784ին ձեռնարկեցին Հայկազեան լեզուի նոր բառգրքին յօրինման, կէս դարու միջոցի մէջ յաջողելով այդ աննման գործոյն լրմանն հասնիլ։ Այս երից վարդապետաց վերջնոյն Առձեռն բառարանն առաւելապէս ծառայեց լեզուին ուսման եւ բառից ճշդութեան՝ իբրեւ ընտիր համառօտութիւն ընդարձակ բառարանին։

ԺԸ. դարու մէջ տեղի ունեցած գրական շարժման սկզբնապատճառ մը համարելով զՄԽԻԹԱՐ ԱԲԲԱ ՍԵԲԱՍՏԱՑԻ, իրմով կուզենք սկսիլ այս դարը, լոկ իբրեւ մատենագիր նկատելով զինքը։

## ՄԽԻԹԱՐ ԱԲԲԱ ՍԵԲԱՍՏԱՑԻ

Ծնաւ ի Սեբաստիա քաղաք փոքուն Հայոց յամին 1676։ Բարեպաշտութեամբ եւ ուսմամբ գրոց անցունելով իւր պատանեկութիւնը՝ քսան տարեկան հասակին մէջ վարդապետ ձեռնադրուեցաւ, եւ 1700 թուականին եկաւ ի Պոլիս։ Այս թուականի

Պոլսոյ մէջ ընդդէմ ուղղափառաց հալածում տեղի կ'ունենար, եւ որովհետեւ Մխիթար վարդապետ այդ դասուն կը պատկանէր, ստիպուեցաւ խոյս տալ եւ թաքչիլ Եւրոպացի կրօնաւորաց մենաստանի մը մէջ, եւ Միաբանութեան նպատակաւ իւր ժողոված աշակերտներն ղրկեց Մորէա՝ որ այն ատեն Վենետիկոյ իշխանութեան ներքեւ էր, եւ 1703 ին ինքն ալ ծպտեալ զգեստուք հոն ուղեւորեցաւ, եւ կուսակալէն պատիւ գտնելով՝ Մեթոն քաղաքի մէջ հաստատեց իւր բնակութիւնն ։ Ինն տարի յետոյ (1712) շինեց հոն մենաստան մը եւ եկեղեցի՝ Պապին հաւանութեան կոնդակաւն ․ բայց զայս ամենայն թողլով անցաւ ի Վենետիկ երբ Օսմանցիք Մորայի տիրեցին (1715) ։ Ծերութեան կողմանէ ընդունելով Ս․ Ղազարու կղզին՝ կանգնեց հոն նորակերտ մենաստան մը զոր հազիւ կրցաւ ի գլուխ հանել յամին 1740 ։ Այսքանի դժուարութեանց մէջ սակայն իւր Միաբանութեան զարգացման մասին երբէք չխնայեց ջանք եւ հոգ, եւ իբրեւ անմահ յիշատակ եւ գեր ի վերոյ հաստատութիւն թողուց ազգին՝ կրկին Միաբանութիւնքն Վենետկոյ եւ Վիեննայի (*) ։

Մխիթար Աբբայ գրեթէ յիսուն տարիներ գործունեայ եւ բազմավաստակ կեանք վարեց եւ 74 տարեկան մեռաւ 1749 ին եւ թաղեցաւ ի Ս․ Ղազար ։ Թողուց գրաւոր աշխատասիրութիւններ զորս յօրինած է ոչ միայն կրօնական ուսումն եւ բարեպաշտական զգացումն զարգացունելու համար առ իւրսն, այլ եւ արտաքին գիտութեանց զիրենք տեղեակ ընելու նպատակաւ ։ Իւր աստուածաբանական գլխաւոր երկասիրութիւնք կը համարուին Մատթէի եւ Ժողովողի մեկնութիւններն ։ Բազմաթիւ գրուածներ ունի նաեւ ուսումնական եւ իմաստասիրական՝ յորոց բազումք լոյս տեսած չեն ։

## ՅԱԿՈԲ ՆԱԼԵԱՆ

Յովհաննէս Կոլոտի աշակերտներէն էր ՅԱԿՈԲ ՆԱԼԵԱՆ՝ Պատրիարք Կ․ Պոլսոյ (+1764), որ բազմաթիւ երկասիրութիւններէն

(*) Մխիթար Աբբայի յաջորդ Ստեփան վարդապետ Մելքոնեանի ժամանակ միաբաններէն ոմանք հակառակելով ընդդէմ իշխանութեան Աբբային՝ Ս. Ղազարու միաբանութենէն զատուեցան եւ Թրիեստ քաղաքի մէջ առանձին դպրոց եւ մենաստան բացին, եւ իրենց միաբանութիւնն սկսաւ 1774 ին ։ Բայց երբ Գաղիացիք տիրեցին Թրիեստ քաղաքին միաբանութիւնն փոխադրեցաւ ի Վիեննա, և այսպէս կոչուեցաւ Վեննական միաբանութիւն ։

գլխաւորապէս իւր ժամանակին յուզուած կրօնական խնդրոց վերայ յօրինուած՝ հրատարակուած են Ձէն հոգեւոր, Վէմ հաւատոյ, Մեկնութիւն Նարեկի, Գանձարան ծանուցմանց եւլն. ունի բաւական յստակ լեզու եւ աստուածաբանական ընդարձակ հմտութիւն. Նոյն ատեններն ծաղկած են նաեւ ՀԱՆՆԱ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՑԻ, որ ժամանակակից անցից հետ Երուսաղէմի պատմութիւնն եւ Ս. Տեղեաց դէպքերն նկարագրած է. ՍԻՄԷՈՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԵՐԵՒԱՆՑԻ (+1780) որոյ գլխաւոր գործն կը համարուի Պարտավճար անուն գիրքն եւ Ջամբռն. ԵՓՐԵՄ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՍՍՈՑ (+1784) որ պատմական կարեւոր գրուած մ'ունի. ԵՍԱՅԻ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՂՈՒԱՆԻՑ (Գանձասարայ մետրապոլիտ)՝ Հասան Ջալալեանց նշանաւոր ցեղէն՝ որ թողած է Համառօտ պատմութիւն Աղուանից երկրի անուն գրքոյկն. Էջմիածնի միաբաններէն ՊԵՏՐՈՍ ԲԵՐԴՈՒՄԵԱՆ որ յօրինած է այլ եւ այլ Մեկնութիւններ Արարածոց, Յոբայ, եւ Քարոզներ. ՄԱՆՈՒԷԼ Վ. ՇԻՐԻՆԵԱՆ եւլն: Նոյն միջոցներուն ծաղկած է նաեւ ՊԱՂՏԱՍԱՐ ԴՊԻՐ (+1736) որ հայկական տպագրութեան մեծ ծառայութիւն մատոյց նախնեաց այլեւայլ գործերն հրատարակելով. Իւր գլխաւոր երկասիրութիւնն է երկհատոր Քերականութիւն մը:

Յիշատակելով նաեւ այս դարու բանաստեղծներն կամ ժողովրդական երգիչներն ինչպէս՝ ԳԱԼՈՒՍՏ ԿԱՑԾԱԿՆ, ՕՀԱՆ, ԱԻՍՏԻՔ անուանի պատրիարքն Կ. Պոլսոյ, ՊԵՏՐՈՍ ՂԱՓԱՆՑԻ, անցնիմք Մխիթարայ նախկին աշակերտաց ոմանց վերայ խօսիլ, որք թէպէտեւ ԺԹ. դարու առաջին քառորդին մէջ դեռ կ'ապրէին, բայց հմտութեամբ եւ համբաւով արդէն նշանաւոր եղած էին ԺԸ.ին մէջ: Մխիթարայ առաջին աշակերտաց մէջ որ Ս. Ղազարու միաբանութեան կը վերաբերին՝ անուանի եղան.

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԱԳՈՆՑ ՔԻՒՎԷՐ

Աւտեալլի Հայազգի գաղթականներէն նշանաւոր ծնողաց զաւակ, որ անուանի եղաւ նաեւ իւր վարած բարձր պաշտամամբն ու գրական հանճարովն. իւր գործերէն հրատարակուած են. Տեսութիւն Ս. Գրոց հին եւ նոր Կտակարանի 7 հատոր; Ճարտասանութիւն մը ընդարձակ, Պատմութիւն վարուց Մխիթարայ Աբբայի եւ այլն (1740—1824):

## ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԴԱՊԵՏ ՉԱՄՉԵԱՆ

Բազմահմուտ եւ անխոնջ միտք մը որ նշանաւոր եղաւ իւր

խորին հմտութեամբն զոր ունէր յԱզգային պատմութեան եւ յԱստուածաբանական գիտութիւնս։ Իւր ընդարձակ Հայոց պատմութիւնն եռահատոր, որ արդարեւ գործ է տաժանաւոր աշխատութեան եւ հետախուզութեան՝ իրաւամբ կոչել տուաւ զինքն Հայր Հայոց պատմութեան, թէպէտեւ այդ՝ անզուգական գործն զերծ չէ ի թերութենէ, մի՝ զի Չամչեանի ձեռքն հասած չէին դեռ այն ատեն ազգային պատմիչներէն Ուխտանէս եպիսկոպոս, Ղեւոնդ Երէց, Սեբէոս, Թովմա Արծրունի, Մ. Կաղանկայտուացի, Մխիթար Անեցի, Սմբատ եւ այլք, եւ երկրորդ՝ զի ուրեք ուրեք իւր կրօնական գաղափարաց բերմամբն հետեւած է ի պատմութեան եկեղեցական իրաց։ Չամչեանի աստուածաբանական հմտութեան վկայ կրնայ համարուիլ 10 հատորէ բաղկացեալ Մեկնութիւն Սաղմոսաց գործն՝ ունի նաեւ Քերականութիւն մը զորմէ արդէն խօսեցանք, եւ այլ եւ այլ կրօնական գրուածներ։ (1738-1823)։

## ՂՈՒԿԱՍ Վ. ԻՆՃԻՃԵԱՆ

Ինճիճեան զոյգ կ'ընթանայ Չամչեանի փառաց եւ համբաւոյն. պատմաբան եւ հնագէտ, որ գլխաւոր գործն է Հնախօսութիւն Հայաստանեայց անմահ աշխատասիրութիւնն 3 ընդարձակ հատոր ; Հին եւ Նոր Հայաստան, Աշխարհագրութիւն մը չորից մասանց աշխարհի 12 հատոր, եւլն։ Ինճիճեան կրնայ արժանի համարուիլ նաեւ քերթող անուան իւր Ամառանոց Բիւզանդեան քերթուածովը որով կը նկարագրէ Վոսփորի գեղածիծաղ ափունքը (1758-1833)։

## ԳԱԲՐԻԷԼ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՒԵՏԻՔԵԱՆ

Իբրեւ Աստուածաբան ունի մեծ հմտութիւն եւ խորազնին տեսութիւն. իւր գրուածոց մէջ բարձր տեղ մի կը բռնեն Մեկնութիւն թղթոցն Պօղոսի 3 ընդարձակ հատոր. յօրինած է նաեւ Շարականաց բացատրութիւն մը, Նարեկայ Աղօթից եւ Ճառից լուծումներն, եւ ուրիշ գրուածներ։ Թարգմանութեամբ ընծայած է Ազգին Օգոստինոսի Ցաղագս քաղաքին Աստուծոյ պատուական երկասիրութիւնն։ Իբրեւ քերթող նաեւ կրնայ հանդիսանալ Աւետիքեան Հայ գրական աշխարհին մէջ իւր քերթուածներովը՝ որ թէպէտ սակաւաթիւ են՝ բայց ցոյց կուտան իւր բանաստեղծական հանճարն եւ քնարերգական քերթութեանց մասին յարմարաւոր եւ ներդաշնակ գրիչը (1751-1827)։

## ՄԱՆՈՒԷԼ Վ. ՋԱԽՋԱԽԵԱՆ

*Աշակերտ է Աւետիքեանի, եւ գրական արդիւնաւոր կեանք մը անցուց* (1770—1835)։ *Իբրեւ բանաստեղծ նշանաւոր է եւ ունի բազմաթիւ քերթուածներ՝ որք հրատարակուած են իւր մահուանէն յետոյ։ Եւրոպական նոր լեզուաց հմուտ՝ թարգմանած է ի Գաղղիերէնէ Ֆենելոնի Տելեմաքն եւ ի Գերմաներէնէ Կեսների Մահն Աբելին երկուքն ալ գրաբար լեզուաւ, գրեթէ վիպական քերթուածոց առաջին ճաշակն տալով Ազգին։ Հմուտ էր նաեւ Իտալերէնի եւ ունի յօրինած բառարաններ Հայ—Իտալերէն եւ Իտալերէնէ-Հայերէն՝ որք յարգի են յոյժ։*

*Մխիթարեան Միաբանութենէն այս դարու մէջ յիշենք նաեւ* զՄԱՏԹԷՈՍ Վ. ԳԱՐԱԳԱՇԵԱՆ՝ *որ Մխիթարայ ձեռնասուն աշակերտներէն էր, եւ գրած է Մխիթարեան ուխտի Յիսնամեայ ժամանակագրութիւնն եւ աստուածպաշտական քանի մը գործեր.* զՄՈՒՔԻԱՍ Վ. ԱՂԱՄԱԼԵԱՆ *Շառոքեցի եւ* զՎՐԹԱՆԷՍ Վ. ԱՍԿԷՐԵԱՆ՝ *որոց առաջինն յօրինած է չափաբերական երկասիրութիւններ, եւ երկրորդն նշանաւոր է իբրեւ թարգմանիչ Հռովմէական պատմութեան Ռոլէնի, եւ Թեսաւրոսի բարոյական իմաստասիրութեան եւ այլ գրոց* (1720—1810)։

---

*Այս դարու մատենագրաց կարգին մէջ կրնամք դասել նաեւ Մխիթարեանց վանքէն դուրս իրենց անհատական հանճարոյն շնորհիւ հայ գրականութեան կամ լեզուին փառք եւ բազմաթիւ աշակերտաց ուսուցիչ հանդիսացող* ԳՐԻԳՈՐ ՓԵՇՏԻՄԱԼՃԵԱՆ *պատուելին, եւ* ՅՈՎՀԱՆ ՄԻՐՋԱ ՎԱՆԱՆԴԵՑԻ *վարժապետ քահանայն, որոց առաջինն ի Կ. Պոլիս, եւ երկրորդն ծաղկեցաւ ի Զմիւռնիա ԺԹ. դարու սկիզբներն։ Փեշտիմալճեանի քերթողական գլխաւոր գործն է Դիւցազնութիւն ի չարչարանս Քրիստոսի ընդարձակ քերթուածն՝ որ թէ՛ ըստ լեզուին եւ թէ՛ ըստ իմաստից ծնունդ է զգայուն սրտի եւ վարժ գրչի, գրած է նաեւ Լուսաշաւիղ գիրքն՝ Հաւատոյ հանգանակին վերայ, Քերականութիւն մը, Տրամաբանութիւն եւայլն. բայց Փեշտիմալճեանի գրական աշխատասիրութեանց մէջ միշտ բարձր տեղ մը կը բռնէ Հայկազնեան լեզուի երկհատոր բառարանն, որ իւր մահուանէ վերջ հրատարակուած է* (1773—1837)։ *Իսկ Վանանդեցին* (+1840) *բնատիպ հանճար մ'է, վառ երեւակայութեան եւ ընդ նմին մշակուած մտքի տէր, իւր գործերէն Ո.*

կեդար եւ Արփիական Հայաստանի կոչուած քերթուածներն բաւական են իւր անվիճելի արժանիքն ցոյց տալու. միայն քերթողին մի մեծ թերութիւնն եղած է անսովոր բառեր յաճախակի գործածելն։

Փէշտիմալճեանի ժամանակակից վարժապետաց մէջ նշանաւոր եղան նաեւ ԳԷՈՐԳ ՊԱՏՈՒԻԵԼԻ, լեզուագէտ անձ մը, որ ի միջի այլոց յօրինած է Պարսկերէն-Հայերէն Բառարան մը, ՊԱՂՏԱՍԱՐ պատուելի Պալատու, ԽԱՉԱՏՈՒՐ վարժապետ Սամաթիոյ, ԹԱԳՒՈՐ վարժապետ. Տ. ՄԵՍՐՈՎՊ ՔԱՀԱՆԱՅ՝ որ ճարտասանութիւն մը գրած է. ՖԻԶԻՔԱ ՊՕՂՈՍ պատուելի, որոյ բազմաթիւ գործերէն միայն տրամաբանութիւնն լոյս տեսաւ իւր մահուանէն վերջ. ԱՆԴՐԷԱՍ վարժապետն Խասգիւղցի՝ որ ի Զմիւռնիա դասախօսելով ի Մեսրոպեան վարժարանի բազմաթիւ աշակերտներ ունեցաւ. քաջահմուտ էր Հայերէնի եւ քանի մը Եւրոպական լեզուաց, եւ գրագիտական ճաշակի տէր լինելով միանգամայն թողած է արձակ եւ չափաւ գրուածներ (+1857)։

Սոյն դարու վերջերն հանրածանօթ բանաստեղծ մ՚էր ՍԱՅԵԱԴ ՆՈՎԱ, զոր Վրաց Հերակլ թագաւորն իւր արքունեաց երգիչ ըրած էր։ Իւր երգերն հաւաքելով ընտիր ծանօթութեամբք հրատարակեց 1852ին Գէորգ Հախվէրդեան Գուսանք մակագրով։ Սայեադ-Նովա 58 տարեկան կրօնաւորելով՝ ութսնամեայ հասակին մէջ սպաննուեցաւ յեկեղեցւոջ Հաղբատու (+1795)։ Նոյնպէս նշանաւոր էր Սերովբէ վարժապետ Պատկանեան Կ. Պոլսեցի, որոյ Երգերն հրատարակուեցան ի Մոսկուա 1857ին։

---

## ԴԱՐ ԺԹ.

ԺԹ. դարու հայ մատենագրական շարժումն արդարեւ եւրոպական յառաջադիմութեան եւ քաղաքակրթութեան ազդեցութիւնն խորապէս կրելով, տեսաւ իւր առջեւ բացուած լայնածաւալ ասպարէզ մը։ Նախկին դարերու մէջ յաւէտ աստուածաբանական կամ եկեղեցական գրուածոց՝ իսկ իմաստասիրական կամ գիտական արտադրութեանց խիստ քիչ անգամներ հանդիպեցանք. բայց ի ներկայ դարուս՝ մանաւանդ մեր օրերուն մէջ՝ մատենագրութիւնն աւելի ընդարձակ նշանակութիւն մ՚առաւ, թէպէտեւ դեռ

զուրկ է գործօն հանգամանքէ ։ Վասնզի «կայ գործօն մատենագրութիւն մը որ., ինչպէս կ'գրէ Արդոյ մարդկեղէն կեանքի ամէն պատահարաց եւ ընկերութեան ամէն շահերու եւ կրից խառնուելով կ'կազմակերպի․ բեմերու վրայէն արտասանուած ճառեր, կրօնի պաշտօնէից վարդապետութիւնք, փիլիսոփայական տեսութիւններ, բանաստեղծին երգերն, պատմական վէպեր, անհատական կենաց յիշատակարանք եւ մինչեւ իսկ ընտանեկան թղթակցութեանց մէջ ի վեր երեւցած սրտի զեղումներն մատենագրութեան անսպառ նիւթերն պիտի լինին ։» (¹)

Մեր այժմեան մատենագրութիւնն եթէ ոչ բոլորովին՝ գէթ մասամբ այս շրջանակին մէջ թեւակոխած է, սակայն ամէն ճիւղերու մէջ հետեւակ է տակաւին ։ Մեր ատենական բեմերու վրայ հազիւ կը լսուի ձայն մը՝ պերճախօս բարբառ մը որ ազգին շահուց եւ ներքին բարեկարգութեան նկատմամբ այնպէս ճառէ ինչպէս կ'պահանջեն ժամանակին պէտք եւ ճարտարխօսութեան արուեստին պայմանք․ եկեղեցական բեմերու վրայէն հազիւ ժողովուրդն կը լսէ քարոզներ՝ որ ուսումնասիրութեան նիւթ եղած լինին վարդապետին խորհրդածութեանց, թողունք որ գրեթէ կէս տարու միջոցի մը մէջ հրատարակուած չէ բան մը՝ որ ազգային-եկեղեցական պերճախօսութեան կամ մատենագրութեան մէջ գրաւէ բարձր ու կարեւոր տեղ մը․ մեր բանաստեղծութիւնք աւելի տաղաչափական գեղեցիկ չէնքեր են եւ զգացումներու խանդավառ չեշտեր՝ ուր իմաստասիրութիւնն մուտ չգտներ յաճախ, իսկ բուն իմաստասիրական գրուածներն աղօտ օրինակութիւններ են միայն Եւրոպական իմաստասիրաց հատորներու մէջէն․ ազգային եւ ընկերային վիպասանական ճիւղն ալ տարրական վիճակի մը մէջ է դեռ ։ Սակայն ինչ որ ալ լինի, յառաջդիմութեան օրէնքն սկսած է ուղղութիւն տալ մեր ամէն գործոց, եւ մեր մատենագրութիւնն միշտ աստիճանաչափ գործին պիտի լինի մեր մտաւոր կարողութեանց եւ զարգացման ։ Մեր դարու գրականութեան ճաշակն յղկուեցաւ այլ եւ այլ ազգաց նշանաւոր հանճարներու երկասիրութեանց թարգմանութեամբք․ այնուհետեւ՝ բանաստեղծութիւն, իմաստասիրութիւն, պատմութիւն, գիտութիւնք լուրջ զբաղումներ եղան, եւ մատենագրութիւնն՝ որ վանքերու եւ կրօնաւորաց մենաշնորհն կը նկատուէր՝ ժողովրդեան զաւակաց ազնուական միջնորդն եղաւ՝ ընկերութեան ամէն խա-

(¹) Artaud, մատենագիր Գաղղիացի (1772—1849) ։

ներուն մէջ մտաւոր յառաջադիմութեան մղում տալու համար։

Նոյն այդ նպատակաւ Պոլսոյ մէջ եւ յայլ գաւառս հաստատուեցան տպարաններ, եւ անոնք որ ժողովրդեան մօտ կ'ապրէին եւ ժողովրդեան սրտին եւ մտաց հետ խօսելու լաւագոյն միջոց կ'ընտրէին, այն լեզուն՝ զոր ժողովուրդն կարող էր հասկանալ, այսինքն աշխարհաբարն, ոյժ ու կերպարան տալով նմա՝ սկսան հրատարակել բազմաթիւ գրուածներ՝ թարգմանութիւններ եւայլն, թէպէտեւ գրաբարի յօրինեալ երկասիրութիւնք եւ թարգմանութիւնք թէ՛ ոճի եւ թէ գրական արժանեաց կողմանէ ազնուականագոյն լինելով դեռ կը գրաւէին մեր մատենագրական ասպարէզն՝ հրապոյր եւ ցոլք ցանելով, եւ գրաբարն՝ իբրեւ նախնեաց անբռնաբարելի աւանդ մը՝ մագնիսական զօրութեամբ կ'դիւթէր եւ տակաւին կ'դիւթէ Հայ գրագիտաց բազմաց գրիչներն։

Բայց երկու լեզուաց միանգամայն գործածական լինելու մըրցումն վերջապէս օր մը պիտի փոխուէր ի պայքար, ինչ որ արդէն տեղի ունեցաւ քիչ տարիներ յառաջ։ Աշխարհաբարի կողմնակից գրագէտք մերթ անհատական եւ մերթ հաւաքական ճիգեր թափեցին այդ լեզուին նախապատուութիւն եւ գործունէութիւն տալու, եւ այդ շարժման արդիւնք եղաւ Ուղղախօսութիւն արդի հայ լեզուի կոչուած քերականութիւն մը՝ որ Ռուսինեանի Օտեանի եւ այլոց նախաձեռնութեամբ պատրաստուած գործ մ'էր 1855ին հրատարակուած, նպատակ ունենալով ռամկական բարբառն կանոնի տակ դնել նոր ուղղագրութեամբ եւ բառերու բացատրութեանց նորութեամբ լեզուն ճոխացունել. 1864ին երեւեցաւ Քիրէճճեանի հայերէն քերականութիւնն աշխարհաբար լեզուի. երկու տարի վերջ՝ հրատարակուեցաւ Վիէննայէն Հ. Արսէն Այտընեանի Քննական քերականութիւն աշխարհաբար լեզուի ընդարձակ գրուածն՝ յորում արդի հայերէն լեզուի ծագումն՝ էութիւնն՝ պատմութիւնն եւ ներկայ վիճակն ի քննին առնլով, աշխարհաբարի ճակատագիրն վճռեց. Հուսկ յետոյ աշխարհաբարի նոր քերականութիւն մը ուզեց մուծանել Պ. Մ. Ջերազ, ընտրողական լեզու մը, որով յօրինած էր նաեւ իւր Գրական փորձերուն մէջ ամփոփեալ զանազան գրուածներն, եւ որ քիչ ժամանակի մը համար միայն հետեւողներ ունեցաւ։ Բայց այս ամենայն դեռ բաւական չէին եղած գրաբարի նկատմամբ ոմանց մտաց մէջ տարրացած ծայրայեղ նախապաշարումն ջրել կամ ի չափու դնել, եւ ծանօթ ու ժողովրդական լեզուի մը կիրառութեան իրաւունքն՝ որ ազգին

ներքին յառաջադիմութեան տարրերէն մին էր՝ բազմաց յարձակումներէն մերթ ընդ մերթ սուզեցաւ, եւ վիճաբանական յօդուածներ երկար ժամանակ գրաւեցին լրագրական սիւնակներն, մինչեւ Արամազդ եւ Անահիտ դիցաբանական անուններու տակ զայրագին եղաւ վէճն, եւ հրապարակ իջաւ նշանաւոր հայագէտն Գարագաշեան, լեզուաբանական օրինաց ներկուռ հմտութեամբ պաշտպանելու համար գրաբարի դատն։ Մեր համոզումն լինելու թէ այլ եւս պէտք է դադրին այդ օրինակ ամուլ պայքարներ, նկատելով որ ոչ զգրաբարն պարսաւելու եւ անոր ուսումն անօգուտ իմն համարելու ձախող վարդապետութիւնն, եւ ոչ ալ ըզգրաբարն գործածական ընելով՝ զաշխարհաբարն վտարելու խօլ եռանդն այլ եւս մէտ մ'իսկ չեն կշռեր ուղղախոհ եւ ողջամիտ կարծեաց նժարին մէջ։

Աշխարհաբարի եւ գրաբարն մարտն յերկուց կողմանց անպարտելի մնալէ վերջ՝ առաջնոյն յաղթութիւնն աներկեւան եղաւ, զի գիտութեան հետ ամէն ինչ, մինչեւ իսկ գրագիտական լեզուն ու մտածութիւնք ռամկացնելն առանց աստուածացնելու ԺԹ դարու ոգին է, եւ անցած են այն դարերն՝ յորս երբեմն ամէն ինչ որ խրթնատեսիլ էր եւ անմատոյց ժողովրդեան աչաց համար՝ միշտ վեհ եւ լուսաճաճանչ շրջանակ (nimbe) մը կ'կրէր. իսկ այսօր գըրաբարն երկիւղածաց ոմանց հիացումն ու մեծարանքն կ'ընդունի ոչ եւս իբրեւ Արամազդայ արձանն՝ այլ իբրեւ Փիդիասի մը հրաշակերտ.; փութանք ուրեմն ըսել թէ այլ եւս մեր մատենագրական լեզուն է աշխարհաբարն, թէպէտ կարելի չէ ուրանալ թէ գրաբարէն կ'առնու նա իւր արդուզարդը, եւ թէ այս դարու մէջ յօտարազգի մատենագրաց գրաբար թարգմանեալ այն քերթուածներն ու երկասիրութիւնք՝ որք մասնաւորապէս արդիւնք են Բագրատունւոյ եւ Հիւրմիւզի գրիչներուն, մեր նախնեաց լաւագոյն գործոց հաւասար պիտի ընթերցուին յաճախ, ցորչափ հայկական լեզուն հնչէ ի շրթունս Հայոց։

Աշխարհաբարի ընդհանրացումն զգալի ըրաւ նաեւ գաւառական բառերու կարեւորութիւնն, որք անհրաժեշտ էին լեզուին ճոխացմանն, եւ որոց յերկար ժամանակաց հետէ այլեւայլ հայ բառարանաց մէջ երկրորդական տեղ մը միայն ցուցուած էր, բայց այդ բառերու անկապտելի նուիրականութիւն մը տուաւ Գ. Նորայր Բիւզանդացւոյն Ֆրանսահայ բառագիրքն, եւ գիտական աշխատութիւնք նորանոր բառերու լեզէոն մը յերեւան բերին։

Ի մէջ կոյս դարուս հրատարակուած լրագիրք եւ պարբերականք հանդէսք մեծ մասամբ նպաստեցին աշխարհիկ լեզուի կանոնաւորման եւ զարգացման, հետզհետէ թօթափելով ի նմանէ իւր մուրացածոյ՝ ճապաղ եւ օտարոտի բացատրութիւններն ու բառերը։ Այդ գրուածոց մէջ գլխաւորներն են, Պալթազարեանի հիմնադրութեամբ ի Զմիւռնիա լոյս տեսնող Արշալոյս Արարատեան քաղաքական եւ բանասիրական օրագիրն՝ (1840—1885) զոր այժմ կը խմբագրէ Յ. Կ. Սվաճեան. Վենետիկոյ Մխիթարեան Հարց Բազմավէպն (1843—1885) որ դեռ կը շարունակուի. Վիեննայի Մխիթարեան Հարց Եւրոպա շաբաթական հանդէսն (1847—1858) եւայլն։ Իսկ այսր քան զկէս դարուս սկսան հրատարակուիլ Կ. Ս. Իւթիւճեանի Մասիս օրագիրն (1852—1883) որ անհամեմատ ծառայութիւն մատոյց աշխարհիկ լեզուին. Խրիմեան Հայրիկի Արծուի Վասպուրականն (1855—1864) Գաբրիէլ Վ. Այվազովսքւոյ Մասեաց աղաւնին (1855—1865). Գ. Սիմէոնեանցի Մեղու Հայաստանին (1857—1885). Տէրոյէնց պատուելւոյ Երեւակն (1857—1865). Էջմիածնի Արարատ ամսագիրն (1868—1885). Աբգար Յովհաննէսեանցի փոքր եռամսեայ հանդէսն եւ Արձագանքն (1876—1885). Մ. Մամուրեանի Արեւելեան Մամուլն (1880—1885). Գրիգոր Արծրունւոյն Մշակն (1870—1884)։ Իսկ մեր ժամանակաց մէջ ի լոյս կ'ընծայուին Երկրագունտ հանդէսն՝ զոր կ'հրատարակէ Ասիական ընկերութիւնն, Մասիս շաբաթաթերթն եւ Արեւելքն. Պասկ լրագիրն յերեւան՝ խմբագրութեամբ Վասակ Պապաջանեանի եւ այլն եւ այլն, եւ քանի մը հանապազօրեայ թերթեր Փունջ, Հայրենիք, Լոյս եւ այլն։

Բայց ազգային-գրական յառաջադիմութեան հիմնաւոր եւ ուղիղ պատրաստութիւն մը պիտի տային վարժարանք՝ յորս ուսանող մանկտին իւր լեզուին եւ մատենագրութեան եւ օգտաւէտ ուսմանց պարապելով՝ բեղնաւոր մտաց տէր՝ դուրս պիտի ելնէր այդ շէնքերու լուսաւոր սեմերէն, եւ այս նպատակաւ կանգնեցան Մեսրոպեան վարժարանն ի Զմիւռնիա, Ներսիսեանն ի Տփղիս, Ճեմարանն յՈւսկիւտար, Խալիպեանն ի Թէոդոսիա, Ս. Փրկչի վարժարանն յԵէտի-Գուլէ, Նուպար-Շահնազարեանն ի Խասգիւղ. Գէորգեանն յԷջմիածին. եւ աւելի մեր ժամանակներս Պէրպէրեան եւ Մէզպուրեան վարժարանք յՈւսկիւտար, Հայկական Կրթարանն յՕրթաքէօյ, Ընկերականն վարժարանն յԵրզնկա, Սանասարեանն ի Կարին, Կեդրոնական վարժարանն ի Վան եւ Միացեալ ընկերու-

թեանց կողմանէ յայլ եւ յայլ գաւառս հաստատուած վարժարաններն եւ այլն, եւ Մխիթարեանց բարձրագոյն վարժարաններն ի Պոլիս եւ այլուր։

Կրթական այս մեծ ջանքերն անշուշտ պսակուեցան եւ պիտի պսակուին ընծայելով ազգին գրագէտներ եւ գիտուններ՝ որք ազգային մատենագրութեան գործիչներն լինելու ազնուագոյն պաշտօնն ունին. չկարեմք լռել նաեւ զհաստատութենէ Ազգային Մատենադարանին որ ի Գալաթիա։

Անցնինք այժմ խօսիլ ԺԹ դարու մատենագրաց վերայ՝ յորոց ոմանք թէպէտեւ նախընթաց դարու մէջ յիշատակելոց հետ ժամանակակցաբար ապրած են, բայց իրենց բազմարդիւն կեանքն այսր քան զկէս դարուս երկարաձգուած լինելով՝ արժան կ'համարիմք դնել զանոնք ի շարս հեղինակաց ներկայ դարուս. սոնք են Հ. ՄԿՐՏԻՉ Վ. ԱՒԳԵՐԵԱՆ՝ իւր եղբայրն Հ. ՅԱՐՈՒԹԻՒՆ, եւ Հ. ԵՂԻԱ ՎԱՐԴԱՊԵՏ ԹՈՎՄԱՃԱՆ։

## Հ. ՄԿՐՏԻՉ Վ. ԱՒԳԵՐԵԱՆ

1174ին մինչ տասներկու տարեկան էր, իւր հօր անկիւրացի Աւգեր Հայրապետի ձեռամբ Ս. Ղազարու վանքն տարուեցաւ, ուր 80 տարիներ կրօնաւորութեամբ ապրեցաւ Միաբանութեան մէջ։ Քահանայ ձեռնադրուելէն վերջ (1786) 10 տարւոյ չափ դասախօսութիւն ըրաւ ի վանսն, յետոյ 15 տարի վերակացու եւ դաստիարակ էր պատանեաց եւ եղբարց, ութ տարի քարոզչութեան պաշտօն վարած է նաեւ ի Պոլիս, եւ 20 տարի ընդհանուր աթոռակալ եղաւ Մխիթարեան միաբանութեան Վենետկոյ։ Իւր այս բազմաժխոր զբաղմանց մէջ զարմանալի է որ երբեք իւր գրիչն չէ թողած իւր ձեռքէն 65 տարիներ շարունակ պարապելով ի թարգմանութիւնս եւ յերկասիրութիւնս, որոց մէջ գլխաւոր են Լիակատար վարք սրբոց 12 հատոր, Հայկազնեան բառգիրքն զորմէ արդէն խօսեցանք, եւ որ մեծ մասամբ իւր աշխատութիւնն է, նաեւ նոյնին համառօտութիւնն եղող Առձեռն բառարանն, Սենեկայի ճառերն, Կիկերոնի Յաղագս պաշտանից գործն, Մեծին Գրիգորի Հովուականին, Թասսոնի Իտալացւոյն Ապացոյցք կրօնի ջատագովական գրուածն եւ այլն։ Հայերէնէ ի Լատիններէն թարգմանած է նաեւ Հայոց հարց գրուածներն 4 մեծ հատորնե-

րու մէջ (*), եւ Փիլոնի Եբրայեցւոյ ճառերն․ բայց Եւսեբեայ Քրոնիկոնին լատին թարգմանութիւնն ծանօթ եւ պատկառելի ըրաւ զթարգմանիչն համայն Եւրոպիոյ առջեւ ։ Վենետկոյ Աթենէոն ճեմարանին կաճառորդ եւ Հռովմայ հնագիտական ընկերութեան անդամակից լինելով՝ Լատիներէն լեզուաւ գրած եւ խօսած է բանասիրական եւ հնախօսական այլեւայլ ճառեր ։

Գրեթէ դար մը ապրելով, յալեւորեալ հասակի կնքեց իւր բազմավաստակ կեանքն 92 տարեկան (1762—1854) ։

Իւր կրտսեր եղբայրն Հ. ՅԱՐՈՒԹԻՒՆ Վ. ԱՒԳԵՐԵԱՆ՝ իբրեւ լեզուագէտ մեծ համբաւ ունեցաւ, եւ Հայերէն լեզուն ուսոյց ոմանց յԵւրոպացւոց, յորս նշանաւոր էր Լորտ Պայրն Անգղիացի քերթողն ։ Հ. Յ. Վ. Աւգերեանի գրական երկասիրութիւնք են, Միլտոնի Դրախտ կորուսեալին արձակ թարգմանութիւնն գրաբար․ Հաւատով խոստովանիմ աղօթքին 24 լեզուէ տպագրութիւնն, եւ Լամբրոնացւոյ Ատենաբանութեան Իտալական թարգմանութիւնն իւր ջանիւք եղած են ։ Թողունք իւր բառարաններն Անգղ—ի Հայ. եւ Հայ—յԱնգղ. Գաղ— ի Հայ. եւ Հայ—ի Գաղիերէն եւ այլն, (1774—1854) ։

## Հ. ԵՂԻԱ Վ. ԹՈՎՄԱՃԱՆ

Բազմարդիւն մատենագիր՝ որ ունէր քերթողական եռանդուն միտք եւ բուռն ախորժակ՝ եւ հետեւողութիւն ազգային եւ օտար գեղեցկագիր մատենագրաց ։ Իւր կենաց մեծ մասն անցուց վանական միայնութեան մէջ, մէկ մասն ալ առաքելական քարոզութեամբ ի Պոլիս, եւ ի Թրանսիլվանիա ։ Յետոյ վանքին մէջ դասախօսութեան պաշտօն վարեց շատ տարիներ, եւ իւր պարապոյ ժամերուն մէջ կ՚ընթեռնոյր եւ կը քննէր Յունաց, Լատինաց եւ Իտալացւոց ընտիր օրինակագիրներն ։ Հայ գրականութեան մեծ ծառայութիւն մատուցած է Թովմաճան, իւր գլխաւոր թարգմանութեամբքն որք են, Հոմերոսի Եղիական եւ Ոդիսական դիւցազներգութիւններն յանգաւոր տաղաչափութեամբ, Վետա լատին եպիսկոպոսի Քրիստոսական անուն քերթուածն, Պլուտարքեայ Զուգակշիռքն վեց հատոր, Ոսկեբերանի հատընտիր ճառերն․ Արիստոտէլի Բնական պատմութիւնն ու Քաղաքավարութիւնն որոց թարգմանութիւնն անկատար մնացած է, Եւրիպիդէսի ողբերգու-

(*) Bibliotheca Patrum Armenorum.

թիւններէն մի քանին եւլն։ Իւր ինքնագիր քերթուածներն որ յոյժ սակաւաթիւ են, ցոյց կուտան սակայն իւր քերթողական հանճարոյն փայլն (1777—1847)։

Յիշենք նաեւ Վենետիկոյ միաբաններէն զՀ. ԵՓՐԵՄ ՍԵԹԵԱՆ (1791—1838) որոյ գլուխ վաստակոցն կ'համարուին Իրաւագիտութիւն անուն ընդարձակ գրուածն եւ Ճարտասանութիւնն. զՀ. ՄԻՆԱՍ ԲԺՇԿԵԱՆ (1777—1852) որ պատմական եւ լեզուագիտական աշխատասիրութիւններ թողած է, որպիսիք են, Պատմութիւն Պոնտոսի, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան, Քառալեզու Բառգիրք մը եւ բազմալեզու Քերականութիւն մը եւայլն. զՀ. ԻԳՆԱՏԻՈՍ ՓԱՓԱԶԵԱՆ (1764—1852) որ յօրինած է Եկեղեցական պատմութիւն մը եւ զանազան գրուածներ. զՀ. ՌԱՓԱՅԷԼ ԹՐԵԱՆՑ (+1858) որ ունի քանի մը ներբողական ճառեր ի գովեստ Թարգմանչաց եւայլն. իսկ Վիեննայի միաբաններէն զՀ. Սրապիոն Էմինեան՝ որոյ գլուխ գործոցն է բառարանն երեքլեզուեան (Գաղ-Հայ-Տաճկ.), թարգմանած է նաեւ Աւանկլինեայ Մտածութիւնն եւ Յիշատակարան Քանանայական վարուց անուն գործ մը։

Դարուս առաջին կիսուն մէջ պակսած են ի մէնջ երկու գրագէտ հայ բժիշկներ մին ՄԻՔԱՅԷԼ ՌԷՍՏԷՆ որ յԵւրոպա ըրած է իւր ուսումն, եւ գրած է երկհատոր Բժշկարան մը (+1845) իսկ միւսն է ԱՆԴՐԷԱՍ ՓՈՓՈՎԻՉ Սուչովացի բժիշկն որ յօրինած է Արուեստ երկայնակեցութեան օգտակար գործը։

## ՄԻՔԱՅԷԼ Վ. ՍԱԼԼԱՆԹԵԱՆՑ

Նախապէս Անտոնեանց միաբանութեան անդամ էր ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԴԱՊԵՏ ՍԱԼԼԱՆԹԵԱՆՑ, որ ապա ի Ռուսաստան երթալով Էջմիածնի միաբանութեան անդամ գրուեցաւ եւ Եպիսկոպոս ձեռնադրուեցաւ։ Մոսկուայի Ճեմարանին տեսչութեան եւ տպագրելի մատեններու քննչութեան պաշտօն վարեց. միանգամայն դասախօս էր Աստուածաբանութեան՝ փիլիսոփայութեան եւ հայկաբանութեան։ Իւր գրական տաղանդն ակներեւ կըտեսնուի իւր գրուածոց մէջ, որպիսիք են. Թամիրաս Քնարազուրկ, Խտրոց հաւատոյ եւայլն. Թողած է նաեւ Քերականութիւն մը, Ճարտասանութիւն, Տրամաբանութիւն եւ այլ բազմաթիւ երկասիրութիւններ։ Իւր մահն հանդիպած է դարուս առաջին կիսուն։

## ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎԵԱՆՑ

*Հայրենեաց նուիրեց իւր սրտառուչ քնարն, հեղինակելով բազմաթիւ քերթուածներ, որք թէպէտ ռամկօրէն լեզուաւ յօրինուած են, այլ անոնց մէջ ի վեր երեւցած իմաստից եւ զգացմանց վեհութիւնն ճշմարիտ քերթող մը կ'ներկայացունեն զինքն։ Խաչատուր Աբովեանց անյայտ եղած է 1848 ին։— Ցառաջ քան զկէս ներկայ դարուս իբրեւ ռուսահայ երգիչք կամ բանաստեղծք նշանաւոր էին նաեւ* ԱԼԱՄԴԱՐ ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱԺՏԷՐԽԱՆՑԻ, *որ իւր հանճարովն՝ որով գեղեցիկ երգեր արտադրեց՝ սիրելի եղաւ Եփրեմ կաթողիկոսին։ Մոսկուայի մէջ քահանայ ձեռնադրուելով՝ յետոյ առաջնորդ կարգեցաւ Վրաստանի։ Այլ եւ այլ վիշտեր կրելէ վերջ Նոր Նախիջեւանի մէջ հանդիպեցաւ իւր մահը* (1756—1834)։ ԱՂԲԱՐ ԱԴԱՄ *որ ծնաւ յԵրեւան. սա յոյժ ուսումնասէր էր ի մանկութենէ, բայց յաղքատութենէ բռնադատեալ՝ կօշկակարի քով մտաւ։ Արհեստին զբաղմանց մէջ իսկ ուսման հետամուտ լինելով, պարապոյ ժամերուն հայ՝ պարսիկ եւ թաթար լեզուաւ երգեր կը յօրինէր* (+1846). ՇԻՐԻՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ, *որ* 1827 *ին Երեւան գաւառի Կողբ քաղաքն ծնաւ, եւ երկու տարեկան հասակին՝ ծաղկի հիւանդութենէն կորոյս իւր երկու աչերն. թաթար լեզուաւ կ'յօրինէր իւր երգերն, բայց վերջը իւր բարեկամաց յորդորմամբ հայերէն լեզուաւ սկսաւ յօրինել եւ երգել։*

*Սոյա ժամանակակից կը համարուի նաեւ* ՂՈՒԿԻԱՆՈՍ *կարնեցի երգիչը։*

## ՄԵՍՐՈՊ ՍԱՐԿԱՒԱԳ ԹԱՂԻԱԴԵԱՆՑ

*Միաբան Ս. Էջմիածնի, որ մեծ համբաւ ունեցաւ իբրեւ քաջ մատենագիր՝ լեզուագէտ, կրօնագէտ եւ հրապարակագիր։ Երկար ժամանակ գաղթելով ի Կալկաթա, հոն ձեռնարկեց հրատարակել Ազգասէր անուն հանդէսն։ Իւր նշանաւոր երկասիրութիւններն են. Դիւցաբանութիւն Հնդկաց. Ճանապարհորդութիւն ի Հայաստան, Պատմութիւն Պարսից եւ այլն, գրած է նաեւ Սօս եւ Սոնդիպի, Տուշի, Վարդգէս մանուկ եւ այլ գողտրիկ վիպասանութիւններն* (+1854)։

*Թաղիադեանցէ տարի մը յառաջ վախճանած է* ՊՕՂՈՍ ՊԱՏՐԻԱՐՔ *Ադրիանապոլսեցի որ խոհական եւ գրագէտ անձ մ'էր. իբրեւ երկասիրութիւն յօրինած է, Զանազանութիւն հինգ դարուց, Թանգարան խրատու եւ այլ կրօնական գրուածներ։*

## ՆԻԿՈՂՈՍ ԶՈՐԱՅԵԱՆ

*Խասգիւղի վարժարանին նախկին աշակերտներէն էր* ՆԻԿՈՂՈՍ ԶՈՐԱՅԵԱՆ՝ *որ իւր ժամանակին ազգային գրագիտաց մէջ նշանաւոր հանդիսացաւ․ ունի կարեւոր գրուածներ աշխարհիկ լեզուաւ, տնտեսական՝ բարոյական եւ այլ նիւթոց վրայ ճառող։ Ուշադրութեան արժանի են իւր* Ընթերցասիրութիւն, Նկարագիր ազգային դաստիարակութեան, Տնտեսական տեղեկութիւնք, *եւ այլ գրուածներ* (+1859)։

## ԿԱՐԱՊԵՏ Վ. ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆ

*Միաբան Ս. Էջմիածնի, պատմաբան եւ կրօնագէտ, որ գլխաւոր երկասիրութիւնք են,* Հերֆուրմն դաշանց թղթոյն, Կրօնագիտութիւն *եւ Ռուսերենէ թարգմանեալ քանի մը կրօնական գործեր։ Շահնազարեան վարդապետն արդարեւ հայ եկեղեցականութեան փառքն լինելու ամեն տրամադրութեամբ օժտեալ անձ մ՚էր, բայց իւր փոքր ինչ անկախ եւ քննադատական ոգին կարի երկիւղածներու խղճին առջեւ գայթակղութեան քար մ՚եղաւ։ Ազգային մատենագրութեան մեծ ծառայութիւն մատոյց Շահնազարեան, երբ ի Փարիզ հաստատուած ատեն* Շար հայ պատմագրաց *մակագրով հետզհետէ հմտալից ծանօթարանութեամբք հրատարակեց Ստեփաննոս Օրբէլեանի, Ղեւոնդ Երիցու, Մովսէս Կաղանկայտուացւոյ, Մեծոփեցւոյն, Սմբատայ, եւ Վահրամ վարդապետի պատմագրութիւններն․ գեղեցիկ ձեռնարկութիւն մ՚էր նաեւ* Երկրագունտ *հանդէսն՝ զոր 1864 ին սկսաւ հրատարակել ի Մանչէսթըր, եւ զոր իւր մահուանէն վերջ շարունակեցին Նուպար-Շահնազարեան վարժարանի յառաջադէմ աշակերտներն։ Շահնազարեան գաղիերէն լեզուաւ յօրինած է նաեւ քանի մը երկեր, ինչպէս են,* Տրագիր պատմութեան Հայոցն *եւ Ղեւոնդ Երիցու պատմագրութիւնն զոր ի գաղիերէն թարգմանելով ծանօթացուցած է Եւրոպիոյ*։ (+1865)

*Շահնազարեանէ տարի մը վերջ վախճանեցաւ* ՄԱՏԹԷՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ՝ (+1866) *որ իբրեւ մատենագիր թողած է 12 կտոր երկասիրութիւններ, յորոց յիշենք միայն՝* Բարի մարդ եւ բարի քրիստոնեայ, Ներածութիւն աստուածաբանական գիտելեաց, Հանդիսարան ուղղափառութեան Հայաստանեայց եկեղեցւոյ *եւ այլն*։

# Հ. ԱՐՍԷՆ ԿՈՄԻՏԱՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

Վենետկոյ միաբանութեան հոյակապ անձնաւորութիւններէն մին՝ որ ԺԹ դարու մատենագրութեան մէջ գոգցես նոր դարագլուխ մը բացաւ իւր երկասիրութեամբք կամ մանաւանդ թարգմանութիւններովն, որք գրաբար լեզուի հրաշակերտներն կը համարուին։ Իբրեւ թարգմանիչ ի վեր է Բագրատունին քան զայլ ժամանակակիցս իւր, իբրեւ բանաստեղծ ունի ճարտար գրիչ եւ սիրտ խորազգած, եւ իբրեւ իմաստասէր՝ սեղմ եւ կորովի ոճ մը։

Քաջ ուսումնասիրած էր հելլէն եւ լատին լեզուներն, եւ մինչեւ իւր կենաց վերջին օրերն չդադրեցաւ Աստուածաշունչ եւ Հոմերոս հաւասարապէս վերծանելէ, եւ հայերէն լեզուի ուսման հետամուտ ճգամբ՝ չբաւականանալով Ս. Ղազարու վանաց ճոխ մատենադարանին մէջ գտնուած ձեռագիրներն խնամով ընթեռնուլ՝ երկար պանդխտութիւն մ'ալ ըրած է ի Փարիզ հայերէն գրչագիրներ քննելու համար։

Երիտասարդութեան հասակէն սկսեալ յօրինած է քերթուածներ՝ որք ընդհանրապէս յանգաւոր են, եւ որոց մէջ իբրեւ զոյգ մը գոհար կը փայլին Դաշտիկն յաւար եւ Մահ սոխակին ընտիր բանաստեղծութիւններն։ Յետ ժամանակաց՝ 1847ին՝ երբ Վիրգիլեայ Մշակականաց եւ Որատիոսի Արուեստ քերթողականին դեղեցիկ թարգմանութիւնքն ի լոյս ընծայեց, ամէն քերթուածոց համար բացարձակապէս ընտրեց հայկական չափն՝ առանց յանգի, եւ այդ չափաւ ոչ միայն թարգմանեց Հոմերոսի Իլիականն, Միլտոնի Կորուստ դրախտին, Փոփըլեայ Գերեզմանաքն, եւ աւելի սուղ չափմամբ Սոփոկլէսի, Վոլդէրի, Ռասինի եւ Ալֆիերեայ Ողբերգութիւնքն, այլ եւ դրուագեց Հայկ Դիւցազն վիպասանական ընտիր ու ընդարձակ քերթուածն՝ որ քերթողին գլուխ գործոցն է։ Իմաստասիրական գրուածոց մէջ տրամաբանական լեզուի յատակ ոճ մը կառնու իւր գրիչն, ինչպէս ցոյց կուտայ Սուաւէի Տրամաբանութեան թարգմանութիւնն, նաեւ Արուեստ բարւոք խորհելոյ եւ բարւոք կեցոյ ինքնագիր գրքոյկն։ Ոչինչ ընդհատ ճարտար հանդիսացաւ Հ. Արսէն արձակ գրուածոց թարգմանութեան մասին, եւ իւր անզուգական գրչին արդիւնքն են Պոսիւէի Դամբանականաց, Մասիլոնի փոքրիկ քառասնորդաց, Դեմոսթենի՝ Եսքինեսի ու Կիկերոնի ճառից, Թէոփրաստեայ Նկարագրոց թարգմանութիւնք։

Բագրատունին իւր ծերութեան հասակին քերթողական պարապմանց հրաժեշտ տալով ընտրեց զպատմականն, բայց երբ ձեռնարկեց իբրեւ առաջին պատմական գործ թարգմանել Կեսարու Յիշատակարանք անուն գրուածն, դեռ յաւարտ չհասած՝ մահն խլեց զինքն իւր Միաբանութենէն ի հասակի 76 ամաց (1790—1866)։

## Հ. ԵԴՈՒԱՐԴ Վ. ՀԻՒՐՄԻՒԶ

Բագրատունւոյն աշակերտ է Հ. Եդուարդ Հիւրմիւզ՝ որ իւր վարդապետին գրական փառացն ու դրից զուգահաւասար կ'երեւի միշտ, աւելի իբրեւ թարգմանիչ քան իբրեւ քերթող։ Մեր գրաբար մատենագրութիւնն շատ ինչ կը պարտի Հիւրմիւզեանի, որ իւր երկարժամանակեայ կեանքն անցուց գրական աշխատասիրութեամբք. իւր երկոց մեծագոյն մասն թարգմանութիւնք են՝ այնպիսի գողտր ու նկարէն ոճով յօրինուած՝ զի կարելի չէ առանց հրապոյր զգալու ընթեռնուլ զայնս։ Ոչ երբէք հեռանալով հայերէն բացատրութեանց հարազատութենէն՝ իւր թարգմանութեանց մէջ դարձուածոց ճարտարութեամբ միշտ նորութիւն մը եւ թարմութիւն կուտայ լեզուին, մանաւանդ նկարագրական կամ բանաստեղծական գրուածոց մէջ թէ յարձակ եւ թէ ի չափաւ բանս. վկայ են այսմ Ֆենելոնի Տելեմաքին, Պերնարտէն-Տը-Սէն Բիէրի Պօղոս եւ Վիրգինիա վիպասանութեան, Ֆլորիանու Նումա պոմպիլիոսին, Վիրգիլեայ Ենէականին եւ Լ. Ռասինի ի Կրօնս քերթուածոյն ընտիր թարգմանութիւններն։

Բաց յայս գործերէն՝ Հ. Եդուարդ թարգմանած է նաեւ Պարթելըմի գաղիացւոյն Ուղեւորութիւն Անաքարսեայ գործն, Ռոլէնի Հնախօսութիւնն, Մանծոնի իտալացւոյն Նշանեալքն, Գոթէն Գաղիացի տիկնոջ Աքսորականքն, Մեթաստասեայ եւ այլոց թատերական քերթուածներն, Տակիտոսի Տարեգիրքն, Փեդրոս Լատին քերթողի Առակքն եւ ուրիշ աստուածաբանական գործեր թէ գրաբար եւ թէ աշխարհաբար լեզուաւ։ Իւր կենաց վերջին օրերուն պարապած է թարգմանել Պօսիւէի, Մասիլեոնի, Պուրտալուի ի պատիւ Տիրամօր կուսին յօրինած ներբողական Քարոզներն։ Իսկ Հիւրմիւզի ինքնագիր երկասիրութեանց մէջ գլխաւոր տեղ մը կը բռնեն Բուրաստանք անուն 4 երգերու բաժնուած սիրուն քերթուածն, զոր Տըլիլ Գաղիացւոյն համանուն երկասիրութեան հետեւողութեամբ յօրինած է, եւ այն զանազան Քերթուածներն՝ յորս յայտ

յարգի են Թուղթերն եւ Հովուական գեղօններն. այս վերջիններն թէ՛ ոճոյ եւ թէ պարզութեան կողմանէ կը յիշեցունեն զՀովուականն Վիրգիլեայ զորս ինքն իսկ Հիւրմիւզ թարգմանած է։ Գրած է նաեւ Առձեռն Քերականութիւն, Դիցաբանութիւն, եւ Արուեստ բանաստեղծութեան, տաղաչափած եւ լուսաբանած է Յոբայ գիրքն, յօրինած է նաեւ Մաղթանք չափաւ, Օրհնութիւնք, Առակք Վրոյրի եւայլն (1791—1878)։

Հիւրմիւզեանի հետ փութանք յիշել իւր հարազատ երէց եղբայրն Հ. ԳԷՈՐԳ ՀԻՒՐՄԻՒԶԵԱՆ, որ աշխատակից եղած է իւր եղբօր մանաւանդ ի թարգմանութեան Հնախօսութեանն Ռոլէնի. ունի նաեւ քանի մը Քերթուածներ, եւ գեղեցիկ թարգմանած է Գոռնէյլի Պոլիկտոս եւ Ռասինի Գոթողիա անուն թատերգութիւնները, նաեւ Պուրտալուի Հոգեւոր առանձնութիւն գրուածն, եւ Բագրատունւոյն յանձնարարութեամբ ինքն շարունակած է նորա թերի թողած Յիշատակարանաց թարգմանութիւնն (+1878)։

## ՄԻՔԱՅԷԼ ՆԱԼԲԱՆԴԵԱՆՑ

Հանրածանօթ ռուսահայ բանաստեղծ եւ հրապարակագիր, որ իւր եղերական մահուամբն յաքսորանս՝ տխուր ու անջինջ յիշատակ մը թողուց իւր հայրենակցաց եւ ազգայնոց սրտին մէջ։ Աշակերտած է Տէր Գաբրիէլ Պատկանեանի՝ ռուսահայոց քերթողահօր, եւ յետոյ ուսուցչական վկայական ստանալով Ս. Փեդրբուրկի կայսերական համալսարանէն, երկար ատեն դասախօսութեան պաշտօն վարեց Մոսկուայի Լազարեան ճեմարանին մէջ։

Իբրեւ բանաստեղծ Նալբանդեան թողած է հոգեչունչ եւ անմահ երգեր, որպիսիք են, Ազատն Աստուած. Իտալացի աղջկան երգն, Երազն եւայլն, եւ իբրեւ հրապարակագիր փայլած է Հիւսիսափայլի (1) էջերուն մէջ, կեղծ ստորագրութեանց տակ իւր անկեղծ սկզբանց ու զգացմանց թարգման կանգնելով։ Զանազան արձակ գրուածոց մէջ՝ զորս երկասիրած է Նալբանդեան, գլխաւոր տեղ մի կ'բռնէ Երկրագործութիւն անուն ընկերաբանական գործն. Նաեւ նախնեաց քանի մը գործերն աշխարհաբարի վերածելով հրատարակած է այլ եւ այլ ծանօթութեամբք (1830—1866)։

---

(1) Այս ամսագիր հանդէսին (1858—1865) խմբագիր էր Ստեփաննոս Նազարեանց։

## ՄԿՐՏԻՉ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ

*Մխիթարեանց Մուրատ-Ռափայէլեան վարժարանին նշանաւոր աշակերտներէն մին՝ որ հմուտ էր Հայերէնի, Գաղիերէնի, Իտալերէնի եւ այլն։ Իւր գրական բարձր տաղանդովն արդի աշխարհիկ մատենագրաց կամ քերթողաց մէջ առաջին տեղն կ'գրաւէ։ Իւր քերթուածներէն ոմանս յաշակերտութեան իւրում յօրինած է, իսկ մեծագոյն մանաւանդ թէ գեղեցկագոյն մասն գրած է աստ ի Պոլիս դասախօսութեան պարապելու ատեն, եւ այդ երգոց մէջ կ'ցոլան քերթողին մելամաղձիկ զգացումներն ու անթարգմանելի խանդը։*

*Ունի նաեւ թատերական երկասիրութիւններ, որոցմով իրաւամբ ճանչցուած է հայկական թատրոնին գլխաւոր գործիչներէն մին. այդ թատերախաղից մէջ՝ որք մեծաւ մասամբ ազգային նիւթերու վրայ պատրաստուած են, յաջողած է բանաստեղծն կրից լեզուն եւ բարուց նկարագիրն անթերի ցոյց տալ, բայց ոճն դանդաղ կերպարան մ'առած է, եւ այլազգ չկարէր լինել, քանի որ հեղինակն Գոռնէյլի, Ռասինի եւ այլ դասական* (Classique) *մատենագրաց գրուածոց հետեւողութեամբ յօրինած է զայնս։ Պէշիքթաշլեան գրած է նաեւ քանի մը ճառեր, որ իւր միւս գրուածոց հետ հրատարակուած են իւր Մատենագրութիւնք Պեշիկթաշլեանի մակագրով գործոյն մէջ* (1827—1868)։

## ՊԵՏՐՈՍ ԴՈՒՐԵԱՆ

*Աղքատիկ յարկի մը տակ ծնաւ* ՊԵՏՐՈՍ ԴՈՒՐԵԱՆ, 1851 *մայիս ամսոյ մէջ, եւ երկաթագործի մը որդի լինելով՝ ինչպէս էր Ցունաց Սոփոկլէս թատերգակ քերթողն, անոր նման պարապեցաւ թատերական երկասիրութեանց։ Հազիւ եօթնեւտասան ամեայ՝ թողուց Ճեմարան վարժարանն՝ ուր չափաւոր ուսում մ'առածէր։ Դեռ եւս աշակերտ՝ կ'յօրինէր թատերախաղեր՝ յորս իւր գրչին նախընծայ արդիւնքն է Վարդ եւ Շուշան անուն գողտրիկ թատերգութիւնն։*

*Մինչեւ իւր քսան տարեկան հասակն չդադրեցաւ միշտ գրելէ. այսպէս երեք տարիներու կարճ միջոցին մէջ յաջողեցաւ գրական արդիւնաւոր կեանք մը ընչել։ Հայկական թատրոնի վերածնութիւն մը բերելու գեղեցիկ ձեռնարկութեամբ՝ վիպական* (Roman-

tique) եղանակն ընտրելով՝ պատրաստեց իւր Թատրոն կամ Թշուառներ ժամանակակից թատերախաղն, որ առաջին նոյն եւ վերջին փորձն եղաւ։

Մահաբեր ախտի մը դժնդակ նախազգացումն ներշնչեց գեղահաս քերթողին յօրինել իւր վսեմ տաղերէն մէկ քանին՝ ինչպէս Ցուշքն, Լճակն, Սիրելն, Դժգոյն, Տրտունջքն, Իմ ցաւը, Իմ մահը՝ զոր եւ վերջապէս ողջունեց 1872 յունվար 21 ին։

Դուրեանի սակաւակեաց օրերն ունեցաւ նաեւ ՅԱԿՈԲԻԿ ՄԻՐԵԱՆ (1857—1876) հանճարեղ պատանին՝ որ Շահնազարեան վարժարանի աշակերտներէն էր, եւ որոյ աշխատասիրութեանց նախընծայ խայրիքն եղաւ Նախաշաւիղ գիտութեանց եւ արուեստից անուն գործն։

## ՄՍԵՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ ՄՍԵՐԵԱՆՑ

Ծնաւ ի Զմիւռնիա, բայց իւր կենաց մեծագոյն մասն անցուց ՚ի Մոսկուա՝ 25 տարիներ կրօնագիտութիւն դասախօսելով ի Լազարեան ճեմարանի. հմուտ էր աստուածաբանութեան եւ եկեղեցական պատմութեան, ինչպէս կ՚վկայեն իւր քանի մը գործերն. Հաւատապաշտում, Հրահանգ քրիստոնէական հաւատոյ, Պատմութիւն կաթողիկոսաց Էջմիածնի ի Սիոնէ մինչեւ ցՅովհ. Ը.։ Երկար ժամանակ եւս խմբագրութիւն ըրած է այլ եւ այլ հանդէսներու (1808—1873)։

## ՆԱՀԱՊԵՏ ՌՈՒՍԻՆԵԱՆ

Բժիշկ՝ իմաստասէր եւ ճարտարախօս, որ իւր ուսումն առաւ ի Բարիզ 1848 ի յեղափոխութեան ժամանակ։ Այդ յեղափոխութեան սկզբանց պաշտպան կանգնելով՝ մեր ազգային Սահմանադրութեան հիմն դնելու նախաձեռնարկն ընողներէն մին եղաւ։ Աշխարհիկ լեզուի ազնուացման համար ալ ջանքեր ըրաւ եւ այդ նպատակաւ հրատարակեց Ուղղախօսութիւն՝ զորմէ խօսեցանք ի վերեւ անդր, բայց յայդմ իւրեան գործակից եղող Օտեան Գրիգոր էֆէնտիի խոստովանութեան համեմատ, եթէ Ռուսինեան իւր ձեռամբ սրբագրած այդ գործոյն երկրորդ տիպն կարենար հրատարակել, իրենց քաւութիւնն պիտի լինէր այն առաջի հայկական մատենագրութեան։ Ռուսինեանի գլխաւոր հեղինակութիւնքն են 1854 եւ 1872 ի կրկին Տարեցոյցներն, Տուրքի վրայ խօսած ճառն

եւ երեսփոխանական ժողովոյ մէջ ըրած ատենաբանութիւնն․ իսկ իւր թարգմանութիւններն են Էմէ Մարդէնի Մարց դաստիարակութիւնն, Հիւկոյի ատենաբանութիւնն եւ նոյն բանաստեղծին Ռիւյ Պլաս թատերախաղն․ այս վերջինն հրատարակուած է միայն ։ Ռուսինեանի մահուանէն յետոյ՝ թարգմանութեամբ Գ․Ա․Էթմէքճեանի հրատարակուեցաւ նաեւ Դասագիրք փիլիսոփայութեան համառօտ գրուածն՝ զոր ինքն Ռուսինեան գաղիերէն յօրինած էր, երբ դասախօս էր փիլիսոփայութեան եւ բժշկական բարոյագիտութեան ի Կայսերական բժշկական ուսումնարանին Կ․ Պոլսոյ (+1876)։

## Հ․ ԿՂԵՄԷՍ Վ․ ՍԻՊԻԼԵԱՆ

Վիէննայի Մխիթարեան միաբանութեան նշանաւոր եւ գործունեայ անդամներէն մին էր Հ․ ԿՂԵՄԷՍ ՍԻՊԻԼԵԱՆ․ պատմաբան, հնախոյզ եւ դրամագէտ՝ որ մասնաւորապէս ուղեւորութիւններ ըրաւ ի Հայս, եւ հայկական դրամներ հաւաքելու եւ դասաւորելու տաժանելի եւ գովելի աշխատութիւնն յանձն առնելով՝ յօրինեց բազմաթիւ հնագիտական գործեր հայերէն եւ գաղիերէն լեզուաւ յորոց ոմանք լոյս տեսան․ իբրեւ պատմական գործ թողած է նաեւ հետեւեալ աշխատասիրութիւններն․ որք են, Փեռնանդ Գորթէզ կամ Մեքսիկոյի առնումն որ շարունակութիւն մ'է Քր․ Կոլոմբոս անուն ազատ թարգմանութեամբ յօրինած երկասիրութեանն․ Տրդատայ վերջին օրերն եւայլն։ Իւր սովորական հետախուզութեանց պարապելու նպատակաւ ի Տիգրանակերտ ուղեւորելով հոն մեռաւ 1878 ին։

Սոյն թուականին մեռած է նաեւ ԱԲԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ Միաբան Էջմիածնի, որ գրած է Պատմութիւն Մենաստանին Հառիճոյ ի Շիրակ․ Պատմութիւն Ժողովոց Հայաստանեայց Եկեղեցւոյ եւ այլն։

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ՆԱԶԱՐԵԱՆՑ

Ռուսահայ գրագիտաց մէջ հմտութեամբ եւ հանճարով բարձր տեղ մը բռնեց Ստեփաննոս Նազարեանց որ ծնած էր ի Խոյ քաղաքի 1811 ին։ Իւր ուսումն ըրաւ ի Լազարեան ճեմարանի, եւ դասակից էր Խաչատուր Աբովեանի․ յետոյ ի նմին ճեմարանի դասախօս եղաւ Արեւելեան լեզուաց եւ փիլիսոփայութեան։

Իւր գրական աշխատասիրութիւնք են Հիւսիսափայլ հանդէսն, Վարդապետարան կրօնի, Հանդէս նոր հայախօսութեան եւ զանազան բանասիրական ճառեր եւլն (+1879):

## ԳԱԲՐԻԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՅՎԱԶՈՎՍՔԻ

Նշանաւոր պատմաբան եւ լեզուագէտ՝ որ Վեննետկոյ Միաբանութեան անդամ լինելով՝ 1856ին դարձաւ յիւր մայրենի եկեղեցին: Իւր բազմաթիւ երկասիրութիւններն զորս հրատարակեց թէ Ս. Ղազարու վանքն եւ թէ յէջմիածին բնակած ատեն՝ հաւասարապէս նպաստեցին թէ գրաբար եւ թէ աշխարհիկ մատենագրութեան. իւր գլխաւոր գործերն են. Պատմութիւն Ռուսաց, Պատմութիւն Օսմանեան պետութեան. Ուղղագրութիւն լեզուին հայոց, Խանգարմունք հայկաբանութեան, Լսարան կենցաղօգուտ գիտելեաց, Հազար եւ մի առակաւոր բանք եւայլն: Թարգմանած է նաեւ, Յանոս կամ Յաղագս անսխալութեան պապին, Տրոդ գաղիացւոյն խորհրդածութիւնք, Ռուսաց նշանաւոր առակախօս Քռիլովի Առակներն ճարտար եւ բնական լեզուաւ. ասոնցմէ զատ իւր վերջին երկասիրութիւններէն մին եղաւ Միշոյ գաղիացի քահանային Թէ ինչպէս Հռովմէական Եկեղեցին ոչ եւս է ուղղափառ Եկեղեցի անուն գրուածոյն թարգմանութիւնն: Այվազովսքի ծերութեան հասակին մէջ կնքեց իւր բազմավաստակ կեանքն 1882ին:

Իւր հետ յիշատակենք նաեւ զՍԱՐԳԻՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԹԷՈԴՈՐԵԱՆ որ նոյնպէս դարձաւ ի ծոց Հայաստանեայց եկեղեցւոյ, եւ հրատարակեց չորս ընդարձակ հատորներու մէջ ամփոփուած Պատմութիւն Հայկազեան եւ Մուրատեան վարժարանաց, նաեւ համառօտ Պատմութիւն անցից Մուրատեան վարժարանի. Պարտք եւ իրաւունք եւ այլն (1783—1877):

---

Ասոնցմէ վերջ Ազգն կորոյս իւր գրագէտ եկեղեցականաց մէջէն զՎԱՀԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ ԲԱՍՏԱՄԵԱՆՑ՝ միաբան էջմիածնի եւ առաջնորդ Գայիանեանց վանուց, օրէնսգէտ եւ բանասէր, որ Մխիթար Գոշի Դատաստանագրոց վերայ գրած է հմտալից տեսութիւններ՝ որք նախապէս Արարատ ամսագրի մէջ երեւցան եւ յետ իւր մահուան հրատարակուեցան էջմիածնի տպարանէն առանձին հատորով բնագրին հետ (+1882). զՆԵՐՍԷՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՎԱՐ-

ԺԱՊԵՏԵԱՆ (1837—1884) պատրիարք Կ. Պոլսոյ, կրօնագէտ եւ գեղեցկախօս, որ 1864 ի Կրօնական ժողովոյ ատենապետ եղած ատեն՝ ընդդէմ անհաւատութեան հրատարակեց տետրակ մը Քրիստոսի սուրբ եկեղեցին եւ անոր հակառակորդներն մակագրով, եւ յետոյ 1874 էն մինչ առաջնորդ էր Նիկոմիդիոյ գաւառին՝ հրատարակեց իւր Ուսումն համաբարբառ Աւետարանի գրուածն. զՍԱՐԳԻՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՋԱԼԱԼԵԱՆՑ որ գրած է Ճանապարհորդութիւն ի Հայաստան ընդարձակ գործն եւ այլ եւ այլ մանր գործեր. զՀ. ՅՈՎՍԷՓ ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱԹԸՐՃԵԱՆ անդամ Վիեննայի Մխիթարեան Միաբանութեան, որ նշանաւոր էր իւր հմտութեամբն եւ մատենագրական բարձր կարողութեամբ. իւր գլխաւոր երկասիրութիւնք են. Տիեզերական պատմութիւն մը (Հին եւ Միջին ժամանակք), Պատմութիւն մատենագրութեան Հայոց (մասն Ա.) եւ քանի մը կրօնական գրուածներ. Թարգմանած է նաեւ Քսենոփոնեայ Կիւրոսի խրատք եւ Կուինտոս Կուրտիոսի՝ Վասն գործոց եւ արութեանց մեծին Աղեքսանդրի գրուածներն (+1882). զՀ. ԱՐՍԷՆ ՎԱՐԴԱՊԵՏ ՍԻՒՔՐԵԱՆ՝ որ սահմանուած էր Վենետկոյ միաբանութեան մեծ անձնաւորութիւններէն մին լինել, բայց երիտասարդ հասակի մէջ մահն խլեց զինքն իւր գրական գեղեցիկ առաջադրութիւններէն (+1883). իւր երկասիրութիւն թողած է միայն Եւրիպիդեայ Աղերսաւորք թատերախաղին թարգմանութիւնն, եւ բազմավէպ հանդիսի մէջ հրատարակուած քանի մը պատմական ընդարձակ յօդուածներ նաեւ Խորենացւոյ աշխարհագրութեան Գաղղիերէն թարգմանութիւնն. զԵՐԵՄԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍ Տ. ՍԱՐԳՍԵԱՆ (+1885) որ բաց ի Հայրենասիրութիւն Հայոց գեղեցիկ գործէն՝ թողած է նաեւ անտիպ երկասիրութիւններ։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

(Այս վերնագրին տակ կը փութամք ազգային մանկտւոյն ծանօթացնել՝ ազգին մէջ մատենագրական արժանեօք համբաւաւոր հանդիսացող եւ իրենց գրիչն օգտակարապէս ազգային յառաջդիմութեան նուիրելու գործունէութեան մէջ եղող անձանց անունները՝ առ ընթեր դնելով իրենց գլխաւոր գործոց յիշատակութիւնն: Ինչպէս ամբողջ գործոյս ընթացից մէջ նոյնպէս եւ ի Յաւելուածիս պիտի փութամք յիշատակել ազգին գիտնոց դասը կազմող եւ սակայն գրագիտական հանգամանաց տէր ճանչցուած անձանց անուանքն ու գործերը ։ )

ԱԶԳԱՅԻՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՀԱՐՔ (*ի Տաճկահայս*). — Խրիմեան հայրիկ, *Հրաւիրակ Արարատեան եւ Հրաւիրակ երկրին աւետեաց քերթուածներն*, *Դրախտի ընտանիք*, *Սիրաք եւ Սամուէլ*, *Մարգարիտ արքայութեան երկնից*, *Խաչի ճառն եւ այլն*. Մելքիսեդեկ արքեպիսկոպոս Մուրատեան, *Եկեղեցական պատմութիւն*, *Պատմութիւն Նոր կտակարանի*, *Կրթարան աւետարանական բանից եւ այլն*։ Խորէն եպիսկոպոս Լուսինեան, *Վարդենիք*, *Քնար պանդխտին*, *Ստուերք հայկականք*, *Նախնական եւ կրթական քրիստոնէականք*, *Դաշնակք Լամարթինեայ* (*թարգմանութիւն*) *եւ այլն*։ Մատթէոս եպիսկոպոս Իզմիրլեան, *Հայրապետութիւն Հայոց*։ Խորէն եպիսկոպոս Աշըգեան, *Տրամաբանութիւն*, *Վարդապետարան եւ այլն*։ Գարեգին վարդապետ Սրուանձտեանց, *Շուշան Շաւարշանայ* (*թարգմանութիւն*) *Գրոց եւ Բրոց*, *Հնոց եւ նորոց*, *Մանանայ*, *Թորոս աղբար 2 մասն*, *Համով հոտով եւ այլն*։ Վահան վարդապետ Պարտիզակցի, *Յիսնակի առակք 2 հատորիկներ*։ Սահակ Վ. Խապայեանց, *Միաբան Ս. Երուսաղէմի*, *Տիեզերագրութիւն*, *Պատմութիւն կտակարանաց եւ այլն*։ Մաղաքիա վարդապետ Օրմանեան, *քանի մը Բանախօսութիւններ եւ Դամբանականներ*։ Սուքիաս վարդապետ Պառոնեան, *զանազան ընդարձակ յօդուածներ եւ քննական տեսութիւն մը Հայկական նշանագրոց վերայ*։ Արիստակէս Վ. Տ. Սարգսեանց, *Պանդուխտ վանցին եւ այլն*։ Տ. Յովհաննէս քահանայ Հիւնքեարպէյէն-

տեան, *Ստուգաբանական բառագիրք մը՝ որոյ տպագրութիւնն դեռ յաւարտ հասած չէ*։ Տ. Յովհաննէս քահանայ Միրեան, *Յիշատակարան*, *Աշխարհաբար Առօրագիրք ժամագրոց*։ Տ. Սահակ քահանայ Տ. Սարգսեան *Քննական կրօնագիտութիւն եւ ուրիշ մանր գործեր*։ *Մեր մէջ դեռ կան գրական անվիճելի արժանեաց տէր եկեղեցականներ՝ որք են*։ Յովսէփ վարդապետ Այվազեան, Եղիշէ վարդապետ Այվազեան, Տաճատ վարդապետ Ոսկան, Յովհաննէս վարդապետ Արշարունի *եւլն*։

— (*Ի Ռուսահայս*) Ծերունին Տ. Գաբրիէլ Պատկանեան *որ բազմաթիւ քերթուածներ յօրինած է, ինչպէս. Հայկերգ, Արամերգ, Արայ Գեղեցիկ, Առնակ եւ Կարդոս, Տիգրան եւ Վահագն, Անուշաւան, Փառնակ եւ Զաւան, Մահ Պարէտի, Շաւարշ եւ Պարոյր եւ այլն (դիւցազներգութիւնք), Հռիփսիմէ, Սանդուխտ, Դաւիթ եւ Գողիաթ (Թատերգութիւնք) եւ այլն*։ Վահրամ եպիսկոպոս Մանկունի՝ *որ ունի քանի մը գրուածներ, եւ այլն*։

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՀԱՅՔ (*Վենետիկոյ*) Հ. Ղեւոնդ Ալիշան՝ *որ բաց ի պատմական եւ աշխարհագրական գրուածներէ ունի նաեւ Նուագք 5 հատոր քերթուածներ, Յուշիկք Հայրենեաց Հայոց 2 հատոր, Շնորհալի եւ պարագայ իւր, Ընդ եղեւնեաւ եւ զանազան թարգմանութիւններ*։ Հ. Աբրահամ Ճարեան՝ *որ թարգմանած է Սալլուստիոսի Կատիլինեան դաւակցութեան եւ Յուգուրթեան պատերազմին պատմութիւններն, Տակիտոսի Ակրիգողա, Գերմանիա եւ Հռետորք անուն գործերն, Եւսեբիոսի Եկեղեցական պատմութիւնն եւ այլն. յօրինած է նաեւ Երկրաչափութիւն մը, եւ Պատմութիւն Գաղղիացւոց 2 հատոր*։ Հ. Յակոբոս Վ. Իսավերտէնց, *Լճակին ձկնորսը (երեկոյեան ժամուց խորհրդածութիւնք) Պատմութիւն Փրանկ—Բրուսական պատերազմին, Պատմութիւն քաղաքական խռովութեան ի Գաղղիա եւ այլն. եւ զանազան ընդարձակ յօդուածներ ի Բազմավէպ հանդիսի*։ Հ. Գարեգին Վ. Զարպհանալեան, *Պատմութիւն Հայերէն դպրութեանց 2 հատոր, Պատմութիւն մատենագրութեան Միջին եւ Նոր դարուց յարեւմուտս 2 հատոր, Պատմութիւն մատենագրութեան Յունաց՝ Հռովմայեցւոց եւ հարց եկեղեցւոյ, Մայր կամ Առաջին՝ դաստիարակ մանկութեան*։ Հ. Սամուէլ Վ. Գանթարեան, *Տարերք հռետորական արուեստի Ֆիլոնի Գաղղիացւոյն, Առաջին մտածութիւնք բանաստեղծականք Լամարթինի (թարգմ.)*։ Հ. Գարեգին Վ. Քուշնէրեան, *Ծաղկաքաղ Առակք*։ Հ. Օգսենտիոս Վ. Գուրգէնեան, *թարգմանած է Ֆրէսինուի Պաշտպանութիւն Քրիստոնէա-*

կան հաւասոց 2 հատոր, եւ թարգմանաբար յօրինած է Տարերք իմաստասիրութեան 5 հատոր: Հ. Մանուէլ Վ. Քաջունի, որ բաց ի գիտական աշխատասիրութիւններէ՝ որք են Արուեստաբանութիւն, Տարրաբանութիւն, Բնաբանութիւն, Մեքենաբանութիւն եւ այլն, յօրինած է նաեւ Հնախօսութիւն Հայաստանի, եւ թարգմանած է այլեւայլ գործեր: Հ. Ներսէս Վ. Ծնտոյեան, Առձեռն ժամանակագրութիւն, Պատմութիւն արեւելեան հին ազգաց, եւ քննադատական քանի մը յօդուածներ ի Բազմավէպի: Հ. Դաւիթ Վ. Նազարէթեան, Հատընտիր յաստուածային տեսչութենէ Տանդէի Աղիկիերեայ (Թարգ.) եւ ուրիշ թարգմանութիւններ: Հ. Մինաս Վ. Նուրիխանեան՝ յօրինած է երկու թատերգութիւններ՝ Գուրգէն եւ Դերենիկ եւ Թէոդորոս Սալհունի, նաեւ ժամանակակից պատմութիւն մը (մասն Ա.): — Յիշենք նաեւ զՀ. Աթանաս Վ. Թիրոյեան, զՀ. Աթանագինէս Վ. Երամեան, զՀ. Արիստակէս Վ. Ղազանճիլեան, զՀ. Բարսեղ Վ. Սարգիսեան. այս վերջինք թէեւ առանձին գործ մը չեն հրատարակած՝ բայց արդէն ի Բազմավէպ հանդէսի առաջին երեքն կը փայլին իրենց գեղեցիկ քերթուածներովն ու թարգմանութեամբք, եւ Հ. Բարսեղ Սարգիսեան մանաւանդ իւր քննադատական հմտալից յօդուածներովն:

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՀԱՐՔ (Վիեննայի) Հ. Ղեւոնդ Յովնանեան, Գիտութիւն Տէրութեանց, Պատմութիւն քաղաքականութեան 4 հատոր, Պատմութիւն Մ. Լուտերի, Մեծն Ներսէս, Քերականութիւն Գաղիերէն լեզուի, թարգմանած է նաեւ Կ. Նեպոսի Վարք զօրավարաց եւ այլն. իւր եղբայրն Հ. Պօղոս Յովնանեան, յօրինած է Պատմութիւն տիեզերական ժողովոց արեւելեայց, Առաջնորդ դաստիարակութեան, Ուսումն ազգային դաստիարակութեան, Պատմութիւն Իտալիայի եւ այլն: Հ. Արսէն Այտընեան, գլխաւոր գործն է Քննական քերականութիւն արդի Հայերէն լեզուի: Հ. Սերովբէ Տէրվիշեան, Հնդեւրոպական նախալեզու, Յուստինոսի պատասխանատուութիւնք (Թարգմ.): Հ. Սահակ Թոռնեան, Վարդայ Մամիկոնենից արկածք, Արտաշէսեան Արտաւազդայ Բարքն ու վախճանը (ազգային վիպասանութիւնք): Հ. Աղեքսանդր արքեպիսկոպոս Պալճեան, Դիւրիմաց պատասխանիք (կրօնի դէմ եղած առարկութեանց), Ընդհանուր տեսութիւնք երկրագնտոյ, Մոլորութիւնք Բողոքականութեան, Պատմութիւն կաթողիկէ վարդապետութեան ի Հայս եւ ուրիշ քանի մը կրօնական գրուածներ: Հ. Վարդան Վ. Ըստ-

կաւեան, Եկեղեցական պատմութիւն, Առաջնորդ նամակագրութեան (Հայ—Գաղ.) եւ այլն։ Հ. Եփրեմ Զագրճեան, Հայոց պատմութիւն, Արուեստախօսութիւն, Բառարան համառօտ (Հայ—Տաճկ.) եւ այլն։

ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԳՐԱԳԷՏՔ (ի Տաճկահայս)։ — Զամուռճեան Տէրոյենց Պատուելի՝ գրած է բազմաթիւ գործեր ընդհանրապէս կրօնական եւ վիճաբանական։ Խ. Պ. Միսաքեան, Տքնութիւնք Հայրենասիրի, Եպիմենիդէս ի Վոսփոր, եւ բազմաթիւ յօդուածներ եւ քերթուածներ յայլեւայլ օրաթերթս։ Ա. Մ. Գարագաշեան՝ յօրինած է Նկարագիր ուսմանց անուն գործն եւ թարգմանած է Լ. Թասսոյի Երգք վասն կրօնից քերթուածն՝ մինչ անդամ էր Վիեննայի Մխիթարեան Միաբանութեան. յետոյ հրատարակեց բազմաթիւ դասագիրքեր՝ Քերականութիւն, Տրամաբանութիւն, Փիլիսոփայութիւն, Բնական աշխարհագրութիւն եւ այլն. բայց իւր գլխաւոր գործն է Քննական պատմութիւն Հայոց գրուածն (Մասն Ա.)։ Նորայր Բիւզանդացի, Բառգիրք Գաղ.—Հայ. Բառագիտութիւն եւ այլն։ Գուիտոն իշխան Լուսինեան (Ամբրոսիոս Վ. Գալֆայեան), Պատմութիւն հին եւ նոր ազգաց, Պատմութիւն Աստուածաշունչ գրոց, Դաստիարակութիւն աղջկանց Ֆենելոնի, Պօղ Վիրգինի (Թարգմ.), Բառգիրք Հայ—ի Գաղ. եւ այլն։ Մատթէոս Մամուրեան, Ընդհանուր պատմութիւն, Անգղիական նամականի, Հայկական նամականի եւ այլն, կը խմբագրէ Արեւելեան մամուլ հանդէսն, թարգմանած է բազմաթիւ վիպասանութիւններ։ Թովմաս Թէրզեան, Արշակ Բ., Ցոլակն գեղեցիկ, Սանդուխտ կոյս (թատերգութիւնք), Անուշ սիրային (վէպ) եւ բազմաթիւ քերթուածներ. թարգմանած է Անակրէոնի տաղերն, Բելլիսիէի մտամարզութիւնն (Ա. եւ Բ.) եւ այլն։ Յակոբ Պարոնեան, յօրինած է երգիծական եւ զաւեշտական գրուածներ, որպիսիք են Ազգային Ջոջեր, Մեծապատիւ մուրացկաններ, Խիկար (հանդէս) եւ այլն։ Ռեթէոս Ց. Պէրպէրեան, Առաջին տերեւք, քանի մը Բանախօսութիւնք, Համառօտ քաղաքական տնտեսութիւն, Մարդիկ եւ իրք, եւ ուրիշ թարգմանութիւններ եւ դպրոցական դասագիրքեր։ Մինաս Չերազ, Գրական փորձեր, Գրիչ եւ սուր (Ա. հատոր), Ազգային դաստիարակութիւն (վարժապետական ժողովի մէջ խօսուած ճառեր), կրթական յօդուածներ եւ մանր գրուածներ։ Եղիա Տէմիրճիպաշեան (Գրասէր Ատոմ), Շահնազարեանի մը խղճին պարզ քննութիւնը, Փիլիսոփայական բառարանի մը նախադրանն ու փոր-

ձը, *Տրչազայութիւն իմ թաղիս մէջ*, *Նոր կեանք* եւ ուրիշ մանր գրուածներ. գլխաւոր աշխատասիրութիւնն է *Գրական եւ իմաստասիրական շարժում* հանդիսին խմբագրութիւնն 1883էն սկսեալ։ Գրիգոր Օտեան՝ որ ծանօթ է ազգին իւր իմաստասիրական յօդուածներովն։ Գրիգոր Չիլինկիրեան՝ որ երբեմն կը խմբագրէր *Ծաղիկ* հանդէսն. իւր գլխաւոր գործն է *Ուղեւորութիւն ի Կ. Պոլիս* գրուածն, թարգմանած է ի միջի այլոց Հիւկոյի *Թշուառներն*։ Կարապետ Ս. Իւթիւճեան՝ որ քառորդ դարէ աւելի խմբագրեց *զՄասիս*, թարգմանած է բազմաթիւ վիպասանութիւններէ զատ՝ Ժողէֆ Կառնիէի *Քաղաքական տնտեսութիւնն* եւ ուրիշ բանասիրական գրուածներ։ Ստեփան Փափազեան, *Ազգային պատմութիւն*, *Քերականութիւն*, *Կենսագրութիւն Յարութիւն Պէզճեանի*. հինգ տարիներու չափ խմբագրած է նաեւ *Ժամանակ* անուն հանդէսն՝ եւ այլն։ Մարկոս Աղաբէկեան՝ երբեմն խմբագիր *Կռունկ Հայոց աշխարհի* եւ *Ծիլն Աւարայրի* հանդիսից, յօրինած է *Գարեգին Սրուանձտեանց* ողբերգութիւնն եւ քանի մը ազգային-եկեղեցական տեսակէտով գրուածներ եւ այլն։ Մկրտիչ Մելիքեան՝ խմբագիր *Հայրենիք* լրագրոյ, թարգմանած է քանի մը վիպասանութիւններ։ Համբարձում Ալաճաճեան՝ խմբագիր *Փունջ* լրագրոյ, գրած է *Նեկտարինէ կոյս նահատակ* քերթուածն, եւ քանի մը մանր գործեր Հայերէն լեզուի ուսուցման համար։ Տիկին Տիւսաբ, *Մայտա* եւ *Սիրանոյշ* երկու վիպասանութիւններ։ Գ. Կոստանդեան՝ *Մերոպի վրայ*։ Յ. Մ. Հիսարեան՝ որ կը խմբագրէր երբեմն *Բանասէր* օրագիրն. իւր գործերն են *Դիւան* (վէպք եւ տաղք), *Նեռն կամ կատարած աշխարհի* (վէպ) եւ *համառօտ կենսագրութիւնն Նարպէյեանի*։ Սեդրակ Տ. Սարգսեան, *Շահէնն ի Սիպիր*, *Վառարանի մը կայծերն* (քերթուածներ) եւ այլն։ Սրապիոն Հէքիմեան, *Քերթուածք եւ թատերգութիւնք*։ Մ. Անէմեան, *Ժպիտք եւ արտասուք* (քերթուածք) եւլն։ Բիւզանդ Քէչեան, *ազգային*, *քաղաքական եւ ընկերաբանական յօդուածներ ի Մասիս եւ յԱրեւելս*։ Նշան Ճիվանեան, *Բառարան յատուկ անուանց*. ունի նաեւ քանի մը թարգմանութիւններ։ Աղեքսանդր Փանոսեան, *Շողեր եւ Ցօղեր* (պատանեկան քերթուածներ)։ Յովհաննէս Սեթեան, *Գրական զբօսանք* (մասն Ա.)։ Տիգրան Սեթեան, *Գարուն եւ աշուն* (քերթուածներ), *Ներշնչմունք* եւլն։ Արփիար Արփիարեան, *Պատկեր կենաց* (վէպ), եւ զանազան յօդուածներ։ Սիմոն Ֆէլէկեան, *Թօշնեալ ծաղիկ կամ Պանդուխտն*։ Կարապետ Պարազաւ, որ գրած է *Ճառեր եւ Քերթուածներ*։ Էմմա-

Յուէլ Եսայեան, *Հռիփսիմէ*, *Արշակ Բ.* (*Թատերգութիւնք*)։ Պետրոս Ադամեան, *Քերթուածք*։ Աբրահամ Յ. Այվազեան, *Քնարն յաւէրակս հայրենեաց* (*քերթուածներ*), գրած է նաեւ բազմաթիւ յօդուածներ յազգային օրաթերթս։ Յակոբ Ոսկան, ունի բազմաթիւ քերթուածներ եւ յօդուածներ պարբերաբար հրատարակուած ի Լրագիրս, եւ քանի մը թարգմանութիւններ։ Եղիազար Մուրատեան, *Առձեռն գրագիտութիւն*, *Համառօտ ճարտասանութիւն*, *Գաղիերէն քերականութիւն*, *Ծաղիկ* (*հաւաքածոյ*) եւլն, եւ քանի մը առողջապահական գրուածոց թարգմանութիւններ։ Յակոբ Գուրգէն, *Ուղեւորութիւն յԱրեւելս*. Թարգմանած է նաեւ Լաֆոնդէնի Առակաց զոմանս որք հրատարակուեցան յԵրկրագունդ հանդէսի։ Միհրան Ասքանազեան, *Գրագիտութիւն տեսական եւ գործնական* (*մասն Ա.*) Յակոբոս Ճէնիզեան, *Շարժմունք երկնային մարմնոց*, եւ զանազան գիտական եւ կրօնական յօդուածներ ի Բիւրակն հանդէսի։ Սրապիոն Թղլեան յօրինած է բազմաթիւ Թատերգութիւններ՝ որք հրատարակուած չեն սակայն։ Արմէն Լուսինեան որ գրած է բազմաթիւ յօդուածներ եւ քերթուածներ։ Իրենց յօդուածներովն ծանօթ են Խ. Յ. Սարաճ, Գ. Զօհրապ, եւ Յ. Եուսուֆեան՝ որ ընդհանրապէս գիտական յօդուածներ կը խմբագրէ եւ հրատարակած է Թուաբանութիւն մը նոր մեթոտով։ Գիտական ճիւղն կը մշակեն նաեւ իրենց գրուածներովն Նազարէթ Տաղաւարեան՝ որ կը խմբագրէ Գիտական շարժում հանդէսն, եւ Հերոնիմոս Բարսեղեան որ գրած է ընդարձակ Տիեզերագրութիւն մը, Գիտաւորին եւ աստեղաբաշխական յօդուածներ։ Մանուէլ Միրախորեան, *Նկարագրական ուղեւորութիւն ի Հայաբնակ գաւառս* (3 *մասն*)։ Յ. Յ. Ալլահվէրտեան, *Ուլնիա կամ Զէյթուն*։ Գէորգ Ծիրինեան, Տիգրան Մանավեան, Մելքոն Կիւրճեան, Յարութիւն Գ. Մրմրեան, Եղիազար Տէվլէթեան, Խաչիկ Ուլուրիկեան, Թադէոս Կէզիւրեան, Առաքել Պիպէռնեան, Բիւզանդ Պօզաճեան, Աբրահամ եւ Արմենակ Տ. Յակոբեան *եղբարք*, Սիմոն Գաբամաճեան, Յակոբ Էտիլեան, Բարսեղ Էքսէրճեան եւ դեռ ուրիշներ՝ զորս դժուարին է մեզ մի առ մի յիշել, հայերէն դպրութեանց գեղեցիկ ծառայութիւններ մատուցանելու կարող անձեր են առ մեզ։

(*Ի Ռուսահայս*). — Մկրտիչ Էմին, *Վէպք հնոյն Հայաստանի*, *Ընտիր հատուածք* (*ծաղկաքաղ*) եւ այլն. իւր աշխատասիրութեանց մեծագոյն մասն Ռուսերէն լեզուաւ յօրինած է, ինչպէս են. *Մովսէս Խորենացի եւ իւր պատմութեան գիրքը*, *Հայոց հեթանոսական*

կրօնքը (*), Համառօտ պատմութիւն եկեղեցւոյ հայաստանեայց, Ռուս լեզուաւ թարգմանած եւ ծանօթութեամբք հրատարակած է մեր նախնեաց ոմանց գործերն եւ ամբողջ Շարականը։ Քերովբէ Պատկանեան, գրեթէ իւր բոլոր գործերն Ռուս լեզուաւ յօրինած է, ինչպէս են, Հետազօտութիւնք ի վերայ գաւառական լեզուաց Հայոց; Աշխարհացոյց Ե. դարու (ի Հայ. եւ ի Ռուս.). Ռուս թարգմանութեամբ հրատարակած է նաեւ մեր նախնի պատմագրաց ոմանս։ Գամառ Քաթիպա, Բանաստեղծութիւնք եւ ազատ երգեր։ Գէորգ Բարխուդարեանց, թարգմանած է բազմաթիւ թատերական գործեր, որպիսիք են, Շիլլէրի Դոն Կարլոսն, Վիլհելմ Տելլն, Օռլէանի կոյսն, Լեսսինգի Նաթան իմաստունը, հեղինակած է նաեւ Սէր եւ մահ ողբերգութիւնն եւ բազմաթիւ քերթուածներ։ Զարմայր Մսերեանց, Պատմութիւն կաթողիկոսաց Հայոց. երբեմն խմբագրած է նաեւ Փարոս բանասիրական հանդէսն, եւ թարգմանած է քանի մը մանկական վէպեր։ Աղեքսանդր Երիցեանց Կենսագրութիւն Ներսէս Ե. Աշտարակեցւոյ (երեք մասն), Վենետիկի Մխիթարեանք եւն։ Րաֆֆի, Դաւիթ բէգ (ազգային վէպ՝ 3 մասն) Խենթը, Ոսկիէ Աքաղաղը, Խամսայի մելիքութիւնները, Խաչագողի յիշատակարանն եւ այլն, թարգմանած է նաեւ Ղարաբաղի աստղագէտ անուն վիպասանութիւնն։ Պերճ Պռօշեանց, Կռուածաղիկ (ազգային վիպասանութիւն), Ալաւի (թատերգութիւն) եւ այլն։ Ղ. Աղայեանց, Անահիտ (հին զրոյց), Երկու քոյր (վէպ)։ Կ. Կոստանդեանց, Հայոց նախնական կրօնը, Հիւսուածք բանից (երեք մասն), Գրաբարի հոլովումը եւ խոնարհումը (երկու տետրակներ), եւ այլն։ Աւետիք Եզեկեան, Երեք հայ դիւցազունք։ Գրիգոր Խալաթեանց, Ղազար Փարպեցի եւ գործք նորին։ Ծերենց, Թորոս Լեւոնի, Երկունք Թ. դարու, Թէոդորոս Ռշտունի (ազգային վէպք) Սմբատ Շահազիզեանց, Լեւոնի վիշտը, Հրապարակախօս ձայն։ Ստեփան Պալասանեան, Պատմութիւն գրականութեան Հայոց (մասն Ա.), Քերականութիւն մը եւ ուրիշ գրագիտական այլեւայլ ճառեր եւ այլն։ Գաբրիէլ Խատիսեան, Մանկավարժական խորհրդածութիւններ, Յիշատակարանք ճանապարհորդութեան։ Արարատեանց, Երկու քոյր, Խեղճութեան արգասիք, Քնարիկ մանկական։ Սեդրակ Մանդինեան, Կրօնք, Համառօտ մանկավարժութիւն եւ ուրիշ կրթական գրուածներ։

---

(*) Սոյն գործոյն հայերէն թարգմանութիւնն հրատարակուած է Արմաշու վանքէն։

ԳՐԱԳԷՏ ԲԺԻՇԿՔ (*ի Տաճկահայս*). Տր. Փէշտիմալճեան, *Պատմութիւն մարդկային պատուաստման*, *Մանկաբարձութիւն եւ այլն*։ Տր. Ցակոբեան, *Հիւանդին բարեկամը*։ Տր. Բարունակ Իւքիւճեան, *Մատենադարան ժողովրդեան եւ այլն*։ Տր. Գ. Ճէրրահեան, *Առողջաբանութիւն ընդարձակ* (Ա. *հատոր*)։ Տր. Գաբամաճեան, Տր. Ճէլալեան, Տր. Թիրեաքեան, Տր. Վահրամ Թորգոմեան, Տր. Ռօպէնսոն *եւ այլք իրենց յօդուածներովն հրապարակելի եւ օգտակար կ'ընծայեն հանդէսներու կամ հանապազօրեայ թերթերու ընթերցումը*։ — (*Ի Ռուսահայս*), Աւետիք Բաբայեան, *որ գրած է Ուսումնարանի առողջապահական հարցեր*, *Կրծերը եւ նոցա ազդեցութիւնն*։ Լեւոն Տիգրանեանց *որ կը խմբագրէր յԵրեւան հրատարակուող Առողջապահական թերթն*, *եւ այլք բազումք*։

# ԿԱՐԵՒՈՐ ՎՐԻՊԱԿՔ

| | | | | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|---|---|
| Էջ | 4 | Տող | 20 | գոյութիւն | գոյակցութիւն |
| » | 4 | » | 21 | տալ | (աւելորդ) |
| » | 10 | » | 17 | արգասիքն· իսկ | արգասիքն. իսկ |
| » | 25 | » | 5 | Սանասանեանց | Սասանեանց |
| » | 94 | » | 19 | տարու | դարու |
| » | 97 | » | 19 | (1880— | (1870— |